# Կ.-ՊՈԼՍՈՅ ՊԱՇԱՐՈՒՄԸ ԱՌՈՒՄԸ ԵՒ ԹԱԼԱՆԸ ԹՈՒՐՔԵՐՈՒ ԿՈՂՄԷ՝ 1453-ԻՆ

Գրեց՝ ԿԻՒՍԹԱՎ ՇԼՈՒՄՊԵՐԺԷ
(Անդամ՝ Ֆրանսական Կաճառին)

Թարգմ. Ա. Ա.

(Զարդարուած՝ մեծադիր պատկերներով)



Կ.-Պոլիս, Տպագր. Նշան-Պապիկեան, 1914

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

Քանի մը համառօտ գրքոյկներէ զատ չկայ Փրանսերէն գիրք մը որ մանրամասն պատմութիւնը ընէ 1453ին Թուրքերուն կողմէ Պոլսոյ պաշարման որ հազար տարուան եւ աւելի իսկ հնութիւն մը ունեցող բիւզանդական կայսրութեան գերագոյն հոգեվարքին նշանը եղաւ: Ջանացի այդ պակասը լրացնել անանկ պահու մը երբ հանրային կարծիքը ջերմապէս կը հետաքրքրուի Մեծին Կոստանդիանոսի յաջորդներուն հինաւուրց ժառանգութեան կամ Պալքանեան ցամաքակղզիին պատմութեան հետ առնչութիւն ունեցող բոլոր խնդիրներով: Սըր Էտվին Փիրս 1903ին անգլիերէն պատուական գիրք մը հրատարակած է այս մեծ դէպքին վրայ: Պարտաւորեցայ քայլ առ քայլ հետեւիլ իրեն եւ շատ անգամներ իրմէ մէջբերումներ ընել: Մասնաւորապէս ջանացի պաշարումին պատմութիւնը ընել օրը օրին, բառ առ բառ արտատպելով ականատես վկաներու եւ ժամանակակից կամ գրեթէ ժամանակակից լաւատեղեակ պատմագիրներու գլխաւոր պատմուածքները: Ասոնց ամէնէն կարեւորներուն մէջ պիտի բաւականանամ յիշատակելով վենետիկցի Պարպարոյի, Իզիտոր կարդինալին, Միտիլլիի արքեպիսկոպոս Լէօնարի, յոյն Կրիթօբուլոսի պատմութիւնները: Այս մօտ երկու ամիս տեւող պաշարման գրեթէ առօրեայ պատմութիւնները բիւզանդացի Ֆրանձէս, Դուկաս եւ Քալքոնտիլաս պատմագիրներուն գրութիւններուն հետ քով քովի բերուելով կարելի կ՚ըլլայ գրեթէ ժամը ժամին հետեւիլ այս արտաքոյ կարգի տռամին անձկալից պատահարներուն: Նմանապէս աչքէ անցուցի Թուրք եւ սլաւոն պատմագիրները: Կը կարծեմ որ իմ գիրքս ամբողջովին կը պարունակէ բոլոր ինչ որ այսօրուան օրս գիտենք այս համբաւաւոր դէպքին վրայ:

Աշխարհի պատմութեան ամէնէն մեծ դէպքերէն մին է, 1453ի մայիսին Կ. Պոլսոյ առումը Թուրքերու կողմէ, եւ այս դէպքը հսկայ ազդեցութիւն ունեցած է Եւրոպայի ճակատագրին վրայ: Պատճառ եղած է որ դարերով Թուրքերը գե-

բակշիռ դեր ունեցան Արեւելքի մէջ: Հելլենական ցեղին համար գերագոյն աղէտք մը եղաւ առիկա, մինչեւ անոր հրաշալի վերածնունդը որ վերջացող դարու կիսուն, եւ որ այնքան փայլուն կերպով ալ աւարտեցաւ ներկայ դարուս ընթացքին: Այս դէպքը քիչ մնաց որ պատմութեան ընթացքը փոխէր, եւ հարիւր զանազան պատճառներով այն ատենուան տարօրինակ եղաւ,—որովհետեւ պատմութեան մէջ առաջին մեծ պաշարումն էր այս, որու մէջ վերջին խօսքը թնդանօթին մնաց որ, այդ շրջանին համար բոլորովին նոր զէնք մըն էր,— որ արդի պատմագրութեան համար այս 1453ի ապրիլ եւ մայիս ամիսներու ճակատագրական թուականը այն օգոստափառ թուականը եղաւ որ Միջին Դարը կը փակէ եւ նոր ժամանակները կը սկզբնաւորէ:

Կ. Պոլսոյ պաշարումը երեւան բերած է նաեւ երիտասարդ, հազիւ քսան երկու տարեկան սուլթան Մէհմէտի հանճարը, եւ իր զինուորներու հոյակապ քաջութիւնը: Բայց ան դարուց ի դարս համբաւաւոր պիտի մնայ սքանչելի քաջութիւններովը քանի մը հազար հերոսներու, որոնք, մեծ մասամբ Յոյն, մաս մըն ալ իտալացի օժանդակներ, որոնք իրենց մինչեւ վերջին շունչը, անսահման յոգնութիւններով երկու ամիս շարունակ, իրենցմէ քսան անգամ աւելի թիւով թշնամիներու դէմ, որոնք նոյն ժամանակի լաւագոյն զինուորներն էին աշխարհի, իրենց Թագուհի քաղաքը, Աստուածապահ քաղաքը, Քրիստոնէութեան արեւելքի մէջ վերջին պատնէշը պաշտպանեցին, ամօթալիօրէն լքուած Թուրքերուն սարսափելի այս ճնշումին, անխելքօրէն անտարբեր Եւրոպայի կողմէ, որ անհոգ կը մնար այսքան զարհուրելի վտանգի մը առջեւ: Հելլենական ցեղին համար, մանաւանդ անմահ թուական մը պիտի մնայ այս թուականը, որովհետեւ իրենց կայսրը, Բիւզանդիոնի վերջին կայսրը՝ Կոստանդիանոս Տրակազէս, իր հայրենիքին համար գիտցաւ դիւցազնօրէն մեռնիլ Սուրբ-Ռոմէնի դրան պատնէշին վրայ, 1453ի 29 մայիսի առտուն, իր ամէնէն խիզախ տեղակալներէն շրջապատուած:

Բարիզ, Մարտ 1914

Կ. ՇԼՈՒՄՊԵՐԺԷ

# ՊՈԼՍՈՅ ՊԱՇԱՐՈՒՄԸ, ԱՌՈՒՄԸ եւ ԹԱԼԱՆԸ

## ԹՈՒՐՔԵՐՈՒՆ ԿՈՂՄԷ՝ 1453-ԻՆ



## ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ

*Ժան Բալէօլօկի մահը.—Իր յաջորդին՝ Կոստանդիանոս Տրակազէսի գահակալութիւնը.— Սուլթան Մուրատի մահը.— Իր յաջորդին՝ Մէհմէտ Բ.ի գահակալութիւնը. — Հռոմի Պապին նուիրակ Իզիտօռ Կարտինալի Կ. Պոլիս գալուստը.—Հռոմի եւ Կ.Պոլսոյ երկու եկեղեցիներու միացումը.—Մէհմէտ Բ.ի առաջին գործողութիւնները.—Կոստանդիանոս Տրակազէսի, որ երկու անգամ այրի մնացած էր, նոր ամուսնութեան մը առթիւ եղած բանակցութիւնները.— Այս բանակցութեանց անյաջողութիւնը.—ԺԵ. դարու բիւզանդական կայսրուհիները.— Երկու նոր թագաւորներու միջեւ առաջին դժուարութիւնները. — Ռումէլի Հիսարի զարհուրելի բերդին շինութիւնը Մէհմէտ Բ.ի ձեռքով.— Առաջին թշնամութիւնները.—Սուլթանին Անդր.-Պոլիս վերադարձը.— Ռումէլի Հիսարի թուրք թնդանօթներու շնորհիւ վենետիկեան նաւերու ընկղմիլը.— Գերագոյն կռիւին նկատմամբ երկու կողմէն եղած պատրաստութիւնները. — Իտալական օգնութեան Կ. Պոլիս մուտքը. — Կ. Պոլսոյ ինքնապաշտպանողական աշխատութիւնները :*

Ժան Բալէօլօկ, Կ. Պոլսոյ այս անուն թագաւորներուն ութերորդը, որ 1425 յուլիս 21ին յաջորդած էր իր հօրը Մանուէլ Բ. Բալէօլօկի, մեռած էր գրեթէ 58 տարեկան, 31 հոկտ. 1448ին: Այդ օրը Շառլ Է. թագաւորը քանըվեց տարիէ ի վեր կը տիրէր Ֆրանսայի մէջ: Տասնըեօթը տարի էր անցած Անգլիացիներուն Ժանն տ'Արքը այրելէն ի վեր: Նիկողոս Ե. Բարանթուչէլլի Հռոմի Պապ էր եւ քիչ առնէն իր հականակորդին Ֆէլիքս Ե. հակապապին յաղթելով վերջ պիտի դնէր մեծ Հերձուածին: Դժբախտ կայսեր մահը փութացնելու նպաստած էր երեք օրուան յուսահատ կռիւէ մը վերջը՝ քրիստոնեայ բանակին ցաւալիօրէն պարտուած ըլլալուն վիշտը, Քօսօվայի մօտ «Արտոյտներու դաշտ»ին մէջ, ուր Ժանն Հիւնեատ հերոսը յաղթուեր էր Սուլթան Մուրատէն քանի մը օր առաջ, 18 հոկտեմբերին:

Ժան Բալէօլօկ, իր երեք յաջորդական կիներէն ո եւ է զաւակ չէր ունեցած, ո՛չ ռուս Աննայէն, Մոնքովիատանի

Մեծ-Դուքսին աղջիկը, ո՛չ Սօֆի Բալէօլօկինայէն՝ Մօնֆէրրայի մարքիզին աղջիկը, եւ վերջապէս ո՛չ ալ Մառի Կոմնենոսէն՝ Տրապիզոնի կայսեր աղջիկը որ մեռած էր իր ամուսնոյն Իտալիա գտնուած պահուն: Իր ողջ եղբայրներէն անդրանիկը, Կոստանդիանոս Տրակազէս, 1443էն ի վեր կը թագաւորէր Սպարտայի կամ Մօրէայի Միսթրայի մէջ: Մայր թագուհին, կղերը, ծերակոյտը, զօրքը եւ ժողովուրդը այդ իշխանին կողմնակից գտնուելնուն՝ անիկա Ժան Ը.ի յաջորդեց Կ. Պոլսոյ, աւա՜ղ, անհունապէս ինկած գահուն վրայ եւ այդ՝ հակառակ իր կրտսեր եղբօր, փառասէր եւ դաւասէր Դեմետրիոսի մեքենայութիւններուն :

Այս այնքան քաջ, որքան դժբախտ Կոստանդիանոս իշխանը, որ ընդհանրապէս Կոստանդիանոս ԺԱ. անունով ճանչցուած է, իր հօր՝ Մանուէլ թագաւորին տասը զաւակներուն ութերորդը, Մեծն Կոստանդիանոսի յաջորդներուն, Կ. Պոլսոյ թագաւորներուն նշանաւոր ու հինաւուրց շարքին վերջինը պիտի ըլլար: Ծնած էր 9 փետր. 1404ին եւ այդ պահուն գրեթէ 45 տարեկան էր:

Կայսր օծուեցաւ Մօրէայի Միսթրա գաւառին մէջ, (միջնադարեան Սպարտան), 1449 յունուար 6ին, Հոգեգալստեան տօնին օրը, զինքը փնտռելու եկող Կ. Պոլսոյ պատուիրակութեան կողմէ: Ֆրանձէս պատմագիրը ներկայ գտնուեցաւ այդ արարողութեան: Կոստանդիանոս, Քաթալան նաւերու թափոր մը ետեւէն, իր մայրաքաղաքը՝ «Աստուծոյ պահած» քաղաքը (Կ. Պոլիս) հասաւ յաջորդ մարտ 12ին: Հոն յաղթական ընդունելութիւն մը եղաւ իրեն: Պատմագիրները կ՚ըսեն թէ պարտաւորեցաւ շատ մը պարտքեր ընել ամէն մարդ գոհ թողելու համար: Իր անձնական բարեկամը՝ Ֆռանսուա Ֆիլէլֆ ըսած է իրեն համար թէ բարձր ու բարեպաշտ հոգի մը ունէր:

Ժան Բալէօլօկի մահուանէն երկու տարիէն քիչ մը աւելի ետքը, 1451 փետր. 3ին, իր մեծազօր ու ահարկու թշնամին, Արեւելքի քրիստոնեաներուն կատաղի հակառակորդը, անուանի Սուլթան Մուրատը, որ սարսափ ազդած էր բոլոր բիւզանդական բանակներուն թէ Փոքր Ասիոյ մէջ եւ թէ Պալքաննե-

քու ցամաքակղզիին մէջ, ինք ալ կը մեռնէր իր եւրոպական մայրաքաղաքին՝ Ադրիանուպոլսոյ մէջ, հացկերոյթի մը միջոցին շնչահեղձ ըլլալով, 30 տարուան փառաւոր թագաւորութենէ մը եւ թէ՛ Եւրոպայի ու թէ Ասիոյ մէջ գրեթէ բնաւ չընդմիջուած յաջողութիւններէ վերջը:

«Ժամանակակից արեւելցի պատմագիրները, կ'ըսէ Գ. Շ. Շէֆէր, այս թագաւորը իբր անկեղծօրէն կրօնասէր, եւ արդարութեամբ ու գթութեամբ տոգորուած մէկը կը ներկայացնեն: Հաճոյքով կը համբեն Ադրիանուպոլսոյ, Պրուսայի ու իր կայսրութեան ուրիշ մայրաքաղաքներուն մէջ իր բարեպաշտական հաստատութիւնները: Չեն կշտանար գովեստը հիւսելէ այն պաշտպանութեան, զոր կը շնորհէր իր իշխանութեան պատիւը կազմող գիտնականներուն եւ բանաստեղծներուն:

«Սուլթան Մուրատը, կ'ըսեն, միջահասակ էր. գոյնը սպիտակ էր, աչքերը կապոյտ, յօնքերը եւ մօրուքը շագանակագոյնի մօտ, իսկ ակռաները իրարմէ անջատ անջատ էին: Խիստ ուժով էր եւ քաջ նետաձիգ: Հինգ զաւակ ունեցաւ. Սուլթան Մէհմէտը՝ որ իր յաջորդը եղաւ, Ահմէտ եւ Ալաէտտին սուլթանները որոնք մեռան Ամասիայի մէջ, կեդրոնը իրենց իշխանութեան, Հասան եւ Օրխան սուլթանները, որ Ադրիանուպոլսոյ մէջ մեռան եւ Թունճայի ափերուն վրայ թաղուեցան:»

Մուրատի անդրանիկ զաւակը՝ Մէհմէտ Բ., Պոլսոյ ապագայ յաղթականը, որ այդ պահուն 21 տարեկան հազիւ կար եւ որ երկու ամիս առաջ Ադրիանուպոլսոյ մէջ Թուրկադիր Թիւրքմէն իշխանին աղջիկը կնութեան առած էր, անմիջապէս իր հօրը տեղ Թուրքերուն Սուլթան հռչակուեցաւ: Երիտասարդ իշխանը այդ պահուն իր կնոջը հետ Ասիա կը գտնուէր, Մաղնիսայի մէջ:

Արեւելքի պատմութեան այս ամէնէն եղերական վայրկեանին, բիւզանդական թագաւորներուն այս հինաւուրց ու տասն անգամէ աւելի դարաւոր կայսրութիւնը օսմանցի սուլթաններու անդադար յարձակումներուն տակ ամէն կողմէ քայքայուած, կը բաղկանար միմիայն Կ. Պոլսոյ համ-

*բաւաւոր քաղաքէն (Թագուհի քաղաքը) եւ դէպի հիւսիս ու դէպի արեւմուտք՝ մօտ հարիւր փարսախի չափ տարածուող իր արուարձաններէն. ասոնց վրայ պէտք է աւելցնել նաեւ Պեղոպոնէսի Թերակղզիին կէսէն քիչ մը աւելի մասը. իսկ այնքան դարերէ ի վեր Մեծն Կոստանդիանոսի, Մեծն Թէոդոսի, Նիկէֆոր Փոկասի եւ պուլկարասպան Վասիլ Բ.ի պէս փառաւոր կայսրերու իշխանութիւնը կազմող երկիրները քիչ քիչ եւ յաջորդաբար ինկած էին Մուհամմէտի զաւակներուն իշխանութեան տակ: Պալքաններու գրեթէ բովանդակ Թերակղզին հիմա Թուրքերուն ձեռքն էր եւ սուլթանները իրենց Փոքր Ասիոյ մայրաքաղաքը փոխադրած էին հիմա Ադրիանուպոլիս որ այլ եւս Էտիրնէ կը կոչուէր:*

*Երբ Պէրթրանտոն տը լա Պրոքիէռ, Պուրկոնեի դուքս Ֆիլիբ լը Պոնի խորհրդականը եւ առաջին սեղանապետը, որ այնքան հրապուրիչ եւ համեղ պատմութիւն մը ձգած է մեզի իր տիրոջ հրամանաւ 1432ին դէպի Արեւելք կատարած ուղեւորութեանը վրայ, երբ, կ՛ըսեմ, Պէրթրանտոն Բէնտիքէն գալով, Սկիւտար հասաւ, որ Վոսփորի միւս կողմը, Պոլսոյ դէմ առդէմ գտնուող բիւզանդական հին ու մեծ Քռիզօպոլիսն (Ոսկեքաղաք) էր, հոն, այդ պահուն արդէն Թուրքերը տեղաւորուած եւ բիւզանդական մայրաքաղաքին ճամբան գոցած գտաւ, ի մեծ նուաստացում յունական կայսրութեան. «եւ հոն, կը պատմէ, նեղուցէն անցայ վերոյիշեալ երեք Ճենովացի վաճառականներուն հետ, որոնք Պրուսայէն հետս կը ճամբորդէին եւ իրենց գաղթաբերբերը Բերա կը տանէին. հոն Թուրքեր կային որոնք ճամբան գոցած էին եւ տուրք կը գանձէին անցնիլ ձգելու համար, եւ Յոյներու պատկանող երկու նաւերով անցանք ու Բերա հասանք: Այս քաղաքին մեծամասնութիւնը Ճենովացի վաճառականներ են, որոնք քաղաքը կը կառավարեն: Բօտէսթա(*) մը ունին եւ ուրիշ պաշտօնեաներ իրենց սովորութեան համեմատ: Յոյներ ու հրեա-*

---

(*) Բօտէսթաները այն գլխաւոր պաշտօնատարներն էին որոնք Միջին Դարուն, Իտալիոյ հիւսիսային մասին եւ կեդրոնի քաղաքներուն մէջ ոստիկանութեան եւ քաղաքային ու ոճրադատ ատեաններուն առաջին պաշտօնները կը վարէին: Ծ. Թ.

ներ ալ կը բնակին հոն, եւ շատ վաճառաշահ քաղաք մըն է եւ Թուրքերու հետ մեծ յարաբերութեան մէջ, որոնք այն աստիճան ազդեցութիւն ունին այդ քաղաքին մէջ որ ինծի պատմեցին թէ եթէ քրիստոնեայ գերի մը Թուրքերուն քովէն փախչի եւ հոն ապաստանի եւ Թուրքերը մարդ ղրկեն եւ զայն պահանջեն՝ պարտաւոր էին զայն յանձնելու. . . ու երբ Սկիւտարէն Յոյներուն նաւակը նստայ զիս Թուրք կարծեցին եւ մեծ պատիւներ ըրին ինծի: Երբ զիս ցամաք հացուցին, քաղաքը մտայ եւ Ճենովացի վաճառական մը փընտռեցի որուն համար նամակներ ունէի եւ որ Քրիսթօֆըլ Բաւլըզէն կը կոչուէր: Այդ Յոյները այն ատեն իմացան Քրիստոնեայ ըլլալս ու երբ ծիուս մօտ դարձայ զոր քաղաքին դուռը պահպանելու յանձնած էի, գտայ այդ երկու Յոյները, եւ հոն բանի ուզեցին նաւով ճամբորդութեանս համար պարտաւոր եղած դրամէս աւելին առնել. չպիտի քաշուէին զիս ծեծելու ալ եթէ կարենային, որովհետեւ այն ատեն քրիստոնեաները շատ կ՚ատէին. եւ չարաչար խոշտանգուելու վտանգին մէջ մնացի, բայց պատուական սուրս քովս էր եւ բան մը չկրցան ընել: Դուռին մօտ բնակող Ճենովացի կօշկակար մըն ալ ինծի օգնութեան եկաւ:

«Այս բաները կը գրեմ իմաց տալու համար անոնց որոնք վաղը կամ միւս օր կրնան հետերնին գործ ունենալ: Որովհետեւ որքան որ այդ Յոյներուն հետ տեսնուեցայ եւ հետերնին գործ ունեցայ, աւելի բարեկամութիւն գտայ Թուրքերուն քով եւ աւելի պիտի վստահէի իրենց քան թէ Յոյներուն: Որովհետեւ ինծի թուեցաւ թէ բնաւ չէին սիրեր Հռոմի եկեղեցւոյն հնազանդող քրիստոնեաները: Եւ անկէ ի վեր իրենց յայտնած հնազանդութիւնն ալ կարծես աւելի խեղճութենէ եւ սովէ ստիպուած քան թէ Հռոմի եկեղեցւոյն հանդէպ զգացուած սէրէ մը մղուած է որ յայտնած են»:

Աւելի հեռուն կ՚ըսէ. «Կ. Պոլսոյ Կայսրը, Մեծ Թուրքին (Սուլթանին) հպատակի պէս է, որովհետեւ ըսին ինծի թէ ամէն տարի անոր տասը հազար տուքաթ հարկ կը վճարէ

մի միայն Պոլսոյ քաղաքին համար, որպէս զի իրմէ բան մը չպահանջէ, եւ ամբողջ Յունաստանի մէջ հիմա այլ եւս ուրիշ տեղ չունի, բացի պզտիկ քաղաքէ մը որ Սէլէմպրիա կը կոչուի եւ Պոլսէն երեք ժամ հեռու՝ դէպի հիւսիս դըղեակէ մը: Թուրքերը՝ Վենետիկցիներուն յար եւ նման, Պոլսոյ մէջ իրենց ըրած առեւտուրին համար յատուկ պաշտօնեայ մը ունին եւ կայսեր մարդոցը ո եւ է պատասխան տալու պարտաւոր չեն: Եւ ինչպէս ըսի, եթէ պատահմամբ Թուրքի մը տունէն ո եւ է քրիստոնեայ գերի մը փախչի եւ Պոլիս գայ՝ պէտք է որ կայսրը կամ իր մարդիկը զայն յանձնեն Թուրքերուն:»

Ժան Ը.ի մահուան եւ Սուլթան Մուրատի մահուան մէջտեղի կարճ շրջանին՝ Պալքանեան ցամաք սկզբին քրիստոնեաներուն ահռելի կացութիւնը քիչ մը բարելաւած էր: Համբաւաւոր հերոս Սքանտէր պէկ գրեթէ ամէն տեղ յաղթականօրէն դիմադրած էր եւ յաջորդաբար շատ մը Թուրք բանակներու յաղթած: Ահարկու կռիւներ տեղի ունեցած էին Ալպանական Քրոյայի եւ Սվէնթիկռատի պարիսպներուն տակ:

Մէհմէտ Բ.ի գահակալութիւնը տխրութեան մէջ ձգեց բիւզանդական արքունիքը եւ Պոլսոյ բնակիչները: Շատոնց ի վեր քրիստոնեաներուն մէջ տարածայնուած էր՝ թէ այս երիտասարդ իշխանը, այնքան յանդուգն որքան խելացի, կ'երազէր վերջնականապէս ջախջախել Քաղաքներու Քաղաքը, որ այնքան անգամներ զուր տեղը պաշարուեր էր իսլամական բանակներէն, եւ վերջին անգամ ալ դարձեալ իր հօր՝ Սուլթան Մուրատի կողմէ 1422ին: Կ'ըսէին թէ երդում ըրած էր որ զինուորական այդ մեծ ձեռնարկը իր իշխանութեան առաջին գործը պիտի ըլլար. «Այդ միջոցին, ըսած են իրաւամբ, բիւզանդական կայսրութիւնը կը ներկայանար միմիայն Պոլսոյ շուրջը Թէոդոսեան պատնէշով շրջապատուած եռանկիւնով մը: Բիւզանդական բանակը քանի մը վճարուած զօրականներէ կը բաղկանար միայն եւ նաւատորմը խեղճ ու կրակ հինգ նաւերէ:»

Անգամ մըն ալ պաղատագին դեսպաններ մեկնեցան Պոլսէն Արեւմուտքի իշխաններուն մէջ օգնող մը գտնել փորձելու հա-

մար. Ինչպէս միշտ՝ այս անգամ ալ Հռոմի եւ Բիւզանդիոնի միջեւ կրօնական մեծ հերձուածին դժուարութիւնները, երկու Եկեղեցիներուն սաստկօրէն միացման հասնելու անկարելիութիւնը որ այնքան այլամերժօրէն անգամ մըն ալ դեռ նոր հաստատուեր էր, ապարդիւն դարձուցին բոլոր այս քաղաքագիտական ջանքերը: Նիկողոս Ե. պապը իրաւ է որ իր օգնութիւնը կը խոստանար, բայց այն միակ պայմանաւ որ կայսրը Պոլսոյ պատրիարքական աթոռին վրայ դարձեալ պիտի բազմեցնէր Գրիգոր պատրիարքը որ Արեւելքի միւս երեք պատրիարքներուն նախագահութեան տակ գումարուած 1450ի սինոդին կողմէ վար առնուած էր, եւ ամէնէն ազդու միջոցները պիտի հրովարտակէր՝ Ֆիօրէնցայի Ս. Ժողովոյն մէջ երկու կողմին վերջնական հաւանութեան արժանացած միութիւնը մնալ տալ չձգելու համար: Կոստանդիանոս կայսրը անձնապէս շատ տրամադիր էր գոհացում տալու Պապին, բայց իր ջանքերը տեւական կերպով կը ջլատուէին Պոլսոյ ժողովուրդին եւ կղերին մեծամասնութեան անընկճելի եւ մոլեռանդ ընդդիմութեամբ: Իսկ Վենետիկ ալ դժգոհ էր, որովհետեւ կայսրը որ 1442էն ի վեր իտալական ծագում ունեցող կնոջմէ մը այրի մնացած՝ Ֆօսքառի Դուկկին աղջկան հետ ամուսնանալու ծրագիրը մէկ կողմ թողած էր:

Վերջապէս սակայն, Վենետիկ տասը նաւ ու օգնութիւն մը խոստացաւ: Պապն ալ խոստացաւ նաւատորմ մը ղրկել: Նոյնիսկ կայսեր խնդրանքին վրայ, որ կաթոլիկներու եւ Յոյներու միութիւնը յաջողցնելու աստիճան կարող ու ուսումնական կրօնաւորներ կ'ուզէր, անոր ղրկեց իբր Ս. Աթոռոյն նուիրակ Իզիտոռ կարտինալը, հռոմէական քահանայ մը, Պելոպոնէսի կամ Թէսաղոնիկէի մէջ ծնած, նախկին մետրապոլիտ Քիէվի ի Ռուսիա, նշանաւոր միտք մը, խորիմաստ աստուածաբան մը որ արդէն քանի մը տարի առաջ Ֆիօրէնցայի Ժողովին մէջ կարեւոր դեր մը կատարած էր Պէսարիոնի քով 1438ին: Պապը զինքը կը ղրկէր յոյն եկեղեցւոյն վերջնական հնազանդութիւնը ընդունելու եւ կատարելու համար Հռոմի հետ այն միացումը որու ամէնէն ջերմ եւ անձնուէր կողմնակիցը եղած էր շարունակ:

Նոյն 1452 տարուան նոյեմբերին Ճենովական մեծ նաւ մը որ կարտինալը կը բերէր եւ Քիոսէն ալ Միտիլէնի բարի եպիսկոպոսը՝ Քիոսցի Լէօնարը առած էր. Պոլիս հասաւ: Կարտինալը շատ ուշացած էր որովհետեւ պարտաւորեր էր Քիոսի մէջ սպասելու որ իր ճամբու ընկերները, Ճենովացի վաճառականներ՝ իրենց գործերը լմնցնէին: Սեւ Ծովու Քաֆա նաւահանգիստը գացող ուրիշ նաւ մը կընկերանար այդ նաւուն: Կարտինալը իր հետ կը բերէր երկու հարիւր զինուորներու օգնութիւն մը, ոմանք Իտալացի եւ ոմանք Քիոսցի լատիններ, հրացանակիր կամ նետաձիգ, որոնք քիչ ատենէն շատ պէտք պիտի ըլլային: Ամենամեծ պատիւներով ընդունուեցաւ կայսրէն եւ արքունիքէն: Քիոսցի արքեպ. Լէօնար որ Պոլսոյ պաշարման դերակատարներէն մէկը եղաւ, անոր գլխաւոր պատմիչներէն ալ մին պիտի ըլլար 1453 Օգոստոս 15ին Նիքոլա Ե. պապին գրած իր յայտնի նամակովը: Հիմակուհիմա բաւականացաւ պապական նուիրակին կողմէն միացման ի նպաստ մղուած պայքարին ուժգնօրէն մասնակցելով:

Հոս տեղը չէ անգամ մըն ալ պատմելու 1452 տարուան դեկտեմբեր ամսուն տասնեւհինգօրեակին երկրորդ օրուան համբաւաւոր եւ գերագոյն հանդէսը, Ս. Սբիրիտոնի տօնին օրը, որ կարծես դարաւոր եւ հինաւուրց Արեւելքի կայսրութեան մահազանգը եղաւ եւ որու մէջ երկու եկեղեցիներուն միացումը. Ֆիօրէնցայի ժողովէն նուիրագործուած, հանդիսաւոր կերպով հռչակուեցաւ Այա Սօֆիայի կամ Ս. Իմաստութեան վեհաշուք տաճարին մէջ թագաւորին ներկայութեան, պապական նուիրակին եւ Գրիգոր պատրիարքին միաժամանակ պաշտօն մատուցած պահուն, մինչդեռ երեք հարիւր քահանաներ կը ծառայէին անոնց եւ եկեղեցիին մէջ թափորով կը պտտցնէին Ս. Սբիրիտոնի մարմինը եւ ամէնէն սրբազան մասունքները, մինչ միւս կողմէ այդ Միացման կատաղի հակառակորդները՝ «Զէլօթ»ները կը վազէին քանի մը գլխաւոր պարագլուխներու շուրջ հաւաքուելու, հռոդոսցի Նէօֆիտոս քահանային եւ մանաւանդ համբաւաւոր Կէննատիոս ճգնաւորին՝ որ աւելի ծանօթ էր

Գէորգ Սքօլարիոս անունով: Այս մոլեռանդ աղանդաւորը, անզիտակից, կամ ինչ որ աւելի ծանր է, թերեւս անտար-բեր Թրքական զարհուրելի վտանգին, Բանթօքրաթօսի մեծ վանքին իր խուցին մէջէն, ծոմապահութեան եւ աղօթքնե-րու մէջէն շարունակ կ՚որոտար իրերու ներկայ վիճակին պաշտօնական հերձուածին դէմ ամէնէն սարսափելի պատիժները գուշակելով խորհրդաւոր մարգարէութիւննե-րու մէջ, մանաւանդ նախատեսելով հռոմէական կայսրու-թեան վախճանը երկնային բարկութեան տակ, հեւ ի հեւ ամբոխին նետելով իր սպառնալից պատգամները, մինչդեռ փողոցին խռովարարները՝ էրիկ-մարդ թէ կին, քահանայ թէ վանական, մայրապետ թէ աշխարհական, խլացուցիչ աղաղակներու մէջ շարունակ կը պոռչտային. «Ի մահ բա-ղարջակերները եւ անոնց կռապաշտութիւնը», ու բարձրա-ձայն, բոլորն ալ, ամենասրբուհի Աստուածածնին, երկինքի թագուհիին, քաղաքին օգոստափառ պաշտպանուհիին, կը հայցէին, կը պաղատէին որ հրաշալի կերպով մը երեւնայ Թուրքերու սարսափելի Սուլթանին դէմ, ինչպէս նախորդ դարերու միջոցին այնքան անգամներ ըրած էր Խոսրովի զինուորներուն, արաբ էմիրներու կամ Ավարներու Խականին բանակներուն դէմ: Ամենակարող Բանայիային այս բարե-պաշտ զաւակներուն խելքով՝ պէտք չկար բնաւ օգնու-թեանը այդ հերձուածող Լատիններուն, զորս այնքան կ՚ա-տէին:

Այա-Սօֆիայի պատարագը Իզիտոռ կարդինալը ինք անձամբ ըրաւ ի նշան հաշտութեան յոյն եւ հռոմէական եկեղեցիներուն: Բայց Կոստանդիանոս թագաւորը ինքն իսկ, ինչպէս նաեւ իր հպատակներէն բոլոր անոնք որոնք քա-ղաքական նպատակներով ընդունած էին միութիւնը եւ ներկայ գտնուած այս հանդիսաւոր կրօնական արարողու-թեան, հազիւ շրթունքնուն ծայրովը զղջում յայտնեցին իրենց նախկին սխալին: Սրտերնուն խորը, իրենք ալ, բոլոր Յոյներուն պէս՝ կ՚ատէին լատինները: Միակ զգացումը որ զիրենք կը մղէր այսպէս երդմնադրուժ ըլլալու, զիրենք պաշարող ահարկու անձկութիւնն էր, եւ Թուրքերուն

տհարկու սեղմումին դէմ Հռոմի կաթոլիկներէն օգնութիւն ստանալու յոյսը, կարճ խօսքով՝ Արեւմուտքի իշխաններուն մէջ պաշտպանութիւններ գտնելու ակնկալութիւնը Թուրքերուն դէմ:

Մէհմէտ Բ., տհարկու սուլթանը, արդարեւ իրենց այնքան սարսափած պատերազմը հրատարակեր էր արդէն յունական կայսրութեան դէմ, եւ Պոլսոյ հուսկ յետին պաշարման համար նախապատրաստութիւնները սկսած էր ամէն կողմ մեծ կորովով: Նոյն իսկ, կայսրութեան երեւելիներէն շատեր մինչեւ վերջը բողոքած էին Եկեղեցիներու Միութեան այս ամբողջ կատակերգութիւնը անմաքուր, անօգուտ եւ պժգալի սակարկութիւն մը համարելով: Այս Սօֆիայի հանդիսաւոր արարողութենէն վերջը, մեծ-դուքս Լուքաս Նօթարաս, Կ. Պոլսոյ մէջ կայսրէն վերջը առաջին անձնաւորութիւնը, չէր քաշուած յայտարարելու թէ պիտի նախընտրէր սուրբ քաղաքին մէջ Թուրքերուն փաթթոցները տեսնել քան թէ լատինական խոյրը: Այս պատմութեան վերջը պիտի տեսնենք այնքան եղերական վերջաւորութիւնը այս մարդուն, որ սպաննուեցաւ այն Թուրքերէն, զորս կը գովէր Հռոմի հանդէպ:

Մինչեւ ատենեան մը մէկ կողմ թողլով կայսրը, Միութեան միակ ճշմարիտ կողմնակիցները, բացի Իզիտոր կարտինալէն, գրեթէ առանց բացառութեան կը պատկանէին ԺԵ. դարու զարգացած գրասէրներու այն դասին, որ ամենանուրբ դասական կրթութեան մը կը միացնէին կրօնքի մասին կատարեալ անտարբերութեան մը եւ ատոր համար իսկ ենթարկուած էին բարեպաշտներուն բարեպաշտը եղող այդ արեւելքցի խուժանին յիմար ատելութեան եւ կատաղի անէծքին: Ժողովրդական զանգուածին տէր եղող սորին կղերը, անթիւ անհամար վանականները որոշակի ու մոլեռանդօրէն թշնամի մնացած էին Հռոմի պապին: Թրքական սարսափելի վտանգին մասին անոնք ալ նոյնքան վէշ կը խորհէին, որքան Մեծ-Դուքս Նօթարասը, որուն խօսքերը յիշեցի քիչ մը վերը:

Պոլսոյ ապագայ յաղթականը այդ միջոցին տակաւին շատ երիտասարդ էր: Ըսի արդէն թէ քսանըմէկ տարեկան էր երբ իր հօր Սուլթան Մուրատի յաջորդեց: Հաճելի երեւոյթ մը ունէր, գեղակազմ, միջակ խոշորութեամբ, սուր աչքերով եւ կամարաւոր յօնքերով: Արծուի քիթ մը, քիչ մը վար կախուած, կարմիր, հաստ շրթունքներ իր դէմքին շատ մասնաւոր երեւոյթ մը կուտային: Այդ վայրկեանէն իսկ իր եւրոպական մայրաքաղաքին՝ Ադրիանուպոլսոյ մէջ ուրկէ կը կառավարէր իր ընդարձակ կայսրութիւնը, միակ մտածում մը կը տիրապետէր այդ պատանիին բոլոր խորհուրդներուն, այդ պատանիին որ կոչուած էր այնքան մեծ ճակատագրի մը եւ բացարձակ տէրն էր իսկականօրէն պատերազմիկ այդ անհուն ազգին: Միակ մտածումը, որ իր կեանքին ամէն մէկ ժամը կը լեցնէր, Պոլսոյ տիրանալն էր, Թագուհի քաղաքին, Վիթխարի քաղաքին, իր հուժկու պարիսպներուն անհուն գօտիին մէջ անառիկ, եւ զոր իրմէ առաջ զուր տեղը պաշարեր էին իր հայրը՝ Սուլթան Մուրատ, 1422ին եւ իր մեծ հայրը՝ աշխոյժ Սուլթան Պայազիտը, Յականուանեալն Ըլտըրըմ, 1395ին: Պէտք է կարդալ Դուկասի մէջ այն տրամաթիքական պատմութիւնը զոր Սուլթանին մտքի վիճակին կը նուիրէ ժամանակակից այդ յոյն պատմագիրը. «Գիշեր ցորեկ, կ'ըսէ, Մէհմէտ իր անկողնին մէջ կամ խորհրդականներուն հետ՝ ուրիշ բան չէր կրնար մտածել, եթէ ոչ Պոլսոյ առման: Անքնութենէ տանջուած գիշերներ կ'անցընէր՝ այն միակ մտածումէն արթուն մնալով թէ ի՛նչպէս պիտի գրաւէր այդ քաղաքը: Ցորեկը միշտ զինքը կը տեսնէին քարտէսներու վրայ գլուխը ծռած, ուր գծած էր փառաւոր քաղաքին ու իր պաշտպանութեանց յատակագիծը, կամ տենդագին կը խօսակցէր իր տեղակալներուն հետ, պատրաստելով այդ հսկայ պաշարումը, ուզելով ինք անձամբ լուծել բոլոր այն մեծ ու փոքր հազարաւոր հարցերը որոնք ամէն օր կը ներկայանային շարունակ իր արթուն մտքին: Հետեւոտն թէ ձիով՝ երկու թիկնապահներ ալ ետեւէն ձգած՝ անդադար կը պտըտէր Ադրիանուպոլսոյ զինուորական թաղերուն մէջ:»



ՖԱԹԻՀ ՍՈՒԼԹԱՆ ՄԷՀՄԷՏ Բ.

( Կենդանագիրը գծուած է Ժանթիլ Պէլլինիի կողմէ )

Այդ մեծ ամբոխավարին բոլորովին բացառիկ մասնայատկութիւնը, ինչպէս արդէն շատ լաւ դիտած են ուրիշներ ալ, սա էր, որ միջնադարու մոլեռանդ եւ զգայամոլ Թուրքի մը անհարկու անգթութեան, առանց ո եւ է տարիքի եւ սեռի զանազանութեան՝ իր կրօնքին բոլոր թշնամիները անգթօրէն բնաջինջ ընելու եռանդին կը միացնէր եզական փափաք մը՝ փիլիսոփայական, աստուածաբանական եւ նոյն իսկ երբեմն գեղարուեստի խնդիրներու: Ապահովաբար այդ յատկութիւնը եւ իր մեծ իմացականութիւնը, որոնք այնքան հազուագիւտ էին Թուրք ցեղին մէջ, կը պարտէր իր մօրը ծագումին՝ հաւանաբար քրիստոնեայ գերի մը:

Ըսի արդէն թէ՝ Մէհմէտ Բ. Ասիա կը գտնուէր, Մաղնիսայի մէջ, երբ փետր. 5ին իսկ իմացաւ գաղտնի նամակէ մը՝ իր հօր՝ Մուրատի մահը: Անմիջապէս թողուց այդ քաղաքը, առանց բան մը ըսելու իր նախարարներուն եւ իր հաւատարիմներուն: «Զիս սիրողը թող ետեւէս գայ», պոռալով աճապարեց ձին արշաւել տալու եւ Եւրոպական եզերքին վրայ Կէլիպօլու հասնելու: Կը պատմեն թէ այդ հիանալի կենդանիին շնորհիւ երկու օրուան մէջ կարեց անցաւ գրեթէ 120 մղոնի այդ անհագին ճամբան: Երկու օր միայն մնաց Կէլիպօլու, ուր ամէնուն իմացուց իր հօր Մուրատի մահը: Զինուած, մեծ խումբեր, գրեթէ անմիջապէս հոն միացան իրեն: Անկէ անցաւ Անդր. Պոլիս, իր եւրոպական մայրաքաղաքը, ուրկէ Պայազիտիպարտութենէն եւ մահէն ետքը, Թուրքերը չվռնտելու մեծ սխալը գործեր էր Մանուէլ Բ. Կոմնենոս կայսրը: Իր ժամանումին հետեւեալ օրն իսկ Սուլթան հռչակուեցաւ: Հրամայեց իր հօրը հիանալի յուղարկաւորութիւն մը ընել Պրուսայի մէջ, որ Օսմանի զաւակներուն պաշտօնական գերեզմանատեղին էր: Խալիլ փաշան վերահաստատեց իր սադրազամի պաշտօնին մէջ, թէեւ անիկա իր հօրը ողջութեանը իրեն հակառակ էր. իսկ կայսրութեան ամէնէն կարեւոր մասը կազմող ամբողջ Անատոլուին կառավարութիւնը տուաւ իր հօր միւս սիրական խորհրդականին՝ Իսհաք փաշային: Առ ի զգուշութիւն, լոգանքի առեն,Ալի անունով մէկու մը խեղդել տուաւ

իր մէկ պզտիկ եղբայրը՝ Ահմէտը, որ տակաւին օրօրոցն էր եւ յետոյ հրամայեց որ հանդիսաւոր կերպով իր փառաւոր հօրը հետ թաղեն նաեւ այդ խեղճ փոքրիկ մարմինը: Յետոյ, միշտ առ ի զգուշութիւն, սպաննել տուաւ նաեւ անոր դահիճը՝ Ալին:

Շրջակայ բոլոր իշխաններուն եւ թագաւորներուն կողմէ անթիւ անհամար դեսպաններ անմիջապէս Անդր. Պոլիս վազեր էին շնորհաւորելու համար նոր Սուլթանը: Ամբողջ Եւրոպան եւ Ասիան կը դողային այն ատեն Թուրքս անունէն: Այդ ստրկական դիրքով դեսպաններուն մէջ էին նաեւ Պոլսոյ եւ Տրապիզոնի այնքան անկեալ երկու կայսրերուն, Մօրէայի, Թովմա եւ Տէմէթրիոս դեսպոտներուն, Սերպիոյ թագաւորին, Լեսպոսի իշխաններուն, Կալաթայի եւ Քիոսի Ճենովացիներուն, Հռոդոսի Ս. Յովհաննէսի ասպետներուն, Պուլկարիոյ եւ Վալաքիոյ իշխաններուն եւ շատերու ներկայացուցիչները:

Խորամանկ Սուլթանը, ինքզինքը տակաւին իր գահուն վրայ հաստատ չզգալով Պոլսոյ կայսեր դեսպաններուն ամենաքաղաքավարական ընդունելութիւն մը ըրաւ: Հերոս Հունեատի հետ ալ երեք տարուան զինադադար մը կնքեց եւ Սերպերն ալ այդպէսով զսպեց: Աստուծոյ եւ Մարգարէին, հրեշտակներուն եւ Գուրանին վրայ երդում ըրաւ որ Կայսեր հետ կնքուած պայմանագիրները պիտի յարգէ: Նոյն իսկ, երկար ատենէ ի վեր իրեններուն հետ գժտուած ըլլալով, Պոլիս ապաստանած եւ հոն ապրող Օսմանի տան իշխաններէն եւ Սուլթան Պայազիտի թոռ իր հօրեղբօրդիին՝ Օրխան-Չէլէպիի կենսաթոշակ ըլլալու համար խոստացաւ իր Սթրիմոնի ձորին Թրակեան կալուածներուն հասոյթը տարեկան երեք հարիւր հազար ճերմակ վճարել: Բոլոր ասոնք մեքենայութիւն եւ խորամանկութիւն էին միայն: Իսկ արդէն, նոր Սուլթանին անթափանցելի մտքին վրայ իշխող միակ մտածումը Բիւզանդիոնի այդ հնադարեան քաղաքին առումն էր: Այդ մեծ ծրագիրը պիտի հետապնդէ, առանց երկվայրկեան մը վարանումի, մինչեւ որ հասնէր այնքան փափաքելի վերջնական արդիւնքին:

Քանի մը վայրկեան վերադառնանք Պոլիս։ Կոստանդիանոս Տրակազէս գահը բարձրանալուն պէս, անգամ մըն ալ խորհած էր ամուսնութիւն մը կնքել, ո՛չ թէ միայն ժառանգորդ մը ունենալու, այլ մանաւանդ այդ տագնապալից ժամանակներուն մէջ կայսրութեան անհունապէս անհրաժեշտ եղող օտար դաշնակցութիւն մը ապահովելու համար։

Ծանօթ է արդէն թէ նոր կայսրը առաջին անգամ մը ամուսնացած էր քսանըչորս տարեկանին՝ 1428 յուլիսին, Բադրասի առջեւ, բանակատեղիին մէջ, Զանթայի եւ Քէֆալօնիայի կոմս հանգուցեալ Լէօնառ Բ. Թօքքօի աղջկան Մագթաղինէի հետ։ Երիտասարդ իշխանուհին որ հաւանաբար իր ամուսնութեան պահուն օրթոտոքսութիւնը ընդունած էր եւ որ իբր օժիտ իր ամուսնոյն կը բերէր Մօրէայի մէջ Քիարէնծայի համբաւաւոր դղեակն ու քաղաքը, այդ պահուն բոլորովին Բիւզանդական անունով մը կոչուած էր Թէոտորա։ Բայց 1429 հոկտեմբերին մեռած էր Աքայիոյ Սանթաճէրի, արդի Տիմոս քաղաքին մէջ, այրի ձգելով այս կինը իր երիտասարդ տարիքին մէջ այդ սիրուն ամուսինը, որու այնքան յաջորդական դժբաղդութիւնները քիչ ատենէն համաշխարհային համբաւը պիտի տային չար աստղի մը տակ ծնած ըլլալու։

1441ի ամրան, 36 տարեկան հասակին, իր եղբօր Ժան կայսեր փափագին գոհացում տալու եւ կայսերական ընտանիքին ալ ժառանգորդ մը ապահովելու համար Կոստանդիանոսի՝ վերամուսնացած էր Լեսպոսի Լատին իշխանին Տօրինօս Ա.ի աղջկան՝ Կատարինէի հետ։ Կայսերական նաւատորմին գլուխը անցած՝ յուլիսի վերջը, այդ կղզին գացած էր իր երիտասարդ նշանածին հետ ամուսնանալու համար, բայց արդէն իսկ 1442ի օգոստոս ամսոյն խեղճ իշխանուհին ինքն ալ կը մեռնէր Լէմնոսի Բալէօքասթրօ քաղաքին մէջ, իր ամուսնոյն հետ այդ դղեակին մէջ ամբողջ ամիս մը Թուրքերուն կողմէ պաշարուած պահուն, զգացած վախերուն հետեւանքէն։ Հաւատարիմ Ֆրանցէսը որու մասին այնքան յաճախ պիտի խօսինք այս պատմութեան շարունակութեան մէջ, այս երկրորդ ամուսնութեան դեսպանը

եղած էր: Այս անգամուն ալ դարձեալ Կոստանդիանոս ո եւ է զաւակ չէր ունեցած:

Անկէ վերջը, անթիւ ու անհամար բանակցութիւններ տեղի ունեցան՝ Կոստանդիանոսը ամուսնացնելու համար անգամ մը Թարէնդէի բռնակալին քրոջ Իզապէլ Օրսինի տէլ Պալցոյի հետ, երկրորդ անգամ մը Վենետիկի Տօժին Ֆրանսուա Ֆօսքարիի աղջկան հետ, անգամ մըն ալ՝ Բօրթուկալի հակաթուղաւոր Բիէռի աղջկան հետ եւ կամ Տրապիզոնի կայսեր Յովհ.Դ.Կոմնենոսի աղջկան հետ: Այդ փորձերէն ո՛չ մէկը յաջողեցաւ սակայն: Մասնաւորապէս Վենետիկցիները այդ անյաջողութեան համար ամենասաստիկ ոխ կալեցին կայսրութեան դէմ: Ծրագիր մըն ալ գոյութիւն ունէր Կոստանդիանոսը ամուսնացնելու Նօթարաս մեծ դուքսին աղջկան հետ, որ կայսերական նաւատորմին ընդհանուր հրամանատարն էր, բայց Կոստանդիանոս այդ պահուն կայսրութեան գահը բարձրացած ըլլալով այդ բանակցութիւններն ալ վիժած էին:

Իր հպատակ իշխաններէն մէկուն՝ Գարամանի Իպրահիմ պէկի դիմադրութեան յաղթելու համար կարճ ժամանակ մը Ասիա մնալէ ետք՝ Նոր Սուլթանը Ադրիանուպոլիս դարձին՝ Յոյները բոլորովին կղզիացնելու համար հաշտութիւն կնքեց մարդու մը հետ որ կրնար իրեն ահարկու հակառակորդ մը ըլլալ. այս էր նշանաւոր Ժան Հիւնեատը, Թրանսիլվանիոյ Վօյվօտ, Հունգարիոյ խնամակալ եւ Քօսօվայի պատերազմին համբաւաւոր հերոսը: Յետոյ երիտասարդ Սուլթանը իր սեւեռեալ գաղափարին վերադարձաւ, զրաւել Պոլիսը եւ այդ արտաքոյ կարգի քաջագործութիւնով իր բոլոր նախորդներուն փառքը նսեմացնել:

Ալ միմիայն այդ համբաւաւոր եւ հսկայական ձեռնարկը գլուխ հանելու միջոցներուն վրայ խորհեցաւ, որ իրեն յանձնարարած էր իր հօր Սուլթան Մուրատի կտակով եւ որ արդէն իր բոլոր նախահայրերուն, նախկին Սուլթաններուն, տիրական մտածումը եղած էր: Ամէնէն առաջ ուզեց հաստատուն կռուան մը ունենալ այն գործողութիւններուն, որոնց պիտի ձեռնարկէր փառաւոր քաղաքին դէմ զոր քանդումի եւ գերութեան պիտի մատնէր: Արդէն, Վոսփորի

ամբողջ ասիական ափունքին տէր էր: Հոն իր ձեռքը գտնուող Սուլթան Պայազիտի կողմէ կառուցուած Անատօլու կամ Կիւզէլ-Հիսարի դղեակին դէմ որոշեց ուրիշ հաստատուն եւ հսկայական դղեակ մըն ալ շինել եւրոպական ափունքին վրայ որ իրեն չէր պատկաներ թէեւ, բայց զոր Յոյներն ալ ի վիճակի չէին պաշտպանելու: Վոսփորի ամէնէն նեղ մասին երկու կողմերը, այս երկու զուգահեռ ամրոցները իր զինուորներուն ձեռքը գտնուելով, պիտի կրնար ամբողջովին գոցել Սեւ Ծովու ճամբան եւ զինքը այդ կողմէն Պոլիս եկող բոլոր ապրանքներուն տէր պիտի ընէր: Այդ նոր բերդը նոյն ատեն յենարան մը պիտի ըլլար իր բանակներուն Եւրոպայի մէջ կատարելիք գործողութեանց համար եւ տեսակ մը զինավայր հաւաքումի նահանջի ատեն: Վոսփորի նեղուցին ամէնէն աւելի նեղ տեղը գտնուող եւ հազիւ կէս մղոն լայնութիւն ունեցող այս համբաւաւոր կորութեան վրայ էր որ Քրիստոսէ հինգ հարիւր տարի առաջ Դարեհ թագաւորը իր անհուն բանակը անցուցած էր մէկ ցամաքէն միւսը, այն տեղը՝ ուր նշանաւոր նեղուցին ջուրերը ամէնասաստիկ հոսանքներէ շարունակ կը խաղան եւ ուր յանկարծ զգալի կ'ըլլան Սեւ Ծովէն եկող հեշտալի կերպով զովացած հովերը, երբ ամրան տաք օդերուն, շոգենաւերը աճապարանօք վերին Վոսփորի հաճելի վայրերը կը տանին ճամբորդները:

ԺԵ. դարու դէպի կէսուն, բիւզանդական կայսրութեան տկարութիւնը այնքան մեծ էր որ, Սուլթան Մուրատի ժամանակին իսկ, կայսրը ստիպուած էր դաշնագիրներով արտօնութիւն տալ Սուլթանին բանակներուն Վոսփորէն անցնիլ այդ կէտին վրայէն ուզած ատենին, եւրոպական եզերքը ելլել եւ հոնկէ Պոլսոյ շուրջը դառնալով Թրակիոյ դաշտերուն մէջէն իրենց հիւսիսային մայրաքաղաքը՝ Ադրիանուպոլիս երթալ: Դիւրին է ըմբռնել թէ այս վիճակը ինչ աստիճան նուաստացուցիչ եւ մանաւանդ անհարկու կերպով վտանգալից էր Յոյներուն համար: Ատիկա չէր բաւեր սակայն Մէհմէտի անհամբերութեան: Իրեն, այդ նոր բերդը, եւրոպական եզերքին վրայ այդ յենակէտը պէտք էր

իր միակ մտմտուքը եղող այդ պաշարումը եւ Պոլսոյ առումը կարելի դարձնելու համար: Իր նաւատորմին շնորհիւ, արդէն տէր ըլլալով Տարտանէլի նեղուցին, Վոսփորի նեղուցն ալ փակելով կը յուսար այն ատեն կղզիացնել եւ պաշարել Աստուածապահ Քաղաքը, որ ալ չպիտի կրնար ո՛չ մէկ տեղէ օգնութիւն ու սնունդ ստանալ: Աւա՜ղ, խեղճ Կոստանդիանոս կայսրը այնքան ոչինչ նաւատորմիղ մը ունէր, այնքան քիչ զինուոր մանաւանդ՝ որ ստիպուեցաւ անկարող հանդիսատես ըլլալ. այս զարհուրելի պատրաստութիւններուն, որոնք իր կայսրութեան մահազանգը կը հնչեցնէին: Նոյն իսկ, չկրցաւ արգիլել Սուլթանին բազմաթիւ գործաւորներուն հանդարտ անցուդարձը Վոսփորի վրայէն՝ Ասիայէն Եւրոպա:

Պէտք չկայ երկարօրէն պատմելու համբաւաւոր շինութիւնը այս հոյակապ դղեակին, որուն հսկայ աշտարակները իրարու միացած էին նոյնքան ահագին պարիսպներով: Հազիւ քանի մը ամիս տեւեց ատիկա: Վոսփորի եւրոպական եզերքին վրայ Թուրքերուն կողմէ ո եւ է ամրութեան շինութիւնը արգիլող դաշնագիրները ջնջեցնելու համար, կայսեր կողմէ Ադրիանուպոլիս ղրկուած բողոքի աղաչողական պատուիրակութիւններուն Սուլթանը խուսափողական պատասխաններ տուաւ՝ ըստ Կրիթօբուլոսի, իսկ ըստ Սուկասի աւելի հաւանական վկայութեան՝ խստութեամբ պատասխանեց, եւ սպառնաց դեսպանները մորթազերծ ընել եթէ համարձակէին վերադառնալ: «Պոլսոյ պարիսպներէն դուրս, պատասխանել տուաւ Կոստանդիանոսի, կայսրութեան ամբողջ երկիրները իմս են, եւ ուզածս կրնամ ընել հոն: Արդէն հայրս որոշած էր այդ ամրոցին շինութիւնը՝ այն միջոցին իսկ, երբ Հունգարիոյ պատերազմէն վերջը, դուք, հոռոմներդ, մատնեցիք մեզ եւ ուզեցիք նեղուցէն անցքերնիս արգիլել: Հօրս կատարել չկրցածը, ո՛չ ոք պիտի կրնայ արգիլել որ ես չկատարեմ, որովհետեւ ես իմ նախորդներէս ո՛չ մէկուն կը նմանիմ:»

Խեղճ Կոստանդիանոս, ուժին առջեւ խոնարհելու ստիպուած, բաւականացաւ այն ատեն Սուլթանէն պահանջելու

*որ պէտք եղած հրամանը տայ, արգիլելու համար դղեակին շինութեանը զբաղած թրքական բանակներուն շրջակայ թշուառ ժողովուրդը կողոպտելէ: Սուլթանը, այս խնդրանքին ի պատասխան, հրամայեց որ մարդոց եւ կենդանիներուն՝ բոլոր այդ բազմութեան պէտք եղած սնունդը բռնի գրաւեն շրջակայ յոյն գիւղերէն եւ բոլոր դիմադրողները սպաննեն: Այդ պատճառաւ քանի մը ջարդեր տեղի ունեցան: Բայց յոյն բնակչութեան գրգռութիւնը իր գագաթնակէտին հասաւ, երբ Ս. Միքայէլ Հրեշտակապետի համբաւաւոր եկեղեցին, թուրք գործաւորները իրենց ձեռքով քանդեցին: Կարճ խօսքով, ճշմարիտ պատերազմական վիճակ մը սկսաւ տիրել քիչ ատենէն: Կայսրը, տըխրած, ուզեց զինուորներ ղրկել՝ գործաւորները վռնտելու եւ սկսուած աշխատութիւնները քանդելու համար: Բայց, իր հաւատարիմները դարձեալ արգիլեցին զինքը՝ լալագին ապացուցանելով իրենց անկարողութիւնը :*

*Սուլթանը, իր բոլոր ընդարձակ կայսրութեան մէջ, հրովարտակ հանած էր որ, բոլոր իր հպատակները եւ ճորտերը, Եւրոպայի եւ Ասիոյ բոլոր նահանգներուն կառավարիչները, պարտաւոր էին իրեն շինուածանիւթեր եւ գործաւորներ ղրկել, իր այնքան կարեւորութիւն տուած այդ բերդին չափազանց արագ շինուելուն համար: 1452ի մարտ 26ին, ինք անձամբ, ուժեղ բանակի մը գլուխը անցած, հասած էր տեղւոյն վրայ, մինչդեռ, իր հրամանովը, զօրաւոր նաւատորմ մը, Կէլիպօլուի եւ Տարտանէլի խարսխարանը թողլով՝ կ'երթար Վոսփորը գրաւել: Պարպարօ, նոյն իսկ կ'ըսէ, —ինչ որ հաւանաբար սխալ է,— թէ, Սուլթանը այդ նաւատորմով եկաւ Պոլսոյ մօտ: Իր ներկայութիւնը, որ մեծ աշխատութիւններուն իրական սկզբնաւորութիւնը եղաւ, գործաւորներուն խանդավառութիւնը աւելի եւս գրգռեց: Ինք անձամբ որոշած էր բերդին տեղը. Վոսփորի ամէնէն նեղ կէտին վրայ, ինչպէս արդէն ըսի, Կիւզէլճէի կամ Կիւզէլ-Հիսարի բերդին ճիշդ դէմը (այսօրուան Անատօլու-Հիսարը): Այդ առթիւ, ինչպէս տեսանք, քանդել տուաւ Ս. Միքայէլ Հրեշտակապետի հին ու համբաւաւոր եկեղեցին,*




ԻՏԱԼԱՑԻ ԱՐՈՒԵՍՏԱԳԷՏ ՔՈՍՏԱՆՑՕԻ 1481ԻՆ ՇԻՆԱԾ ՊՐՈՆԶԷ ՄԵՏԱՅԵՕՆԸ
ՈՐ ՍՈՒԼԹԱՆ ՄԷՀՄԷՏ Բ.Ը ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՆԷ (երեսի կողմը)




ԻՏԱԼԱՑԻ ԱՐՈՒԵՍՏԱԳԷՏ ՔՈՍԹԱՆՑՕԻ 1481ԻՆ ՇԻՆԱԾ ՊՐՕՆԶԷ ՄԵՏԱՅԵՕՆԸ
ՈՐ ՍՈՒԼԹԱՆ ՄԷՀՄԷՏ Բ.Ը ԿԸ ՆԵՐԿԱՅՍՑՆԷ (ետեւի կողմէ)

Վոսփորի հնամենի եւ փառաւոր պաշտպանը: Նոր բերդը, որ Պօղազ-Քէսէն ալ կը կոչուէր, եւ ճիշդ ու ճիշդ Ս. Տաճարին տեղւոյն վրայ էր շինուած, կառուցուեցաւ մասամբ այդ շէնքին կտորներովը եւ հրաշալի սիւներովը: Երիտասարդ Սուլթանը, չէր դադրեր իր ներկայութեամբը քաջալերելէ գործաւորները, որոնք իր բարձր եւ անընդմէջ տեսչութեան տակ կ'աշխատէին: «Բաթմաքիրիա» կոչուած տեղը բազմաթիւ հսկայ կիրի փուռեր շինուեցան: Ամէն օր այդ տեղէն աշխատութեան վայրը կը փոխադրէին պէտք եղած կիրը: Տեսնուեցան բարձրաստիճան սպաներ, փաշաներ, որոնք Սուլթանին հաճելի ըլլալու համար անձամբ կ'աշխատէին, քարերը կը կրէին, շաղախ կը փոխադրէին: Պատմագիրները, անշուշտ քիչ մը չափազանցութեամբ կ'ըսեն թէ՝ հինգ հազար բանուորներ, տասը հազար օգնականներու օժանդակութեամբ անդադար աշխատեցան մինչեւ բերդին վերջնական շինութիւնը: Աշխատաւորներու ամէն մէկ խումբ իր ք ա տ ը ին առաջնորդութեամբ կուգար աշխատութեան վայրը: Ամէն մէկ գործաւոր, իր երկու օգնականներուն հետ, օրը մէկ գրկաչափ պատ պէտք էր անպատճառ աւարտէր եւ կամ մահուան պատիժով պատժուէր: Յարատեւ երթեւեկ մը միացուցած էր երկու եզերքները: Դուկաս կը պատմէ թէ՝ շինութեան փայտը Նիկոմիդիայէն կամ Արակլիէն (Էրէյլի) կը բերէին, իսկ քարերը՝ Անատոլուէն:

Քիչ ատենէն բազմաթիւ աշտարակներով այդ եռանկիւնաձեւ ընդարձակ շրջափակը, որու այնքան նկարչագեղ տեսարանը այսօր իսկ տակաւին հիացում կը պատճառէ զբօսաշրջիկներուն, մարտահրաւէրի մը պէս բարձրացաւ Վոսփորի հիւս. ափունքին վրայ: Ամէնէն մեծ աշտարակներէն երկուքը ցամաքին կողմը կը նայէին եւ մէկ հատը Վոսփորի: Պարիսպները 20 ոտք լայնութիւն ունէին, աշտարակներու պատերը, որոնց գագաթը կապարէ գդակներ էին դրուած, 32 ոտք լայնութիւն ունէին: Ծովեզրին վրայ խոշոր թնդանօթներ, հսկայ ռմբաձիգներ, որոնք կծկտած գազաններու կը նմանէին, ամբողջովին կը տիրապետէին նեղուցին անցքին վրայ: Վեց հարիւր լիպրա ծանրութեամբ վիր-

գեր(*) կրնային արձակել: Անօթի Պոլիսը, իր ապրուստին անհրաժեշտ եղող ցորենը այլ եւս չէր կրնար ընդունիլ Սեւ Ծովէն:

Օգոստոսի դէպի վերջերը գործը ամբողջովին աւարտեցաւ: Արագօրէն պիտի անցնիմ այդ քանի մը ամիսներուն միջոցին պատահած դէպքերուն վրայէն: Կոստանդիանոս կայսրը, իր սարսափելի հակառակորդը իր հետ հաշտեցնելու համար, սկիզբները բերդերուն գործաւորներուն ուտելիք կը ղրկէր: Յետոյ, քիչ մը ուշ հասկնալով որ իր մայրաքաղաքին գործը լմնցած էր, եթէ Թուրքերուն թող տրուէր գործերնին աւարտել, փոխած էր իր վարուելակերպը: Դէպի դուրս զանազան յարձակումներով Պոլսոյ բնակիչները ջանացեր էին գործաւորները փախցնել եւ աշխատանոցները քանդել, բայց մեծ վնասներով ետ մղուած էին: Աւելի ետքերը, երբ Թուրքերը իրենց աւերը աւելի հեռուները տանելով՝ բերդին շուրջերը գտնուող գիւղերը կամ առանձին տուները սկսան այրել, դարձեալ ջանացին զանոնք կեցնել, բայց նոյնքան անյաջող կերպով: Միակ արդիւնքը սա եղաւ որ Սուլթանը առիթ ունեցաւ կայսեր դէմ հռչակելու պատերազմ մը, որ սակայն, արդէն շատոնց գոյութիւն ունէր իրականին մէջ: Մէհմէտ Բ. այդպէս շարժելու համար, այդ կարծեցեալ յարձակումները եւ քրիստոնեաներուն կողմէ կատարուած զինադադարի խզումները պատճառ բռնեց: Գ ա յ լ ի ն  ե ւ  գ ա ռ ն ո ւ կ ի ն առակը անգամ մըն ալ կ'իրականանար, ինչպէս շատ ճշդիւ դիտել տուած են արդէն:

Այդ միթխարի դղեակին այնքան արագ կերպով շինուիլ լմննալուն լուրը, սարսափով լեցուցեր էր Պոլսոյ բնակիչներուն եւ կայսրութեան բոլոր հպատակներուն սիրտերը: Անկարող հանդիսատեսը ըլլալու դատապարտուած էին այդ սադայելական բերդին զինուելուն, որուն նշանակութիւնը իրենց համար նոյն ատեն թէ նուաստացուցիչ էր

(*) Այդ ժամանակին, թնդանօթներու արձակած քարի խոշոր զանգուածները:

*եւ թէ կայսրութեան մօտաւոր կործանումը գուշակել կուտար ճակատագրականօրէն:*

*Սուլթան Մէհմէտ, Ադրիանուպոլիս վերադառնալէ առաջ, հոն, իր անձնուէր տեղակալներէն մէկուն՝ Ֆիրուզ Աղայի հրամանատարութեան տակ չորս հարիւր ընտրեալ զինուորներ դրաւ: Հրաման տուաւ անոր՝ Վոսփորէն անցնող ամէն ազգի եւ ամէն մեծութեամբ նաւերը կեցնել, զանոնք ստիպել որ, առագաստնին ամփոփելէ վերջ, գան խարիսխ նետեն բերդին ստորոտը, վայն բարեւեն իրենց դրօշով, եւ իրենց որոշած տուգանքը վճարեն անցնելու համար: Պղնձէ խոշոր թնդանօթները, որոնց վրայ խօսեցայ արդէն, պաշտօն ունէին այդ պժգալի որոշումները յարգել տալու: Թուրք թնդանօթաձիգներուն հրաման տրուած էր անսաստողները անմիջապէս ընկղմել՝ վիրգերու ահագին ծանրութեան տակ, առանց ո եւ է գութի: «Բումէլի Հիսարի դղեակը, կ'ըսէ Պարպարօ, ականատես վկան, մանաւանդ ծովուն կողմէ անհուն ուժ մը կը ներկայացնէր: Անհունօրէն հսկայազանգուած շինութիւն մըն էր, որուն պարիսպները քսանըհինգէն մինչեւ եռեսունըհինգ ոտք բարձրութիւն ունէին:»*

*Կայսրը հրամայած էր Եփիպաթիոն մեծ գիւղին բնակիչներուն թողուլ որ Թուրքերուն արջառները ազատօրէն արածեն. խեղճ գիւղացիները այդ հրամանին հնազանդելով հանդերձ, ընդդիմանալ ուզած էին իրենց հունձքերուն աւերումին. ատոր վրայ, Թուրք Եէնիչէրիները Սուլթան Մէհմէտի քեռայր եւ Սուլթան Մուրատի փեսայ՝ Սպէնդիարի զաւկին առաջնորդութեամբ եւ Գարաճա պէյի հրամանատարութեամբ խմբովին ջարդեցին այդ գիւղացիները, փոխանակ զանոնք պաշտպանելու, ինչպէս կայսրը խնդրած էր Սուլթանէն: Կոստանդիանոս, այս լուրը իմանալով, վերջապէս հասկցաւ որ այդ աստիճան պղտոր կացութեան մը մէջ, անպատճառ խաղաղութիւնը պահելու իր ջանքերը բոլորովին զուր պիտի մնային: Ու որոշեց, իր մայրաքաղաքին եւ իր կայսրութենէն տակաւին իր ձեռքը մնացած մասին հետ գեղեցիկ կերպով մը վախճանելու, լաւ մեռնելու համար պատրաստուելու, քեք, իր մայրաքաղաքը եւ իր կայսրութենէն ինչ որ կը մնար տակաւին:*

*Մինչեւ այդ պահուն, այնքան վախցած էր իր սարսափելի դրացին բարկացնելէ, որ նոյն իսկ բերդը շինած ատեննին, թող տուած էր որ տակաւին գործով Պոլիս եկող գացող հազուագիւտ Թուրքերը՝ ազատօրէն մտնեն ելլեն: Երբ իմացաւ Էփիպաթիօնի խեղճ գիւղացիներուն սարսափելի ջարդը, այն ատեն հասկցաւ որ, Սուլթանը որոշած էր ամէն բան լմնցնել: Մօտալուտ աղէտի մը համակերպելով՝ մայրաքաքաղաքին դուռները գոցել տուաւ, պաշտօնապէս այդ բանը իմացնելով Սուլթան Մէհմէտի՝ ցաւագին արժանապատուութեամբ լեցուն լեզուով մը: Նոյն ատեն ձերբակալել տուաւ այն քանի մը Թուրքերը, որ առեւտուրի կամ հետաքրքրութեան պատճառաւ այդ պահուն Պոլիս կը գտնուէին: Ատոնց մէջ կային նաեւ Սարային քանի մը երիտասարդ ներքինիները: Երբ Կայսեր առջեւ հանեցին զիրենք՝ լալով պաղատեցան որ կամ զիրենք շուտ մը սպաննէ, եւ կամ արեւուն մարը մտնելէն առաջ, զիրենք ազատ թողու, որովհետեւ այդ ժամը անցնելէն ետքը, Սուլթանը անգթօրէն գլխատել պիտի տար զիրենք: Կայսրը, ատոնց յուսահատութենէն յուզուած՝ զանոնք անմիջապէս թող տուաւ:*

*Երեք օր ետքը ազատ արձակել տուաւ բոլոր միւս բանտարկեալները, եւ քաղաքին մէջ ապաստան տուաւ Թուրքերուն կողմէ հալածական շրջակայքի դժբաղդ գիւղացիներուն: Ասոնք խմբովին Պոլսոյ պարիսպներուն մէջ ապաստան կը փնտռէին հետերնին բերելով այդ բարբարոսներուն ծակաչքութենէն ազատած իրենց հունձքերը, որոնք ապագայ պաշարման ատեն իբր սնունդ պիտի ծառայէին: Յետոյ, Կոստանդիանոս, Մէհմէտ Բ.ի վեհանձնութեամբ առլի, վերջին յայտարարութիւն մը ուղղեց, պարզելով այն պատճառները որոնք զինքը կը ստիպէին պատերազմի վիճակին մէջ մտնելու, իր մայրաքաղաքին գոց դուռներուն ետին:*

*Սուլթանը, առանց բնաւ յուզուելու այսքան ազնիւ վարուելակերպէ մը, իրեն ներկայացուած առիթին վրայ խոյացաւ: Կայսեր հրամանով, դուռներուն գոցուելէն անմիջապէս վերջը, անգամ մըն ալ ղրկեց անոր պատերազմի*

վերջնական յայտարարութիւն մը: Պարպարօ նոյն իսկ կ'ըսէ թէ օգոստոսի կէսերուն Վոսփորի նոր բերդին մէջ վար դրաւ կայսեր երկու դեսպանները եւ գլուխնին կտրել տուաւ: Յիսուն հազար հոգինոց բանակով մը օգոստոսի 28ին Պոլսոյ պարիսպներուն տակ երեւցաւ, բայց իր բոլոր պատրաստութիւնները տակաւին աւարտած չըլլալով երեք օր միայն մնաց հոն՝ առանց սակայն բնաւ անհանգիստ ըլլալու Յոյներուն կողմէն, որոնց վատութիւնը դառնօրէն երեսնուն կուտայ Բիւսքիլիւս պատմագիրը: Խնամքով քննեց տեղւոյն վիճակը, պարիսպներուն վիճակը ուսումնասիրեց եւ չորս ամսուան բացակայութենէ մը ետքը, ըստ Տուքասի 1452 սեպտեմբերի 1ին, ըստ Պարպարօի 6ի մեկնեցաւ դէպի Ադրիանուպոլիս «ամբարտաւան ու վսեմ»: Այդ մեծ քաղաքին մէջ յաղթական մուտք մը գործեց եւ սքանչելի նոր պալատ մը շինել տուաւ, մինչդեռ նաւատորմը Կէլիպօլու կը դառնար: Ադրիանուպոլսէն էր որ ամէնէն աւելի դիւրութեամբ կարելի էր Բիւզանդիոնի վրայ քալել: Ասիական ափունքէն այդ նոյն ձեռնարկը շատ աւելի դժուար պիտի ըլլար: Անմիջապէս գործի սկսաւ:

Այս վերջին մանրամասնութիւնները մեզի տրուած են ամէնաթանկագին արժէքով վաւերագիրով մը, Նիքոլա Պարպարօյի ձեռագիր յուշատետրը, որ Վենետիկեան նաւու մը վրայ վիրաբոյժ էր եւ Պոլսոյ մէջ անցուց պաշարման սարսափելի շրջանը: Այդ յուշատետրը, որ այսօր Վենետիկի Մարչիանէ գրադարանին մէջ պահուած է, մեզի համար ամէնամեծ կարեւորութիւն մը ունի, ինչպէս պիտի տեսնենք պաշարման պատմութեանը շարունակութեանը մէջ, թէեւ բացարձակապէս յայտնի է որ իր հեղինակը թշնամութեանց աւարտումէն ետքը միայն գրի առած է զայն: «Անձկապէս Պոլսոյ դժբաղդ քաղաքին մէջ գտնուած ըլլալով, կը գրէ յառաջաբանին մէջ, որոշեցի գրի առնել բոլոր ինչ որ կայ այս էջերուն մէջ, հանգուցեալ Թուրք Մուրատին զաւկին Մէհմէտ պէկի պատերազմին վրայ որով անիկա գրաւեց վերոյիշեալ Կ. Պոլիս քաղաքը:»

Հոկտեմբերի առաջին օրերէն իսկ, կ՚ըսէ Ֆրանձէս, Սուլթանը, որ իր ծրագրին կատարումը կը հետապնդէր մէթոտիկ եռանդով մը, Թուրխան Պէյլէրպէյին հրամանատարութեան տակ Մորէա բանակ մը ղրկեց: Այս արիւնկզակ եւ աւազակաբարոյ զօրապետը որ արդէն անգամ մը աւրշտկած էր Պեղոպոնէսը իր երկու զաւակներուն Ահմէտի եւ Էօմէրի հետ միասին, Սուլթանէն հրաման ստացած էր կայսեր երկու եղբայրները՝ Տէմէթրիուսը եւ Թօման, որոնք այս վերջնոյն կողմէ թերակղզին կը կառավարէին՝ անպատճառ հոն վար դնելու եւ ամբողջ ձմեռը զանոնք արգիլելու որ մայրաքաղաքին օգնութեան չիգան:

Թուրխան եւ իր վայրագ խումբերը իրենց թուական ահագին առաւելութենէն օգտուելով, Պարանոցին պարիսպը գրաւելէ ետք, որու պաշտպանները յուսահատ դիմադրութիւն մը վերջ ջարդուեցան, մինչեւ Մորէայի կեդրոնը Արքատիա, նոյն իսկ մինչեւ Մեսինիոյ ծոցը մտած էին, անգամ մըն ալ հուրի եւ թուրի մատնելով այս դժբաղդ երկիրը, ամէնէն սարսափելի աւերները գործելով, թերակղզին ամայացնելով մինչեւ Մանթինէայէն անդին, մինչեւ իր վերջին սահմանները, երկու սեռէ հազարաւոր գերիներ ետեւնուն քաշքշելով: Կորնթոս եւ Պաթրաս գրաւուեցան եւ թալլուեցան: Բայց Թուրքերը պարտուեցան Սխոլ-բօքօլիքնէի առջեւ: Յետոյ, Միկէնայի մօտ, Լէօնթարիսի ճամբուն վրայ, Միկինայէն ոչ շատ հեռուն, Թուրխանի որդին՝ Ահմէտը եւ իր զօրաբաժինը Մաթիէօ Ասանի հրամանին տակ գտնուող կայսերական զօրքին կողմէ ծուղակի մէջ իյնալով՝ չարաչար յաղթուեցան: Ահմէտ գերի բռնուեցաւ եւ Տէմէթրիուսի կողմէ բանտարկուեցաւ Սպարտայի միջնաբերդին մէջ: Իր զինուորները ջարդուեցան: Հակառակ այս աղէտներուն, Թուրքերը ի վերջոյ հոն ալ, ինչպէս ամէն տեղ, տէր մնացին եւ եղաւ, որու Մէհմէտ այնքան կը բաղձար: Երկու դեհպետները, կայսեր եղբայրները, ստիպուեցան ամէն յոյս մէկդի ձգել իր մայրաքաղաքին մէջ անոր օգնութեան հասնելու: Այդ պահուն եղերական եւ անգութ դէպքեր տեղի ունեցան, կարծես սովրեցնելու համար Պոլսոյ

բնակիչներուն, ինչպէս նաեւ անոնց դրացի Բերայի Ճենովացիներուն եւ Վենետիկցիներուն, Րումէլի Հիսարի համբաւաւոր բերդին շինութեամբը յառաջ եկած կացութեան կատարեալ եւ ցաւալի փոփոխութիւնը: 1452 նոյմ. 10ին, Ժիռօլամօ Մօռօզինիի հրամանատարութեան տակ Սեւ ծովէն եկող վենետիկեան նաւեր անցած ատեննին, բերդին Թուրք թնդանօթաձիգներուն կողմէ ռմբաձիգի հարուածներով յարձակում կրեցին: Զանազան պատմագիրներ քիչ մը տարբեր ձեւերով կը պատմեն այս դէպքը:

Պարպարօ կը գրէ.—«Երկու խոշոր ցռկանաւերը Քաֆայէն եկան նոյմ. 10ին, երբ Թուրքին բերդին առջեւ հասան առագաստնին պարզած, Թուրքը սկսաւ պոռալ. «Քաքտա՛ն, առագաստներդ վար ա՛ռ»: Բայց առանց մտիկ ընելու այս հրամանին, ցռկանաւերը բոլոր առագաստնին պարզած, շարունակեցին ճամբանին: Թուրքը շարունակեց պոռալ. «Մինչեւ վար իջեցուր առագաստները, քաբտա՛ն»:

Յետոյ երբ տեսաւ որ նաւապետը (հաւանաբար տականին ծանօթ չըլլալուն Թրքական նոր թնդանօթներուն անհարկու ուժին) չէր ուզեր առագաստները իջեցնել, սկսաւ արձակել իր վիրգերը եւ շատ մը հրացանի հարուածներ եւ նետեր, այնպէս որ շատ մը մարդիկ վիրաւորուեցան: Երբ նաւապետը տեսաւ որ շատ մարդ կը կորսնցնէր՝ որոշեց առագաստները մինչեւ վար իջեցնել եւ այդպէսով ազատեցաւ: Առագաստները վար իջնալուն պէս Թուրքը ռմբակոծումը դադրեցուց եւ այդ պարագան նպաստեց ցռկանաւին աննշմար կերպով դէպի Պոլիս իջնալուն, եւ անգամ մը որ անիկա ղեկակին առջեւէն անցաւ՝ Թուրքը ալ չկրնալով իր ռումբերը հասցնել անոր՝ նաւապետը յանկարծ առագաստները դարձեալ պարզեց եւ այսպէսով կրցաւ փախչիլ. Պ. Ժիռօլամօ Մօռօզինին էր այդ, Պ. Պէռնարտօի որդին, որ ողջ առողջ Պոլիս հասաւ, եւ նոյմ. 10ին այդ երկու ցռկանաւերուն ժամանումը մեզ մեծապէս մխիթարեց:»

Նոյն ամսուն 26ին Վենետիկեան ուրիշ նաւ մը այլապէս անռելի բաղդի մը արժանացաւ: Նաւաստիներուն մէկ մասը զարհուրելի տանջանքներու մէջ սպաննուեցաւ: Ցա-



ՌՈՒՄԵԼԻ ՀԻՍԱՐԻ ԲԵՐԴԸ, ԶՈՐ ՄԷՀՄԷՏ Բ. ՇԻՆԱԾ Է ՎՈՍՓՈՐԻ ԵՒՐՈՊԱԿԱՆ ԵԶԵՐՔԻՆ ՎՐԱՅ

տէրը կէս մէջքերնէն սղոցուեցան: Պարպարօ այս նոր դէպքը սապէս կը պատմէ. «Նոր դղեակին մեծ թնդանօթը ընկղմեց Անթոնիօ Ռիձձօի նաւը, որ Սեւ Ծովէն կուգար եւ գարի բեռցած էր Պոլսոյ համար իբր պաշար: Դէպքը պատահեցաւ 1452 նոյեմբ. 26ին: Այդ նաւուն տէրը, Անթոնիօ Ռիձձօ, ջուրին մէջ բռնուեցաւ, Ադրիանուպոլիս ղրկուեցաւ Սուլթանին մօտ եւ բանտ դրուեցաւ: Տասնըհինգ օր վերջը Սուլթանը զինքը ցիցի զարնել տուաւ: Իսկ Տօմէնիկօ տէ Մաէսթրիսի մէկ զաւակն ալ որ նաւուն գրագիրն էր՝ ան ալ իր սարայը մտցուց, աւա՜ղ: Նաւաստիներէն մէկ քանիին արտօնութիւն տուաւ Պոլիս երթալու, իսկ միւսները մէջքերնէն կտրել տուաւ: Պոլսոյ Վենետիկեան Պայլը զուր տեղը Ադրիանուպոլիս ղրկեց Տիար Ֆապրուցցի Քօռնէրը Անթոնիօ Ռիձձօն ազատել ջանալու համար»: Պարպարօ կ'աւելցնէ թէ յիշեալ դեսպանը իր պաշտօնին անյաջողութենէն ետք Պոլիս վերադարձաւ Տիար Գաբրիէլ Թրէվիզանի ցուկանաւով, եւ թէ Յոյներուն եւ Սուլթանին միջեւ արդէն իսկ նախապէս խզուած խաղաղութիւնը՝ այդ թուականէն սկսեալ Սուլթանին եւ Վենետիկցիներուն մէջ ալ խզուեցաւ:

Դուկաս պատմագիրը 26 նոյեմբերի այս զարհուրելի դէպքը քիչ մը տարբեր կերպով եւ հաւանաբար աւելի ճշգրտօրէն կը պատմէ: Ըստ իր պատմածին՝ վենետիկեան նաւը ընկղմեցաւ բերդին խոշոր թնդանօթներէն միոյն արձակած վեց հարիւր լիպրա ծանրութեամբ վիրգէ մը: Ռիձձօ նաւապետը եւ իր նաւաստիներէն երեսունը յաջողած էին նաւակով մը կեանքերնին ազատել. բայց ցամաք ելած ատեննին՝ Թուրքերը օձիքնուն բռնեցին եւ շղթայակապ Տիտիմօթիքօն ղրկեցին զիրենք՝ ուր այն ատեն կը գտնուէր Սուլթան Մէհմէտ: Այս վերջինը հրաման տուաւ նաւապետը ցիցի զարնելու եւ միւսները գլխատելու: Արգիլուեցաւ անոնց դիակները թաղել, այնպէս որ գիշատիչ թռչուններ եւ շնագայլեր կերան զանոնք: Դուկաս, որ այդ պահուն Սուլթանին մօտ կը գտնուէր, իբր դեսպան եկած ըլլալով Միտիլլիի Ճենովացի դեհպետին, Կաթիլուչիօի կողմէ, աչքովը

տեսաւ այս ցաւալի դէպքերը եւ դժբաղդ Իտալացի նաւաստիներուն մարմինները որոնք Վոսփորի նոր բերդին երեք աշտարակներուն քով փռուած էին.

«Դարձեալ, դեկտ. 2ին, կը պատմէ Պարպարօ, Տրապիզոնի ցուկանաւը(*), որ վերին ծովէն(**) կուգար, Վոսփոր մտաւ, եւ շուտով եկաւ կեցաւ այս նեղուցը փակող՝ Թուրքերուն նոր կառուցած դղեակէն քիչ մը վերօք. Վոսփոր մտածին պէս, այս ցուկանաւը հանդիպեցաւ դղեակէն յատկապէս ղրկուած տասներկու «փուստ»երու(***): Ասոնք նախ իբր բարեկամ ներկայացան, որով ցուկանաւին մարդիկն ալ գեղեցիկ նուէր մը տուին անոնց նաւապետին: Բայց այս վերջինը անգամ մը որ առաւ նուէրը, բարկութիւն կեղծեց եւ յանկարծ ծովը նետեց զայն, առարկելով թէ ինք աւելի մեծ նուէրի մը իրաւունք ունէր, եւ ասոր վրայ նաւերուն քիթը դարձնելով գնաց նոր դղեակը որպէս զի հոն «սու պաշին» համոզէ ցուկանաւը գրաւելու: Հետեւաբար, ցուկանաւին մարդիկն ալ, իբր խելացի մարդիկներ, տեսնելով որ Թուրքը բարկացած է, վճռեցին լուիկ մնջիկ հետեւիլ Թրքական փուստերուն, եւ երբ այս վերջինները դղեակ հասան ու նաւապետը ցամաք ելաւ ցուկանաւը գրաւելու մասին սու պաշիին հետ խորհրդակցելու համար, ճիշդ այդ պահուն, եւ մինչեւ նաւապետին դղեակ հասնիլը, մերինները թիակներուն ուժ տուին յաղթականօրէն Պոլիս հասնելու համար. երբ ճիշդ դղեակին առջեւ հասան, իբր բարեկամ, (այսինքն թիակները վեր վերցնելով, թմբուկ զարնելով, զանազան շարժումներ ընելով եւ ուրախութեան ճիչեր արձակելով) սկսան ողջունել զայն, եւ երրորդ բարեւին, դղեակը

(*). Այսինքն այն վենետիկեան ցուկանաւը, որ որոշ ատեններ, Տրապիզոնի արտադրութիւնները կը բերէր նախ Բերա, յետոյ Ճենովա:

(**). Սեւ ծով:

(***). Իտալացիները փուստ կը կոչէին այս շրջանին Թրքական միջակ մեծութեամբ նաւերը:

արդէն նաւենիս մնացած էր, քանի որ թէ հոսանքը մեզ դէպի Պոլիս քշած էր եւ թէ նաւաստիները շարունակ բոլոր սրտով եւ զուարթօրէն կը թիավարէին դղեակին այս փառնգալից անցքը անցնելնուն համար. այս բանը պատահեցաւ դեկտ. 4ին, որ օրը ցուկմնաւը Պոլիս հասաւ, եւ անոր նաւապետը տխար Եագօբօ Քօքօն էր, «մեծն Քօքօ» մականուանեալը»:

Եթէ սուլթան Մէհմէտ այսքան վայրագ բռնութեամբ մը իր թնդանօթներուն միջոցով կ'ընդունէր անցած ատենին իտալական մեծ նաւերը, պատճառը այն էր որ կ'ուզէր անոնց նաւապետները վերջնականապէս հրաժարեցնել Պոլիս ուտելիք եւ ցորեն տանելու փափաքէն: Վենետիկեան եւ ճենովական այս նաւերը այնքան խոշոր էին որ իրենց միջոցով Պոլիսը քիչ ատենէն պարենաւորելը խիստ դիւրին բան էր, եթէ սուլթանը այս կերպով չի դիմադրէր իրենց:

Հիմա գրեթէ ամէն ինչ պատրաստ էր վերջնական առումին համար: Ինչպէս ըսի Ռումելի Հիսարի նոր շինուած բերդը Սուլթանին ձեռքը ամենաստոյգ միջոց մըն էր Պոլսոյ դժբաղդ քաղաքին գործը լմնցնելու: Այս բերդն էր որ քաղաքը կատարելապէս կը մեկուսացնէր Սեւ Ծովէն, որ պաշարումի ատեն միակ եւ անհրաժեշտ կեդրոնը եղած էր Պոլսոյ պարենաւորման: Իր Ադրիանուպոլսոյ շքեղ պալատին մէջ, շրջապատուած իր զարհուրելի բանակով, Մէհմէտ կրնար ալ վերջնականապէս պատռել դիմակը: Ու ժողվելով իր շուրջը իր ամէնէն բարձրաստիճան տեղակալները, բոցաշունչ ճառով մը անոնց պարզեց իր հսկայական ծրագիրները, զորս իրեն մասնայատուկ սովորութեամբ մը մինչեւ այն ատեն եւ ոչ մէկուն հաղորդած էր: Կրիտոպուլոս պատմագիրը ամբողջութեամբ կու տայ մեզ այս բուռն ճառը: Անշուշտ, ինչպէս նմանօրինակ պարագաներու մէջ ըրած են միջին դարու եւ հին ժամանակներու այնքան պատմագիրներ, այս ժամանակագիրն ալ ամբողջութեամբ ինքնիրմէն յօրինած է այս կայսերական ճառը, բայց ինչ որ ալ ըլլայ, այս յօրինուածոյ խօսքերը, ճիշդ ու

ճիշդ կը պատկերացնէին երիտասարդ Սուլթանին խելացի, անհանդարտ, արագ ու հրամայողական մտածումը: Մէհմէտ նախ կրակէ բառերով կը սկսի իր շուրջիններուն վերյուշել իր փառաւոր նախորդներուն անդադրում յառաջդիմութիւնները: «Բիւզանդիոնի կայսերուն զօրութիւնը ջնջուած է գրեթէ, ու վերջին խոչնդոտ մը միայն մնացած է վերջացընելու համար մեր գործը Կոստանդինոսի յաջորդներուն տասը ամբողջ դարեր տեւող կայսրութեան հետ: Այդ խոչնդոտը Կ. Պոլիսն է, Թագուհի Քաղաքը: Պէտք է զայն քանի ուժով գրաւենք, հիմա որ այդ բանը կարելի, գրեթէ ապահով է, շնորհիւ մեր բանակին ուժին ու գերընտիր վիճակին: Պէտք է աճապարենք մանաւանդ, որպէս զի Եւրոպա ոտքի չելլէ ու իր նաւատորմիղը չի ղրկէ կայսեր օգնութեան: Հետեւաբար անհրաժեշտ է որ անմիջապէս յայտարարենք այս գերագոյն պատերազմը:» Ամբողջ ներկաները, իսլամի բոլոր այս դաժան հրամանատարները, մոլեգնութեամբ ծափահարեցին այս թրթռուն ճառը:

Վերջին պատրաստութիւնները անհաւատալի կորովով ու արագութեամբ կատարուած էին: Փետրուարէն սկսեալ Գարաճա պէյի հրամաններուն տակ, թրքական եւրոպեան բանակին յառաջապահ զունդէն զանազան ջոկատներ հետզհետէ յարձակած ու գրաւած էին Թրակիոյ մէջ Յոյներու տակաւին ունեցած քանի մը ցանցառ քաղաքներն ու բերդերը: Բէրինդէս, Անքիալոս, Մէզամպրիա, Բիզի, Այիոս Ստեփանոսի աշտարակը, Էպիբաթիոնի դղեակը, Մարմարայի հիւսիսային եզերքին եւ Սեւ Ծովու վրայ տակաւին ուրիշ քաղաքներ յարձակում կրեցին ու աւերուեցան այնպէս՝ ինչպէս այն ժամանակի Թուրք բանակները գիտէին ընել: Միմիայն Սէլիմպրիա դիմադրեց քաջաբար: Մայրաքաղաքին շրջակայքը այսպէս մէթոտիկ կերպով քանդուեցաւ: Իրենց լեռնի ապաստանարաններուն մէջ հալածուած, կամ խմբովին ամէնէն զարհուրելի գերութեան մատնուած քրիստոնեայ թշուառ ժողովուրդին մէջ ինկած սարսափը ահարկու եղաւ, երբ հասկցաւ վերջապէս թէ իրենց այնքան վախցած պաշարումը, զոր կը յուսային բնաւ չտեսնել, այս նոր ու

աղետալի պայմաններով պիտի վերսկսէր սարսափելի կերպով։ Իրաւ ալ, դարերէ ի վեր, առաջին անգամն էր որ Յոյները ծովուն տէրը չէին, ու հիմա ոչ միայն ցամաքի կողմէն պէտք էր պաշտպանէին Կ. Պոլիսը, ինչպէս բոլոր նախորդ պաշարումներու ատեն, այլ Վոսփորի կողմէն ալ։

Ինչպէս միշտ այս տիեզերական տգիտութեան ու աւելորդապաշտութեան ժամանակներուն, այս անգամ ալ հազար զարհուրելի նշաններ, հազար սոսկալի գուշակութիւններ Աստուծոյ բարկութիւնը կը յայտնէին դժբաղդ քաղաքին դէմ։ «Ինչ որ կ'աւելցնէր Պոլսոյ բնակիչներուն խռովքը, կ'ըսէ Կրիտոբուլոս(*), այն գերբնական երեւոյթներն էին՝ որոնք այդ ատեն երեւան կուգային նախագուշակ նշաններու ձեւով. օրինակ՝ երկրաշարժեր, տարօրինակ մռնչիւններ հողին մէջէն, յետոյ փայլակներ ու շողշողալով ինկող կրակներ երկինքին մէջ, զարհուրելի կայծակներ, հիւսիսայգեր, ուրականներ, հեղեղանման անձրեւներ, ողողումներ եւ ուրիշ աղէտներ։ Յետոյ նաեւ անծանօթ աստղեր երեւցան անկանոն կերպով, թափառեցան ատեն մը ու յանկարծօրէն անյայտ եղան։ Ուրիշ աստղեր ալ երեւցան եւ կարծես մուխեր արձակելով երկինքին փական, եւ շատ ուրիշ նմանօրինակ հրաշալի ու անբնական երեւոյթներ. ասոնք կ'երեւային իբրեւ Աստուծոյ կամքին անթափանցելի նշանները, իբրեւ նախագուշակ նշանները գալիք աղէտներու, եւ կը ցուցնէին թէ ներկայ վիճակը տակն ու վրայ պիտի ըլլար եւ ամէն բան պիտի փոխուէր։ Որովհետեւ Աստուա-

---

(*). Կրիտոբուլոս յոյն պատմագիր մըն է որ հինգ գլուխով իր պատմագրութեան մէջ սուլթան Մէհմէտի բարձր գործերը նկարագրած է. այս գործէն շատ օգտուած եմ այս պատմութեան մէջ։ Պոլսոյ առումէն քիչ ետքը, ժամանակ մը Իմպրոս կղզին կառավարիչ եղաւ սուլթանին անունով. ուրեմն մինչեւ վերջը անձնուէր սքանչացողը եւ պատմագիրը եղաւ, միեւնոյն ատեն իր հայրենակից Յոյներուն դժբախտութիւններուն ալ գթացող մնալով։ Իր գործը սուլթանին նուիրած էր։ Այս թանկագին գործին ձեռագիրը գտնուած է Կ. Պոլսոյ հին պալատին սուլթաններու Մատենադարանին մէջէն։

ծամօր սուրբ պատկերները եկեղեցիներուն մէջ, յիշատակարանները եւ սուրբերու արձանները կը քրոնէին. գտնուեցան նաեւ այսահարներ ու գերբնական ներշնչեալներ, երկու սեռէ ալ, որոնք հազար չարիքներ կը գուշակէին. եւ կախարդներ որոնք շատ մը աղէտներ կը մարգարէանային: Հին մարգարէութիւններ մտքերնին կ'իյնար, եւ պատգամներ կը հրատարակէին...: Այս բոլորը սարսափ ու սոսկում կը տարածէր ամէն կողմ, եւ թող չէր տար որ հաւատք ունենան ապագային վրայ:»

Եւ սակայն կայսրը, ազնուականութեան ընտիր անդամները եւ ժողովուրդին ամէնէն կորովի մասը, արհամարհելով այս սարսափները, աննկուն քաջութեամբ մը սկսան պաշտպանողական աշխատութեան եւ այս աղետալի պայմաններուն մէջ, երբ տասնի դէմ մէկ համեմատութեամբ պիտի կռուէին: Առաջին գործերնին եղաւ Կ. Պոլսոյ անհուն պարիսպը նորոգել, այն պարիսպը որ մղոններով շրջապատ ունէր եւ որ Մեծն Թէոդոսէն սկսեալ յաղթականօրէն դիմադրած էր, հազարաւոր տարիներէ ի վեր, այնքան այլազան ազգերու այնքան բազմաթիւ յարձակումներուն: Այս հին ու հսկայական պատնէշին շատ մը մասերը փլչիլ կը սպառնային կամ խորապէս վնասուած էին: Տենդոտ գործունէութեամբ սկսան նորոգել զանոնք, ու փութկոտութեամբ բայց ճարպիկութեամբ ալ քաղաքին անմիջական շրջակայքը գտնուած ամէնէն այլազան նիւթերով ամրացուցին: Ժամանակագիրները կը պատմեն թէ շրջակայքի բազմաթիւ գերեզմանատուններու քարերը մեծաքանակ գործածուեցան պարիսպին տկար մասերը ամրացնելու(*):

---

(*) Լէօնար Քիոսցի արքեպիսկոպոսը կը պատմէ, թէ ինչպէս Մանուէլ Եագարի եւ աբեղայ մը՝ Նէոֆիտոս Հռոդոսցի, որոնց կայսեր կողմէ պաշտօն տրուած էր վարելու նորոգման այս գործողութիւնները, անխղճօրէն մոռնալով այն ծայրայեղօրէն լուրջ պարագաները զորս կ'անցնէր կայսրութիւնը, իւրացուցին այս նպատակով իրենց տրուած դրամին մէկ մեծ մասը: «Ասով կը բացատրուի, կ'ըսէ նոյն պատմաբանը, թէ ինչու այնքան հարեւանցի ու անկատար կերպով նորոգուեցաւ պատը եւ թէ ինչու այնքան դիւրին եղաւ Թուրքերուն յաջողութիւնը: Պաշարումէն յետոյ հողին մէջ

Միեւնոյն ատեն ինքնապաշտպանութեան միջոցներն ալ, այսինքն արձակելու յատուկ զէնքեր մեծաքանակ կը հաւաքէին: Տենդոտ փութաջանութեամբ Եւրոպայէն եւ Ասիայէն բերել կուտային ինչ պարէն որ կարելի էր, մանաւանդ ցորեն եւ ուրիշ արմտիքներ ու ձէթ. վերջապէս կը ժողվէին որչափ դրամ որ կրնային հայթայթել: Արեւմուտքի ամէն կողմերը, ինչպէս նաեւ Պեղոպոնէս, Հռոմի Պապին, բոլոր մօտաւոր ու հեռաւոր իշխաններուն, շուտափոյթ օգնութիւն աղերսող դեսպանութիւններ ղրկեցին: Ստացագիրի փոխարէն բոլոր վանքերն ու եկեղեցիները ստիպուեցան կայսերական Փողերանոցին յանձնել բովանդակ իրենց թանկագին անօթները: Այսպէս տեւեց ամբողջ այդ եղերական ձմեռը, անհուն անձկութեան շրջան մը, յարատեւ սպառնալիքի տակ: Անհուն քաղաքին մէջ շատեր ամէն բան կորսուած կը համարէին արդէն, ուրիշներ կը յուսային տակաւին:

Սուլթանն ալ որ յունուարի ընթացքին արդէն Ադր. Պոլիս դարձեր էր Տիտիմօթիքոնէն, իր կողմէն օր օրի կը փութացնէր յարձակողական պատրաստութիւնները: «Մանաւանդ 1453ի յունուարի մէջ է որ, կ'ըսէ Պարպարօ, յիշեալ Թուրքը ամէն բան կարգի դրաւ, գալ յարձակելու համար Պոլսոյ վրայ, եւ ցամաքէն ու ծովէն անհուն բանակ մը ժողվեց կռուելու համար այս դժբաղդ, ամէնուն երեսէն ինկած քաղաքին դէմ: Փետրուարէն իսկ սկսաւ Պոլսոյ վրայ ղրկել իր թնդանօթները տասը հազար Թուրքերու բանակով մը:» Միեւնոյն ժամանակ տենդոտ արագութեամբ մը, առանց ծախքին նայելու, շինել կուտար նաեւ բազմաթիւ պատերազմական նաւեր(*):

---

Թաղուած հողէ սափորի մը մէջ գտան մեծ մասը այն գումարին զոր երկու ընկերակիցները այնքան չարաչար կերպով խլրացուցած էին: Ոսկեգօծ Դրան խիստ մօտ եղող աշտարակի մը վրայ տակաւին արձանագրութիւն մը կայ Մանուէլ «Իգարի» կամ «Եագալի» անունով:

(*). Դուկաս պատմագիրը կը պատմէ թէ ինչպէս Ադր. Պոլսոյ փողոցներուն մէջ սուլթանը գիշերային արշաւներ կը կատարէր եւ թէ ինչպէս անխնայօրէն իր ձեռքովը իսկ կը սպաննէր բոլոր անոնք որոնք իր ծպտուած վիճակը չէին յարգեր:

Նոյն Պարպարօն կը պատմէ թէ ինչպէս երեք արագաշարժ յունական նաւեր նոյն ամսուն ծովահէնի կռիւ մը մղեցին Թրքական ծովեզերքներուն դէմ ու ահագին վնաս պատճառեցին անոնց: Մեծ թիւով մահմետական հպատակներ, զորս առեւանգեցին, իբր գերի ծախուեցան Պոլսոյ հրապարակին վրայ: «Ասոր հետեւանքով, կ'ըսէ մեր Վենետիկցին, Թուրքը —այսինքն Սուլթանը— սոսկալի կատղեցաւ Յոյներուն դէմ եւ երդում ըրաւ վրէժ լուծել անոնցմէ:»

Կայսրը, որուն սպառնացող վտանգները գաղտնաբար իմաց կուտային իրեն, թէ՛ մեծ վէզիր Խալիլ փաշա՛ որ իր տէրը կը մատնէր այսպէս), թէ Վենետիկցիներու Պայլը, եւ թէ Կալաթայի Ճենովացիները, չի զուր նոր դեսպանութիւն մը ղրկած էր Ադր. Պոլիս: Մեր ձեռքը ունինք այն ազնուական ու հպարտ պատասխանը զոր տուած է Սուլթանին վերջին սպառնագին նամակներէն մէկուն. «բացարձակապէս յստակ կը տեսնուի, կը գրէր անոր, որ աւելի պատերազմ կ'ուզես դուն՝ քան թէ խաղաղութիւն: Եւ որովհետեւ միւս կողմէ չեմ կրնար քեզ համոզել իմ խաղաղասիրական զգացումներուս, իմ անկեղծութեանս մասին վստահացնելով քեզ եւ յայտարարելով թէ պատրաստ եմ քեզի հարկատու ալ ըլլալու, թող փափագդ կատարուի: Հիմա ալ Աստուծոյ միայն կ'ապաւինիմ, եւ անկէ միայն օգնութիւն կը սպասեմ: Եթէ իր կամքն է որ իմ քաղաքս քո՛ւկդ ըլլայ, ո՞վ կրնայ դէմ դնել անոր: Իսկ եթէ ընդհակառակն, Ան կարենար խաղաղութիւն կնքելու փափաքը ներշնչել քեզի, խիստ երջանիկ պիտի ըլլայի: Ասով հանդերձ քեզի կը վերադարձնեմ քու խօսքդ, բոլոր այն երդումներուն եւ դաշնադրութիւններուն մասին զորս իրարու փոխադարձաբար երդուընցանք եւ իմ մայրաքաղաքիս դուռները կը գոցեմ: Մինչեւ արիւնիս վերջին կաթիլը պիտի պաշտպանեմ իմ ժողովուրդս: Թող քու թագաւորութիւնդ երջանիկ ըլլայ մինչեւ այն օրը, երբ արդարն Աստուած, գերագոյն դատաւորը, մեզ երկուքս իր ատեանին առջեւ պիտի հանէ:»

Ամբողջ ձմեռը տեւեցին այս այնքան եղերական նշա-

նակութիւն ունեցող պատրաստութիւնները: Քանի մը խիստ տկար օգնութիւններ հասան Յոյներուն: Օր մը, բոլոր առագաստներնին բացած, Սեւ ծովէն Ոսկեղջիւր մտան երկու արագաշարժ վենետիկեան ցռկանաւեր, Գաբրիէլ Թրէվիզանի եւ ազնուական Զաքարիա Կրիոնիի հրամանատարութեամբ: Ասոնք ղրկուած էին Վենետիկի կառավարութեան կողմէ որպէսզի վերադարձին մինչեւ Ադրիական ընկերանան այն երեք խոշոր վաճառականական ցռկանաւերուն, որոնք ինչպէս ամէն տարի Ազախու ծովին Թանա քաղաքէն կուգային, Տոնի շրջանի արտադրութիւններով բեռնաւորուած: Բոլոր այս նաւերը, որոնք չէք գիտեր ինչպէս յաջողած էին Րումէլի Հիսարի զարհուրելի արգելքէն անցնիլ, մայրաքաղաքին ապագայ պաշտպանութեան յատկացուեցան: Քանի մը օր ետքն ալ, ինչպէս պատմած ենք, պապին նուիրակ ռուսիացի Իզիտոր կարտինալը եկաւ երկու հարիւր զինուորի հետ. յետոյ Քանտիայէն ալ գինի բեռցած ութ նաւեր եկան. այս գինին պաշարման միջոցին խիստ օգտակար եղաւ:

Դուկաս իր կողմէ կը պատմէ խիստ խոշոր եւ խիստ լաւ զինուած հինգ նաւերու Պոլիս մուտքը, որոնց չորսը Քիոսէն կուգային ամէն տեսակ պարէններով բեռնաւորուած, եւ մէկը Պելոպոնեսէն:

«Դեկտեմբեր ամսի 13ին, կը պատմէ Պարպարօ, Այա-Սօֆիայի եկեղեցիին մէջ Միացման համար մատուցուած համբաւաւոր պատարագին հետեւեալ օրը, մայրաքաղաքին պաշտպանութեան համար վար դնելու ձեռնարկեցին բոլոր այս վենետիկեան կամ ուրիշ առեւտրական նաւերը: Այս խնդիրը նորէն ծեծուեցաւ այս շքեղ տաճարին մէջ ի ներկայութեան Կայսեր, Ռուսիացի Իզիտոր կարտինալին, Միտիլինի արքեպիսկոպոսին, Լէօնար Քիոսցիին, եւ Կայսեր բոլոր պարոններուն (այսինքն Յոյներու արխոններուն), Վենետիկեան ազգին բոլոր վաճառականներուն, եւ սոյն քաղաքին ժողովրդեան մեծ մասին, որոնց ամէնքն ալ միաբերան կ'ըսէին. «Եթէ Վենետիկեան այս նաւերը, հիմա նաւահանգիստին մէջ գտնուած իրենց միւս նաւերուն հետ, ձգեն հեռանան այս քաղաքէն, անմիջապէս Թուրքին որսը

պիտի ըլլանք մենք»։ Այս կարծիքէն էին նաեւ Կայսրը եւ իր բոլոր պարոնները։ Այսպէս ըսին ամէնքն ալ եւ նոյն օրը ուրիշ ոեւէ վճիռ չի տրուեցաւ, միայն խիստ շատ ծրագիրներ մէջտեղ դրուեցան։»

«Հետեւեալ օրը 14 դեկտեմբերին, ճաշէն յետոյ, տխար նաւապետին ցռկանաւին մէջ հաւաքուեցան Իզիտօռ կարտինալը Քիոսի արքեպիսկոպոսին հետ, Վենետիկի տխար Պայլը Կայսեր բազմաթիւ պարոններուն եւ բոլոր մեծ վաճառականներուն հետ։ Հոն էր նաեւ տխար Գաբրիէլ Թրէվիզան, որ Տանէն եկած երեք առեւտրական նաւերը մինչեւ Վենետիկ տանելու համար Վենետիկէն ղրկուած երկու թեթեւ ցռկանաւերուն փոխ-նաւապետն էր, նաեւ հոն էին խոշոր ցռկանաւերու երեք վարիչները եւ շատ ուրիշ անձեր։ Երբ բոլորը հաւաքուեցան նաւապետին ցռկանաւին մէջ, կարտինալը առաջին անգամ խօսք առաւ եւ ըսաւ. «Եթէ այս հինգ ցռկանաւերը այս Պոլիս քաղաքը մնան, ալ ոեւէ վախ չի մնար որ այս շնեռ թրքական «փուսթեր»ը գան մնաս պատճառեն մեր նաւահանգիստին մէջ, կամ ուրիշ ոեւէ կերպով յարձակին մեր վրայ.» Այս իմաստով խօսեցան նաեւ Միտիլինի արքեպիսկոպոսը եւ Կայսեր պարոնները, եւ կարտինալը բաւական երկարօրէն ճառեց թէ պէտք էր վար դնել այս ցռկանաւերը Պոլիս քաղաքին պաշտպանութեանը համար։ Յետոյ խօսք առաւ Պայլը եւ ըսաւ. «Տիար նաւապետ, կը համարձակիմ յորդորել ձեզ, նախ Աստուծոյ սիրոյն համար, յետոյ Քրիստոնէութեան պատուին համար, ինչպէս նաեւ Վենետիկի Մեր Աւագանւոյ ժողովին պատուին համար, որ դուք Պոլիս մնաք Կայսեր հրամաններուն տակ։»

Բայց Թրէվիզան չի համոզուեցաւ եւ ցոյց տուաւ որոշ հրամանագիրներ զորս նոր ընդունած էր, եւ որոնք կը հրամայէին իրեն մեկնելու Պոլսոյ նաւահանգիստէն Տրապիզոնի ցռկանաւին գալէն ատ առաւելն տասը օր յետոյ։ «Բանի որ չի թոյլատրեցիք որ մեր ապրանքները նաւերը բեռնաւորեմ, պտուց, այս գիշեր իսկ պիտի մեկնիմ, եւ ով որ հետս Վենետիկ գալ կ՚ուզէ, թող գայ։»

Այս այնքան թանկագին աջակիցներու մեկնումով յա-

ուչ գալիք անհունօրէն սպառնալից վտանգին առջեւ, Պապը եւ ցամաք իջած գլխաւոր վաճառականները գերագոյն ժողով մը կազմեցին Սուրբ-Մարիամ եկեղեցիին մէջ եւ վերջապէս, բուռն եւ երկարատեւ վիճաբանութենէ մը ետքը, մէկի դէմ քսանեւմէկ ձայնով, որոշեցին որ ի պահանջել հարկին բունի վար պէտք է դնէին այս նաւերը: Պարպարօ մեզի կուտայ անունները այդ քսան եւ մէկ ազնուականներուն, որոնք Պապին այս իմաստով ըրած առաջարկներուն քուէ տուին, Պապին որ իրաւամբ նախագահ եղած էր այս եղերական ժողովին: Ամէն ամիս նաւատիներու տրուելիք դրամական վարձքն ալ որոշեցին՝ չորս հարիւր դուկատ, ասպետին ալ զատ՝ զոր կայսրը պիտի հոգար: Վճռեցին նաեւ որ այն նաւապետը որ իր նաւովը նաւահանգիստէն փախչելու փորձ պիտի ընէր, պիտի դատապարտուէր երեք հազար դուկատի տուգանք մը վճարելու:

Նոյն Սուրբ-Մարիամ եկեղեցիին մէջ 17ին եւ 19ին կայացած նոր ժողովներով, որոշեցին իր նաւովը Վենետիկ ղրկել Ծուան «Տիտանէկի»ն, որ «Մեծամեծն Աւագանեաց Ժողովին» ուղղուած նամակներ պիտի տանէր, որոնցմով կը բացատրէին թէ ի՛նչ կամքէ անկախ պատճառներով ստիպուած էին նաւերը վար դնել, եւ շուտափոյթ օգնութիւններ կը խնդրէին հասցնել դէպի Պոլիս: Ուրիշ գաղտնի սուրհանդակներ ալ, տարբեր ուղիներով, մանաւանդ ցամաքի ճամբաներով ղրկեցին, գաղտնի հրահանգներով, այնպէս որ նոյն իսկ եթէ Թուրքերուն ձեռքը իյնային չպիտի կրնային հասկնալ զանոնք: Կայսրը կը պաղատէր Պապին որ օգնութեան հասնի, եւ կ'ըսէր թէ Թուրքերուն առաջին գործը պիտի ըլլար, անմիջապէս որ Պոլիսը իյնար, յարձակիլ Իտալիոյ վրայ: Նոյնպէս կը պաղատէր հերոս Հիւնեատի որ չի լքէ իր Բիւզանդիոնի եղբայրները: Աւա՜ղ, բոլոր այս պաղատագին կոչերը ձայն բարբառոյ յանապատի մնացին արեւմտեան ազգերուն կողմէ, եւ ինչպէս տեսանք. միմիայն պզտիկ խումբ մը ղրկուեցաւ Պապին կողմէ Իզիտոռ Կար-

տինալի հրամանատարութեամբ։ Իրաւ, Վենետիկ ալ օգնութեան խումբերով նաւատորմ մը ղրկեց, բայց անիկա չի կրցաւ ժամանակին, մայրաքաղաքին անկումէն առաջ հասնիլ, ինչպէս պիտի տեսնենք։

Նոր ու անվերջանալի վիճաբանութիւններէ յետոյ, 26 յունուարին կայացած փոթորկալից ժողովի մը մէջ, Կայսրը թոյլատրեց Վենետիկցի նաւապետներուն որ իրենց ապրանքներն ու ինչքերը բեռնաւորեն իրենց ցուկանաւերուն մէջ, այն միակ պայմանով որ նախապէս պէտք էր հանդիսաւոր երդումով յանձն առնէին առանց իր թոյլտուութեան ոեւէ կերպով չմեկնիլ նաւահանգիստէն։ Այս թոյլտուութեան շնորհիւն էր որ, Պոլսոյ անկումի պահուն Վենետիկեան նաւերը իրենց փախուստի առեն կրցան միասին տանիլ իրենց հարուստ ապրանքները, որոնք անխուսափելիօրէն թշնամիին ձեռքը պիտի իյնային եթէ ցամաքը մնացած ըլլային։ Պարպարօ կ'ըսէ թէ այս թանկագին բեռը կը բաղկանար ամէնէն աւելի օշնանի, պղինձի, լեղակի, կոճապղպեղի, բանուած ոսկիի, կնքամոմի, կարմրաղեղի, զանազան հատիկներու, մաստաքէի եւ այլնի պէս ապրանքներէ, ամբողջը մօտաւորապէս հազար երկու հարիւր տոննոլ։

«Յունուարի վերջի այս նոյն օրուան մէջ, կը շարունակէ Պարպարօ, յանկած սրնթացօրէն Պոլիս մտաւ ժան Ճիուսթինիանի Ճենովացին, երկու նաւերով՝ մին երկու հազար երեք հարիւր եւ միւսը ութը հարիւր թօնօ տարողութեամբ եւ հինգ հարիւր մարդոցմով. եւ Պոլիս եկաւ, որովհետեւ կը հասկնար թէ ինչ ստիպողական պէտք ունէր իրեն Պոլիս քաղաքը, իրեն՝ որ ճանչցուած էր իբրեւ բարերարը քրիստոնէութեան։ Կայսրը ամենամեծ պատիւներով ընդունեց զինքը եւ քիչ օր յետոյ անոր թեթեւազէն պատերազմական ցուկանաւ մըն ալ տուաւ եւ զինքը անուանեց ընդհանուր հրամանատար կամ «բրօթօստրաթոր» իր ցամաքային բանակին, որպէս զի անոր հետ միասին Մեծ Պարիսպին վրայ հաստատուելով ցամաքի կողմէն, պատերազմի Թուրք Մէհմէտի բանակին դէմ, որու ամէն օր Կ-

Պոլիս անբաղդ քաղաքին պարիսպներուն տակ՝ զայն կը սպասէին:»

Այս մեծ հրամանատարին գալուստը պաշտպանման առաջին մեծ եղելութիւնը կը կազմէ, ու պէտք տեսնենք թէ ինչպէս այս Ժան Ճիուսթինիանին, այս ազնուական Ճենովացին, տասնեւհինգերորդ դարու ճշմարիտ քոնտոթիէրէ մը, բոլորովին կարկառուն դեր մը խաղաց Պոլսոյ ինքնապաշտպանութեան գործին մէջ: Չեմ գիտեր ինչու «Լօնկօ» մականունը կը կրէր: Երկու տարի առաջ Խրիմու Կաֆա Ճենովական գաղթականութեան «Բօտէսթա» եղած էր: Յանդուգն, տարօրինակէս քաջ, եւ անսովոր կորովով օժտուած մարդ մըն էր, ճարպիկ զինուորական, հրաշալիօրէն գործունեայ, անվախ ու անթերի, եւ որուն կեանքին միակ զբաղումը պատերազմը եղած էր: Միմիայն իր արժանիքովը բարձրացած զինուոր, ինքնաբերաբար, կայսրութեան սպառնացող մահացու վտանգին ի լուր եկած էր իր սուրը կայսեր ի սպաս դնելու: Պոլիս կուգար իր երկու գեղեցիկ ու խոշոր նաւերով եւ իր սքանչելի զինուորներով, քաջ մարդու եւ պատերազմական բարձր արժանիքներու տէր զինուորականի իր հոյակապ համբաւովը առաջնորդուած: Կը թուի թէ իր անսպասելի գալուստը վայրկենական կերպով ամէնուն կորով ներշնչեց: Կայսրը, ինչպէս տեսանք Պարպարոյի պատմութենէն, հրաշալի ընդունելութիւն մը ըրաւ անոր, եւ անմիջապէս անոր գրեթէ դիկտատորական իշխանութիւններ տուաւ զորս պահեց պաշարման ամբողջ տեւողութեանը, եւ Բրոթօստրատորի ամենաբարձր աստիճանին բարձրացուց ու ալ աւելի կապելու համար զայն իրեն, ոսկեհրովարտակով մը (chrysobulle) ամենագեղեցիկ վարձատրութիւններ խոստացաւ եթէ կարենար ստիպել Թուրքերը որ հեռանան: Ամէն բանէ առաջ Լէմնոս կղզիին կառավարչութիւնը շնորհեց անոր:

Ճիուսթինիանի իր հետ կը բերէր առնուազն չորս հարիւր պատուական սպառազէն զինուորներ, զորս իր ծախքով զինուորագրած էր Ճենովայի մէջ եւ որոնք ինչպէս պիտի տեսնենք, ինքնապաշտպանութեան ամէնէն

թանկագին գործիքը եղան. ուրիշներ ալ քերաւ զորս ճամբան, Հռոդոս եւ Քիոս, զինուորագրած էր, ամբողջը նաւաստիներով միայն եօթը հարիւր հոգի: Ըստ Դուկասի. այս հիանալի օգնականները սքանչելապէս ալ զինուած էին, իրենց մարտական համբաւին բոլորովին արժանի կերպով:

Նորեկը, սպարապետ անուանուածին պէս անմիջապէս ձեռք առաւ ինքնապաշտպանութեան աշխատութեանց ուղղութիւնը զոր Կայսրը սկսած էր: Իր երկաթէ մանր թնդանօթները եւ նետից մեքենաները զետեղեց պարիսպին ամէնէն աւելի յարմար բոլոր կէտերուն վրայ. ուրկէ պիտի կրնային իրենց վիրգերը նետել, պատերուն ատամներուն մէջտեղէն, իբրեւ աշտարակներու գագաթէն: Անհուն շրջապատին ամբողջ երկայնքը իր խումբերը ազգերու կարգով բաժնեց եւ ամէն մէկուն նշանակեց իր պաշտպանելիք եւ կռուելիք տեղը: Մանաւանդ հոգ տարաւ ամէնէն ստիպողական նորոգումները կատարելու պարիսպին ամբողջ երկայնքը: Քաղաքը պաշտպանողները զէնք գործածելու մարզեց, որովհետեւ բոլոր այս պուրժուաները, արհեստաւորները, աբեղաները. (որոնք Յոյն ու Իտալացի արհեստով զինուորներու միացած, իրենց կեանքին ու իրենց հաւատքին համար գերագոյն պատերազմը պիտի մղէին), տարրական ծանօթութիւն իսկ չունէին պատերազմի բաներուն վրայ:

«26 փետրուարին, կ'ըսէ Պարպարօ, գիշերը, Բիէրօ Տավանցօ նաւապետը կրցաւ իր նաւովը փախչիլ Պոլսէն ու Վենետիկ ուղղուիլ:» Ինքնապաշտպանութեան գործին համար զգալի կորուստ մըն էր, որ միակը չմնաց արդէն: «Նոյն գիշերը, կը շարունակէ պատմիչը, ուրիշ վեց նաւեր ալ, Քանտիայէն եկած, ու ապրանքներով բեռնաւորուած, կրցան նոյնպէս գաղտագողի հեռանալ Ոսկեղջիւրէն եւ յաջողեցան փախչիլ հիւսիսէն փչող բուռն հովի մը շնորհիւ որ ժամը տասը մղոն ճամբայ առնել կու տար իրենց: Այս եօթը նաւերը, որ իրենց մեծ բաղդէն, կրցան այսպէս խուսափիլ վերահաս այնքան բազմաթիւ վտանգներէ, այն նաւերէն էին, որոնք ինչպէս պատմեցի, մերիններուն հետ միասին,



ԽԻՍՏ ՀԻՆ ՊԱՏԿԵՐ ՄԸ ՈՐ ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՆԷ ԲԵՐԱՅԻ ԲԼՈՒՐԻՆ ՎՐԱՅԷՆ ԹՐՔԱԿԱՆ ՆԱՒԱՏՈՐՄԻՆ ԱՆՑՔԸ

ինքնապաշտպանութեան համար վար դրուած էին Տաններկուքներու ժողովին գերագոյն վճիռով: Թուրքերու,—որոնց գալուստին կը սպասուէր արդէն օրէ օր,— սարսափն էր պատճառը այս նաւերու փախուստին, որոնց վրայ եօթը հարիւր հոգի յաջողեցան տեղ գտնել ու հեռանալ վտանգի մէջ եղող քաղաքէն: Բոլոր այս փախստական նաւերը Տարտանէլէն ալ կրցան անվտանգ անցնիլ եւ բոլորը միասին հասան Թէնէտոս, առանց Թուրքերէն նեղուելու: Հոն իրարմէ բաժնուեցան. վեցը՝ Քանտիա գացին, Բիէրօ Տավանցօինն ալ Վենետիկ, եւ ամէնքն ալ ողջ առողջ հասան իրենց տեղերը:»

Յետոյ Պարպարօ երկարօրէն կը պատմէ թէ ինչպէս մարտի վերջին օրերուն, մեծ փոսը դարձեալ բացին, որ, անհուն քաղաքին արեւելեան ծայրը, Հեպտոմոնի պալատին մարզին մէջ, ատենօք, Ոսկեղջիւրի ծայրէն սկսելով ցամաքային Պարիսպը կ'եզերէր, մինչեւ այն տեղ ուր հողը ալ կը դադրէր տափարակ ըլլալէ: «Ասիկա, կ'ըսէ մեր պատմիչը, այն միակ կէտն էր ուր «ցամաքային» կոչուող պարիսպը, ճշմարտապէս խիստ տկար էր, որովհետեւ հոս պարիսպը ոչ որմածակ ունէր, ոչ ալ առջեւը փոս, քանի որ ժամանակի ընթացքով հողերը լեցուցած էին զայն:» Ուրեմն ստիպողական պէտք կար դարման տանելու այս կենսական պակասին եւ փոսը նորէն փորելու էր, ինչպէս նաեւ պէտք էր ամրացնել նոյն իսկ Հեպտոմոնի պալատը: Թագաւորը խնդրեց Թանայէն եկող երեք ցռկանաւերուն հրամատար, տիար Ալոյզիօ Տիէտօէն, որ շնորհ ընէ իր ցռկանաւերուն ու իր նաւերու գերիներովը (chiourme) երթայ Ոսկեղջիւրի ծայրը, հոն ամրացնէ պալատը, եւ հոն ցամաքի պատին այս վերջին մասին առջեւ հարիւր ոտք երկայն եւ ութ ոտք խորունկ փոս մը փորէ: Տիէտօ պատասխանեց թէ ուրախութեամբ յանձն կ'առնէր այս աշխատութիւնը: «Նախ, ըսաւ Կայսեր, ի փառս Աստուծոյ եւ բոլոր քրիստոնէութեան, եւ յետոյ ձեր կայսրութեան սիրուն համար որ Թուրքէն գրաւուելու վտանգին մէջ կը գտնուի, եւ թէ որպէսզի ձեր տէրութիւնը ուժեղ ըլլայ: Ասոր համար, ա-

առաջիկայ երկուշաբթի առտուն խարիսխը պիտի վերցնենք եւ ցուկանաւերովս պիտի երթանք Քինէկիոնի(*) դուռը: Հոն ցամաք պիտի իջնենք եւ ամէնքս ալ քաջաբար պիտի փորենք իւրաքանչիւրնուս ինկած բաժինը:» «Եւ երբ եկաւ այս երկուշաբթին որ մարտի 14ն էր, նաւապետին խոստումին համաձայն եղաւ ամէն բան, եւ երբ ցուկանաւերը որոշեալ տեղը հասան, ամէնքն ալ, մէկ սիրտ մէկ հոգի, բահերով, բրիչներով, հողերը փոխադրելու սակառներով, ցամաք իջան. կայսրը եւ բոլոր պարոնները հոն ոտքի վրայ կեցած այս գեղեցիկ աշխատութիւնը կը դիտէին. եւ ամէն մէկ նաւու վարիչ՝ իր դրօշը ցամաք հանած էր իր մարդոցը համար իբր հաւաքման նշան, եւ այդ օրը փոսին ամենամեծ մասը փորուեցաւ, այնքան խղճմտօրէն աշխատեցան ամենքն ալ՝ նախ Աստուծոյ սիրոյն համար, յետոյ Թուրքէն զգացած վախերնուն, որպէսզի չկարենայ մինչեւ պարիսպին տակը մօտենալ: Երբ իրիկունը հասաւ, կայսրը ջերմ շնորհակալութիւն յայտնեց նաւապետին յանուն Վենետիկի կառավարութեան իր կատարած աղուոր աշխատութեան համար: Տիար Գաբրիէլ Թրէվիզան եւ իր երկու ցուկանաւերու մարդիկն ալ մինչեւ արեւամուտ աշխատեցան փոսը փորելու եւ պալատին պատերը ամրացնելու գործին:» Այսպէս մոգական արագութեամբ փորուած այս խորունկ փոսը, Հերակլիոսի պատին առջեւ, Քսիլոքորթայէն մինչեւ Անէմաս կոչուող աշտարակները կ'երթար:»

Աւագ շաբաթ օրը, 31 Մարտին, նոյն բարեկամեցողութեամբ լեցուն աշխատաւորները աւարտեցին փոսին մնացած մէկ փոքր մասն ալ: Մինչեւ վերջը Թագաւորը իր ներկայութեամբ քաջալերեց զանոնք: Արեւամուտէն ժամ մը առաջ աշխատութիւնը աւարտեցաւ: Ամենքն ալ նաւապետ, սպայ, նետաձիգ, պարզ նաւաստի, Թագաւորին ներկայութենէն ելեկտրականացած իրենց բաժինը բերին հաւաքաբար կատարուած այս գործին: Այս վայրկեանին արդէն, այնքան

---

(*). Ասիկա Նաւատանգիստի թաղն էր, այսօրուան Պալաթի եւ Այվանսէրայի թաղերը:

կը վախնային Թուրքերու յանկարծական մէկ յարձակումէն, որ Թագաւորին հրամանով մերձակայ բլրին վրայ դրուած պահապաններ, առանց դադարի, հորիզոնը եւ պարիսպին մերձակաները կը զննէին: «Աստուծոյ շնորհիւ, կ'ըսէ Պարպարօ, մարդ չեկաւ: Իրիկունը, դէպ ի հանգստեան ժամուն, փոսը բոլորովին աւարտեցաւ: Ալոյզիօ Տիէտօյի իտալական ցռկանաւերը, իրենց կորովի նաւաստիներով լեցուած, դարձան իրենց կեցած տեղը՝ Բերայի դիմացը:»

Այս վայրկենէն իսկ, ինչպէս ըսի, Ճիւսթինիանիի Իտալացի վարձկանները նշանակուած էին ի պաշտպանութիւն ցամաքային կոչուած պարիսպին ամէնէն կարեւոր կէտերուն: Ասկէ զատ այս կողմի գլխաւոր դուռներու պահպանութիւնն ալ այս ազգին գլխաւորներուն որոշ խնդրանքին վրայ, չորս Վենետիկցի պաշտօնակալներու յանձնուեցաւ՝ Քոնթարինի, Քօրնէր, Մօչէնիկօ, Տօլֆին: Ամէն մէկուն տրուեցաւ իր պահպանութեան յանձնուած դրանը բանալին, եւ անոնք լաւ պահեցին զանոնք: «Եւ Կայսրը, երախտագիտութեամբ զեղուն, ըսաւ Վենետիկցիներուն, թէ Պոլսոյ քաղդը աւելի իրենց ձեռքն էր քան թէ Յոյներուն եւ թէ իրեն համար խորունկ ուրախութիւն մըն էր դուռներու քաղդը իրենց յանձնելը:»

Այս առիթով, Պարպարօ, հպարտութեան գեղեցիկ շեշտով մը անունները կուտայ բոլոր իր այն հայրենակից Վենետիկցի ազնուականներուն, որոնք ներկայ գտնուեցան այս յիշատակելի պաշարման: «Իբրեւ յաւիտենական յիշատակ կուտամ այս ցուցակը, կ'ըսէ, եւ նաեւ որպէսզի գիտնան թէ որոնք են այս պատերազմին ներկայ գտնուող ազնուականները»: Հերոսներու այս ցանկը վաթսուն եւ ութ անուն կը կրէ մէջը ըլլալով Ճիրոլամօ Մինօթթօ Պայլը եւ իր երկու որդիները, Թանայէն եկող ցռկանաւերու նաւապետ Ալոյզիօ Տիէտօ եւ իր երկու որդիները, երկու ցռկանաւերու փոխ-նաւապետ Գաբրիէլ Թրէվիզան եւ իր որդին, եւ նոյն ինքն Պարպարօն, որդի տիար Մարքօյի: Այնպէս կ'երեւայ, թէ կռուին սկիզբին, կ'ըսէ Պ. Բիրս, Ճիւսթինիանի ձեռ-

վացին պարիսպին Քալիկարիայի դպչող մասին պաշտպանութիւնը ստանձնած էր:

«Այսպէս, պատմութեան մէջ առաջին անգամ ըլլալով, կ՚ըսէ Պ. Մորթման, Քաթալօնեան դաշտերուն մէջ, Աթիլայի խառնիճաղանճ խումբերուն դէմ մղուած արիւնալից կռիւներէն ի վեր, իրենց գոյութեան իսկ սպառնացող վտանգը բոլոր քաղաքակիրթ ուժերը կը մղէր օսմանեան վտանգին դէմ աններող կռիւի մը: Այս մտածումն էր որ միակ գիծով մը ջնջելով այնքան ատելութիւններ, ու այնքան երկպառակութիւններ, բոլոր դասակարգերը, ամէն կարգի, ամէն պայմանի վերաբերող անհատները՝ հաւաքական գործունէութեան մը կը մղէր: Յոյն ու Ճենովացի, Վենետիկցի, Քաթալան, կաթոլիկ, օրթոտոքս, միութենական (uniate), մոլեռանդ կղեր եւ ազատախոհ գրասէր, պուրժուա ու վարձկան, բիւզանդական արխոնդ ու իտալական քոնտոթիէրէ, ուս ուսի ամէնքը միասին կը կռուէին Ասիոյ զարհուրելի յաղթականներուն դէմ, Կ. Պոլսոյ պատնէշին, Եւրոպայի վերջին պաշտպանութեան կէտին վրայ, ամէնքն ալ պատրաստ մինչեւ յետին կաթիլը թափելու իրենց արիւնը, «Աստուծոյ փառքին եւ Քրիստոնէութեան հասարակական պատիւին համար:»

Ապրիլի երկրորդ օրն ալ յիշատակելի թուական մը եղաւ: «Այդ օրն էր որ, կ՚ըսէ Պարպարօ, մեծապայծառ կայսեր հրամանով, վենետիկցի Պարթօլօմէօ Սօլիկօ առաջին անգամ ըլլալով դրաւ այն համբաւաւոր Շղթան, որ, ամէն պատերազմի վտանգի պարագային, պաշտօն ունէր նաւահանգիստին մուտքը պահպանելու անոր մէկ ծայրէն միւսը», այսինքն Սուրբ Եւգինեայ աշտարակէն, արդի Հին Պալատին(Սարայ Պրունի) հրուանդանին մօտէն, մինչեւ Կալաթայի Խաչ կոչուող աշտարակը, քաղաքին պատերուն ներսօքը, գրէթէ Մօմհանէի հիմակուան հրուանդանին տեղը: Այս ահագին, հարիւրներով մէթր երկայն գործիքը, որ այնքան գիշերներ ու ցորեկներ, Թրքական արմատային դիմացը, իր ետեւը Ոսկեղջիւրի մէջ դիզուած յոյն են իտալական նաւերուն կատարեալ ապահովութիւն շնորհեց, կազմուած էր,

կ՚ըսէ Պարպարօ, փայտէ ահագին կլոր գնտակներէ, որոնք խոշոր կեռերով եւ ոչ նուազ խոշոր երկաթէ շղթաներով իրարու ագուցուած էին. երկու ծայրերը հսկայական երկու օղակ կար, որոնցմէ մին, ուժով մը Ղալաթիոյ պարիսպին հին մէկ աշտարակին կապուած էր, գրեթէ այն կէտին վրայ ուր այսօր Առողջապահական վարչութեան շէնքերը կը բարձրանան եւ միւսն ալ Պոլսոյ պարիսպին, Սուրբ Եւգինեայ դրանը բարձրութեամբ, հիմակուան Եալը-Քէօշկ ըսուած տեղը: Անմիջապէս ետեւը այս շղթային, որ Պոլսոյ ինքնապաշտպանութեան գործին մէջ այնքան կարեւոր դեր մը պիտի խաղար եւ որ գրեթէ ճիշդ ու ճիշդ այսօրուան Ղաաթիոյ կամուրջին գտնուած տեղը հաստատուած էր, ճշմարիտ փոքրիկ նաւատորմիղ մը զետեղեցին զայն պաշտպանելու համար. տասը մեծ նաւեր, որոնցմէ հինգը Ճենովական, երեքը քանտիական, մէկ հատ Անքօնայէն եւ մէկ հատն ալ կայսերական նաւատորմէն: Բոլորն ալ կարգով շարեցին ճիշդ շղթային երկայնքը, յետսակողմնին դէպի առաջ դարձուցած, եւ պէտք եղած պարագային անոնց օգնելու համար քանի մը հատ ալ երեք կարգ թիեր ունեցող երկար ցռկանաւեր յառկացուցին: Քանի մը տարի առաջ այս համբաւաւոր մեքենային մէկ կարեւոր մասը՝ սրբուհի Իռէնէի վանքին մէկ բակին մէջ, Պօրֆիրիոսի յիշատակարանին մօտ դրուած էր: Հաւանաբար այսօր ալ տակաւին հոն է:

## ԳԼՈՒԽ Բ.

*Մէհմէտ Բ.ի բանակը կը հաւաքուի Ադրիանուպոլսոյ մէջ.—Սուլթանին վիթխարի հրետանին. — Օրպանոյի հրէշային թնդանօթները.— Թրքական բանակը կը հասնի Պոլսոյ առջեւ. — Ինչպէս բաժնուեցաւ անիկա քաղաքին չորս կողմը.— Պոլսոյ մեծ պարիսպը եւ ուրիշ պաշտպանութիւնները.—Այս պաշարման մէջ հրետանիին ամենակարեւոր դերը:*

Մարտի վերջերը Սուլթանին անսահման պատրաստութիւնները գրեթէ աւարտած էին: Եւրոպայի եւ Ասիոյ բոլոր տրամադրելի գունդերը, հետեւակ թէ ձիաւոր, Ադրիանուպոլիս հաւաքուած էին: Ամէն մէկ զօրագունդի ժամանումին, զայն կը բաժնէին զանազան բանակներու մէջ, որոնցմէ ոմանք նիզակներով զինուած էին, ուրիշներ պարսատիկներով եւ որ մէկը՝ աղեղներով. ոմանք ալ վ՛րտազրահ հագած էին եւ այդ պատճառաւ զրահապատ զինուոր անունը կը տրուէր անոնց:

Գրեթէ անկարելի է քիչ շատ որոշ թիւ մը նշանակել սուլթան Մէհմէտի անհուն բանակին համար: Զանազան հեղինակներուն տուած թիւերը չափազանց կը տարբերին իրարմէ: Ամէնէն աւելի հաւատոյ արժանի վկայութիւններուն մէջէն էն առաջ պէտք է յիշատակել ամենավստահելի պատմագրին, վենետիկցի Պարպարօի տուած կարճ ու կըտրուկ թիւերը: Ըստ այս վերջնոյն, Պոլսոյ առջեւ հասած օրը, Մէհմէտ՝ հարիւր վաթսուն հազար մարդ ունէր հետը, որոնք Մարմարայի եզերքէն մինչեւ Ոսկեղջիւրի եզերքը բանակած էին: Թրքական ամբողջ բանակն էր անիկա, կանոնաւոր եւ անկանոն զինուորները միասին, մէկ կողմ թողլով նաւատորմին նաւաստիները եւ Միջին Դարու արեւելեան մեծ բանակներուն մէջ միշտ այնքան բազմաթիւ եղող ոչ-պատերազմիկները: Այդ թիւը ուրիշ ականատես վկայ մը, Թէդալտի ալ կը հաստատէ:

Այդ բանակին կանոնաւոր կոչուած մասը հաւանաբար այդ ժամանակուան ամբողջ Եւրոպայի լաւագոյն զինուորական ոյժը կը ներկայացնէր: Ամէնէն կարեւոր մասը, որ մանաւանդ Անատօլուէն ժողվուած զինուորներէ կը բաղկանար, Եէնիչէրիներու համբաւաւոր գունդն էր, որոնց պատմութիւնը այնքան ծանօթ է որ աւելորդ է անգամ մըն ալ հոս ընել. ասոնք միաժամանակ թէ զինուոր էին եւ թէ կրօնական միաբանութիւն, եւ աշխարհիս մէջ մինչեւ այն ատեն նմանը չեղող զինուորական կազմակերպութիւն մը կը ծնուցնէին, առանց նոյն իսկ բացառութիւն համարելու Տաճարականները կամ Հիւանդանոցի ասպետները: Իրենց անունը Թրքերէն լեզուով կը նշանակէր «նոր բանակ»: Առաջին անգամ Սուլթան Օրխանի օրով կազմուած էին ԺԴ. դարու առաջին կիսուն մէջ: Ճշմարիտ պետութիւն մըն էին պետութեան մէջ. իրենց գունդը ամէն բանէ վեր դասելու եւ իրար բռնելու ոգին կը տասնապատկէր ուժերնին. բանակն էր որ իրեն պատկանող ամէն մէկ անհատի մէկ հատիկ ընտանիքը կը կազմէր, եւ այդպէսով ալ իրենց տիրոջ՝ Սուլթանին անդիմադրելի ոյժ մը կուտար:

Պատմութեան այդ շրջանին, Արեւելքի ԺԵ. դարու այդ կատարեալ զինուորները, որոնք կանոնաւոր կերպով եւ մի միայն պարտուած քրիստոնեայ ազգերու տղոցմէն կը հաւաքուէին եւ զինուորական ամենախիստ կրթութեան մը ենթարկուած էին, իրենց զինուորական զարգացման գագաթնակէտին էին հասած. ժամանակակից վկայութիւններու ամէնէն մեծ մասին համեմատ՝ տասներկու հազար հոգի էին ասոնք: Ինչպէս պիտի տեսնանք արդէն՝ դժբաղդ քաղաքին վերջնական յարձակման մէջ ամենակարեւոր դեր մը պիտի ունենային ասոնք, ինչպէս արդէն մինչեւ այդ պահուն այդ ժամանակուան օսմանեան բանակին բոլոր մեծ յաղթանակներուն մէջ ունեցած էին: Անոնց շնորհիւ էին տարուած Վառնայի եւ Քոսովայի մեծ յաղթանակները Ժան Հիւնեատի դէմ: Ահա այսպէս, քրիստոնեա-

ներուն համար ամէնէն զարհուրելի վտանգը միմիայն քրիստոնեաներէ սերած բանակէ մը կուգար:

Գալով ձի մը իսկ ունենալու անկարող աղքատ եւ անկանոն զինուորներուն, որոնց պաշը-պօզուք անունը կը տրուէր, անոնց մէջ ալ քրիստոնեաները շատ էին՝ աւարի յոյսով հրապուրուած: Սարսափելի հակառակորդներ էին ատոնք, ո՛չ օրէնք ճանչցող, ոչ ալ սահման: Պէռթռանտօ տը լա Պռօքիէռ կ'ըսէ թէ՝ իբր զէնք ծուռ ու լայն սուր մը ունէին: Սովորաբար եղածին պէս, այս անգամ ալ Եւրոպայի ու Ասիայի այս անկանոն զինուորներէն մեծ թիւ մը Սուլթանին բանակին միացեր էին իրենց պէյերուն կամ մասնաւոր աւատապետներու առաջնորդութեամբ: Ամէն թուրք պէտք էր զինուորութիւն ընէր: Թրքական բանակը, ինչպէս շատ ճիշդ կերպով ըսած են արդէն, ազգին ներկայացուցչութիւնն իսկ էր:

Այդ բանակին խանդավառութիւնը աննզական էր: Այդ անթիւ, անհամար զինուորները վերջապէս սուրբ գործ մը պիտի տեսնէին, այնպիսի գործ մը, որու այնքան թրքական սերունդներ շատ մը դարերէ ի վեր երազած էին կիրքով: Մարգարէն Մուհամմէտ արդէն իսկ կը մտածէր այդ բանին: Չէ՞ մի որ ըսած էր թէ «լաւագոյն իշխանը ան պիտի ըլլար որ Պոլիսը պիտի գրաւէր եւ թէ իր բանակը լաւագոյնը պիտի ըլլար»: Արաբներուն եօթը պաշարումներէն ի վեր քանի քանի պաշարումներ տեսած էր այդ անուանի մայրաքաղաքը: Այդ եօթը պաշարումներէն երրորդը նշանաւոր էր դարձած, որովհետեւ հոն ներկայ էր գտնուած ծերունի Էյուպը, իր որ երիտասարդութեանը մարգարէին անձնական դրօշակիրը եւ գլխաւոր սիրելին էր եղած: Խորունկ ուրախութիւնով մըն էր որ ճշմարիտ հաւատացեալները կը մտածէին այն անհուն գոհունակութեան որու շնորհիւ դրախտը մատչելի պիտի ըլլար իրենց, իսկ անոնք որ միմիայն հաւատացեալներ չէին՝ կրկնապէս գոհ էին գրեթէ անսահման հրաշալի կողոպուտի մը հեռապատկերէն:

Քիչ շատ ճշգրիտ հաշիւ մը ունենալու համար պէտք է մտաբերել թէ պաշարման ամբողջ տեւողութեան միջոցին

անդադար նոր անկանոն զինուորներ կը հասնէին Թրքական բանակատեղին, մանաւանդ աւարի յոյսէն մղուած, քիչ մ'ալ Սուլթանին հաճելի ըլլալու նպատակով: Իսկ ոչ-պատերազմիկներուն թիւին վրայ պէտք էր աւելցնել նախ մօլլաներու, իմամներու, տէրվիշներու եւ ուրիշ շատ մը բարեպաշտ մարդոց անհուն բազմութիւն մը,որոնք դէպի բանակը վազած եկած էին ամէն միջոցներով զինուորներուն մոլեռանդութիւնը գրգռելու վառ փափաքով. կար նաեւ ամէն տեսակէ սպասաւորներու մեծ թիւ մը

Այդ 1453 տարուան մարտ ամիսէն իսկ՝ Սուլթանը, իր անհուն կայսրութեան ամէնէն հեռաւոր անկիւնները ամէն ուղղութեամբ, մունետիկներ եւ կրօնաւորներ ղրկեց բարեպաշտ իսլամներուն կռուող եռանդը գրգռելու համար: Վազեցին եկան ճշմարիտ գունդերով, ամէն գաւառներէ, մանաւանդ Ասիայէն: Հազարաւորներուն մէջէն անհաւասիկ ամէնէն նշանաւորներուն անունները, ըստ արեւելքցի քրոնիկագրի մը. Աք Շէմսէտտին, Գարա Շէմսէտտին, Մէն Սինանի, Էմիր Պօխարի, Մինէլ Ֆէնէրի, Ճէպ Ալի, Ինսար Տէտէ, Ծրզլը Տէտէ, Ակեան Տէտէ, Մէնալ Պուլաթ, Խօրօզ Տէտէ, Շէյխ Զընտանի, Գարաման Օկլուները եւ Այտընի Տէրէպէյի Պէվօկլուներուն զաւակը եօթը հազար կամաւորներու գլուխը անցած:

Եթէ պատճառ մը կայ որ անկարելի կը դարձնէ ճշգրտօրէն որոշել այս պատերազմիկներուն թիւը՝ սա է որ մինչեւ պաշարման վերջին օրերը պատերազմիկներու նոր խումբեր՝ տէրվիշներու, մօլլաներու, եւ ուրիշ մոլեռանդներու առաջնորդութեամբ անդադար կերպով հոսեցան դէպի Թրքական բանակը: Կարելի է սակայն հաւատալ թէ վայրկեան մը եկաւ ուր այդ կիսավայրենի պատերազմիկներուն թիւը չորս հարիւր հազարի աճարկու թիւին հասաւ:

Պատմական քննադատութիւնը որ մինչեւ օրս այդ թիւերը իբր չափազանցեալ նկատած էր՝ այսօր ծգտում մը ունի զանոնք իբր ճիշդ ընդունելու քանի որ հետզհետէ աւելի լաւ կ'ըմբռնենք այսօր թէ այդ հեռաւոր ժամանակներուն մէջ, այդ բարբարոս պատերազմներուն միջոցին, բա-

նակը մինչեւ ո՞ր աստիճան կազմուած էր ամբողջ ազգէն՝ բացի ծերերէ եւ տղաքներէ: Իսկ այդ անհուն բազմութեան ընկերացող կենդանիներուն թիւը, ծի. ուղտ, եզ, ոչխար, այծ եւ շուն, ութը հարիւր հազար հաշուուած է մօտաւորապէս: Իսկ կանոնաւոր բանակը, անգամ մըն ալ ըսենք, Ֆրանցէսի տուած թիւը ապահովաբար չէր անցներ, այսինքն երկու հարիւր վաթսունը հինգ հազարը:

Անթիւ անհամար կրօնափոխներ ալ կային այդ բանակին մէջ, որոնք Թուրքերու հպատակ բոլոր ազգերը կը ներկայացնէին: Արդէն խօսքը ըրի սերպ ծիաւորներուն, նմանապէս սերպ, ինչպէս նաեւ գերմանացի եւ հունգարացի հող փորողներու եւ հրետածիգներու: Քիոսցի Լէօնար կ'ըսէ թէ Յոյներ, Լատիններ, Գերմաններ, «Բանօնացի»ներ, Պոհեմիացիներ, բոլոր քրիստոնեայ ազգերէն ներկայացուցիչներ վազած եկած էին Մէհմէտ Բ.ի հաւատուրաց օգնութիւն մը մատուցանելու համար: Պ. Միքաթօվիչ հետաքրքրական էջ մը նուիրած է Ժօռժ Պռանքօվիչ դեսպոտին կողմէ ակամայ եւ բռնի սուլթանին ղրկուած սերպ զօրագունդին:

Մինչդեռ կայսրը եւ իր խորհրդականները իրենց խեղճ ու թշուառ միջոցներով հսկայ քաղաքին պաշտպանութիւնը կազմակերպելու կ'աշխատէին տենդագին, երիտասարդ Սուլթանը իր Ադրիանուպոլսոյ բանակին մէջ, հրաշալի գործունէութիւն մը կը ցուցնէր: Քունը բոլորովին փախած էր: Իր ամբողջ գիշերները աշխատութեամբ կ'անցնէր Բիւզանդիոնի յատակագիծը աչքէ անցընելով, եւ այդ քաղաքին պաշտպանութիւնը լաւ գիտցողներու հետ խօսակցելով: Իր արտասովոր պատրաստութիւններուն լուրը մինչեւ Պոլիս հասնելով՝ սարսափ կը տարածէր հոն: Մանաւանդ քրիստոնէութենէ իսլամացած մեքենագէտներու կողմէ շինուած ահարկու թնդանօթներուն լուրը տակնուվրայ կ'ընէր միտքերը մեծ մայրաքաղաքին մէջ: Արդէն ժամանակէ մը ի վեր թնդանօթի վառօդին գիւտը, մեծ կամ պզտիկ շատ մը հրազէններու շինութիւնը, միջնադարեան պատերազմին բոլոր հնադարեան պայմանները փոխել կը ձգտէին եւ անոր հնօրեայ սովորութիւնները յեղաշրջել: Արդէն իսկ Մէհմէտ Բ.ի

հայրը՝ սուլթան Մուրատ այդ ահարկու նոր զէնքերը գործածեր էր: Իր զաւկին վերապահուած էր սակայն, այդ հրաշալի գիւտերուն շնորհիւ, նոր դարագլուխ մը բանալ պատերազմական գործերուն մէջ:

1453 յունուար ամսուն առաջին շաբաթներուն, յունական մայրաքաղաքին մէջ զանազան աղբիւրներէ իմացան թէ Ադրիանուպոլսոյ մէջ նոր վիթխարի թնդանօթ մը թափեր էին. այդ աղբիւրներէն գլխաւորը՝ սատրազամ Խալիլ փաշան էր, որ քրիստոնեաներու համակիր էր, եւ Ջական փաշան ատելուն պատճառաւ, իր տէրը կը մատնէր: Դուկաս, ժամանակակից յոյն պատմագիրը, հետեւեալը կը գրէ այդ հսկայական մեքենային աւթիւ, որուն մեծութեամբ թնդանօթ մը՝ Թուրքերը տակաւին առաջին անգամ կ'ունենային. «1452ի աշնան ընթացքին, փախստական մը ներկայացաւ Սուլթանին եւ անոր թանկագին տեղեկութիւններ տուաւ Պոլսոյ ամրութիւններուն վիճակին վրայ: Այդ մարդուն անունը Օռպան, Օռպէն կամ Ուռպանի էր: Հունգարացի էր, թերեւս ալ Վալաք, եւ կ'ըսէին թէ, մինչեւ այն ատեն իրմէ աւելի վարպետ թնդանօթ թափող մը չէր եկած: Նախապէս իր ծառայութիւնները առաջարկեր էր Կոստանդիանոս կայսեր, անոր մայրաքաղաքին պաշտպանութեան համար, բայց այդ իշխանին պայմաններէն դժգոհ, դժգոհ մանաւանդ սա պատճառաւ որ, իրեն եղած վճարումին փոքրիկ մէկ մասը միայն իր ձեռքը կ'անցնէր, մինչ մնացեալը ծակաչք միջնորդներու գրպանը կը մտնէր, գաղտնապէս փախած էր Սուլթանին մօտ: Մէհմէտ Բ. զինքը ուրախութեամբ ընդունեց, շատ մը նուէրներ եւ պատուոյ հագուստներ տուաւ անոր, եւ խոշոր ամսական մը կապեց, որուն քառորդովը իսկ գոհ պիտի ըլլար ան Պոլսոյ մէջ: Սուլթանը ինքզինք երջանիկ կ'զգար, իր լայն ծրագիրները գործադրելու համար ասանկ թանկագին օժանդակ մը գտած ըլլալուն:

Իր տաղանդը փորձելու համար երկար խորհրդակցութիւններէ ետքը անոր հարցուց թէ կրնա՞ր արդեօք շինել այնքան լայն փողով թնդանօթ մը, որուն նմանը տեսնուած

չըլլար: Օռպան պարծենցաւ թէ կրնար անանկ թնդանօթներ շինել, որոնց նետած ահագին վիրգերը Պոլսոյ հնօրեայ պարիսպները փոշի պիտի դարձնէին, «նոյն իսկ եթէ Բաբելոնի պարիսպներուն չափ հաստատուն շինուած ըլլային»: Սակայն կը խոստովանէր թէ ռումբերուն նետուածքին կամ որքան հեռու երթալու մասին շատ բան չէր գիտեր: Բայց Սուլթանը ստանձնեց այդ մանրամասնութիւնները ինք անձամբ կարգադրել, պայմանաւ որ Օռպան այնքան փափաքուած թնդանօթը տար իրեն:

Ադրիանուպոլսոյ մէջ էր որ այս տռամաթիքական խօսակցութիւնները տեղի կ'ունենային, երիտասարդ Սուլթանին եւ հաւատուրաց մեքենագէտին միջեւ ի ներկայութեան բազմաթիւ մասնագէտներու, որոնց մէջ էին նաեւ Սարըճէ երկրաչափը եւ Մուսլահէտտին ճարտարապետը: Իր միակ մտածումով լեցուած, շարունակ երկրաչափներով շրջապատուած, Սուլթանը գիշեր ցորեկ կ'աշխատէր անոնցմէ զանոնք հիացնելով իր արագ եւ ճիշդ դատողութիւնովը: Իր իսկ ձեռքով գծուած յատակագիծի մը վրայ կը քննէր ու կը նշանակէր այն տեղերը, ուր յարձակումը յաջող ելք կրնար ունենալ, հրետանիները տեղաւորելիք էն լաւ վայրերը, խրամներ բանալիք ու գետնուղիներ փորելիք յարմարագոյն կէտերը: Ամէն օր երկար խորհրդակցութիւններ կ'ունենար իր ամէնէն աւելի մտերիմ երեք խորհրդականներուն հետ. անոնցմէ մէկը՝ իր Մեծ-Եպարքոսը՝ Խալիլ փաշան էր, որ միշտ հակառակ էր քրիստոնեաներու դէմ պատերազմին, երկրորդը՝ Թուրխան պէյը եւ վերջապէս Զականփաշան, որ հակառակ իր քրիստոնեայ ծագումին, կատաղի կողմնակից մըն էր պատերազմի, քրիստոնեաներու սոսկալի հակառակորդ եւ խանդավառ համակիր մըն էր Մէհմէտի, որ իր աղջկան հետ ամուսնացած էր: Սուլթանին միշտ արթուն ուշադրութենէն բան չէր փախեր. գաղտնի դեսպաններ կը ղրկէր Եւրոպա, վստահ ըլլալու համար որ քրիստոնեայ կառավարութիւնները, մանաւանդ Իտալիա եւ Հունգարիա, ո եւ է վտանգ չեն սպառնար իրեն:

Այս սարսափելի մահուան գործիքներուն մէջ, Օռպանի ահարկու գործիքն էր որ երկար տարիներ Արեւելքի եւ նոյն իսկ Եւրոպայի միակ հրաշալիքը մնաց եւ որուն շինութիւնը հրետանիի շարունակ աճող ուժին ու կարեւորութեան մէջ նոր դարագլուխ մը բացաւ:

Այս մեքենան, որ հաւանաբար պատմութեան մէջ յիշուածներուն էն խոշորն էր, «Արքայական» նշանակալից անունը տուին: Սոսկալի եւ ահագին ճիւաղ մը եղաւ, կ'ըսէ Դուկաս: Օռպան երեք ամսուան մէջ շինեց անոր կաղապարը ու անոր մէջ պղինձը թափեց: Ֆրանցէս պատմաբանը կ'ըսէ որ բուն մարմինը տասներկու «սբիթամ», այսինքն մօտաւորապէս ինը ոտք շրջապատ ունէր եւ հետեւաբար երեք ոտք տրամագիծ: Երբ առաջին անգամ զայն փորձեցին Ադրիանուպոլսոյ մէջ, Սուլթանին այդ տարին իսկ նոր շինուած պալատին առջեւ, այս վերջինը ժողովուրդին լուր տուաւ նախապէս թէ պայթումը սոսկալի պիտի ըլլար: «Այսպէսով յղի կիները վախցնելէ զգուշանալ կ'ուզէր» կ'ըսէ քրոնիկագիրը: Արդարեւ, ըստ Դուկասի վկայութեան, պայթումին ձայնը, շուրջանակի մինչեւ տասներեք մղոն տեղ իմացուեցաւ: Վիրգը, որ ըստ ոմանց հազար երկու հարիւր լիպրա կը կշռէր եւ ըստ այլոց՝ հազար հինգ հարիւր, գնաց մղոն մը հեռու հողին մէջ մխուեցաւ, վեց ոտք խորութեամբ: Տակաւին այսօր, Պոլսոյ զանազան թաղերուն մէջ, օրինակի համար մեծ պարիսպին փոսին մէջ, Հին Պալատին բակերուն եւ Նաւարանին մէջ այդ հրէշային վիրգերէն քանի մը հատ կը մնան: Պաշարումէն ի վեր չեն քանդուած ատոնք եւ գրեթէ ինկած ատեններուն իրենց դիրքը պահած են: Պ. Բիրս անոնցմէ երկու հատը չափած է եւ գտած է որ ճիշդ Միտիլլիի արքեպիսկոպոսին ըսածին պէս, ութսունըութը մատ շրջապատ ունին: Զանոնք շինելու համար կամ Սեւ Ծովու եզերքներէն եկող սեւ քար մը կը գործածէին, ու հաւանաբար կրանիթ էր եւ կամ գործիքներով կլորցած մարմարի զանգուածներ: Հօճա Էֆէնտի պատմագիրը երեսուն քէնթալ կշռող եւ Մէհմէտ Բ.ի համար թափուած թնդանօթներու խօսքը կ'ընէ:

Լէօնառ Քիոսցին, Միտիլլենի արք.ը, որ Կ. Պոլսոյ պաշարման դերակատարներէն մէկը եղաւ, կը պատմէ թէ Թրքական մեծ թնդանօթին պատնէշին վրայէն նետուած վէրգերէն մէկը չափելու հետաքրքրութիւնը ունեցած ըլլալով, հաստատեց որ ութսունըութը փթաչափ շրջագիծ ունէր: Ծանրութիւնը հազար երկու հարիւր լիպրա կը հաշուէր Մանտոռըլլէ, պաշարման տեղեկագիրի մը մէջ, կ'ըսէ թէ այդ ամէնէն մեծ ռմբաձիգը կը նետէր վէրգեր, որոնք տասն երկու թզաչափ եւ չորս մատ շրջագիծ ունէին ու կը կշռէին հազար ութ հարիւր լիպրա. հաւանաբար բոլոր այս հին պատմուածքները լեցուն են չափազանցութիւններով ու հակասութիւններով, բայց նորէն յայտնի է որ խնդրոյ առարկայ հրետանին ահարկու բան մըն էր եւ սոսկալի արդիւնքներ յառաջ կը բերէր, այն շրջանին համար բոլորովին նոր:

Այդ ահարկու թնդանօթը, յունուարի վերջերը մեկնելով Ա. Պոլսէն, երկու ամիս վերջը հասաւ Պոլսոյ առջեւ: Քարաճա պէյի հրամանին տակ գտնուող տասը հազար անկանոն զինուորներու գունդ մը զայն կը կանխէր: Երբեմն պատմիչներ կ'ըսեն թէ երեսուն զոյգ եզներ կը քաշէին այդ բեռը, ուրիշներ այդ թիւը յիսուն կամ վաթսուն զոյգի կը հանեն, ուրիշներ ալ մինչեւ հարիւր յիսուն զոյգի: Դիւրին է երեւակայել այդ սարսափելի եւ նոյն ատեն նկարչագեղ թափորը այդ անհուն եւ տխուր դաշտերուն մէջ: Երկու հարիւր հոգի այդ ճիւաղային մեքենային կ'ընկերանային, զայն երկու կողմէն բռնելու համար, որ վար չիյնայ, իսկ հող յարդարող երկու հարիւր գործաւորներ առջեւէն կ'երթային ճամբուն դժուարին կէտերը հարթելու համար: Յիսուն ատաղձագործներ ետեւէն կուգային, պէտք եղած ատեն նորոգութիւններ ընելու, կամուրջներ շինելու համար եւայլն: Ուրիշ աղբիւրներ այդ թիւը երկու հազարի կը հանեն: Այդ անհուն թափորը, մարտի վերջերը, ըստ Ֆրանցէսի ապրիլի 2ին Պոլսոյ պարիսպներէն հինգ մղոն հեռու հասաւ: Յայտնի է որ այդ տեսակ գործիքի մը անցքը երկար ատեն զարհուրանքի տպաւորութեան մը տակ ձգեց Թրա-

կիոյ դաշտին սարսափած բնակիչները, բայց սխալ է կարծել թէ ժողովրդական հէքեաթներու մէջ այնքան նշանաւոր Օրպանի այդ թնդանօթը միս մինակը կրցաւ քանդել Պոլսոյ պարիսպները, որոնց փլուզումին մէջ, Մէհմէտ Բ.ի բազմաթիւ եւ հուժկու հրետանիին ամբողջութիւնը իր դերը խաղաց:

Դարանեա պէյի ձիաւորները, Թրակիոյ ամբողջ դաշտը քանդեցին: Մասնաւորապէս պէտք է յիշատակել մայրաքաղաքին շատ մօտիկը, Սան Սթէֆանոյի դղեակը եւ աւանը, զոր յարձակմամբ գրաւեցին եւ աւերեցին, բնակիչներէն մեծ թիւ մըն ալ գլխատելով: Էբիպաթիօնի արդէն այնքան աւերեալ անունն ալ գրաւուեցաւ: Միմիայն Սէլէնվրիա քաղաքը ամէն յարձակման դիմադրեց: Ապրիլ 5ին էր որ Թրքական անհուն բանակին մեծագոյն մասը, ծովուն աւազին պէս բազմաթիւ, մեծ մայրաքաղաքին դրան առջեւը երեւցաւ: Պատմութեան ամէնէն նշանաւոր տեսարաններէն մէկն էր ասիկա: Երեւակայեցէք հետեւակ թէ ձիաւոր կիսավայրենի պատերազմիկներու այդ հրէշային զանգուածին նկարչագեղ խառնիճաղանճը, այդ հիանալի կանոնաւոր զօրագունդերը, անթիւ անհամար անկանոն խումբերը, մարդոց, բեռներու, կենդանիներու այդ ահարկու բանակը, որոնք փոշիի անհուն ամպեր կը յարուցանէին մայրաքաղաքին փոշոտ, միօրինակ, անջրդի եւ ամայի շրջակայքին մէջ: Մտքերնուդ առջեւ բերէք այդ ահարկու ժխորը, բիւրաւոր մարդիկներու այդ վիթխարի խժլտուքը, զէնքերու շառաչիւնը, հրէշ-թնդանօթներու խուլ թաւալումը, զինուորական երաժշտութեան հնչուն ձայները, թմբուկներու որոտումը, հազարաւոր կենդանիներու բառաչիւնը . . . :

Մէհմէտ Բ., որու կ'ընկերանար իր անձնական թիկնապահ խումբը (տասներկու հազար եէնիչէրի եւ քանի մը հազար սբահի) իր փառայեղ վրանը, իր բանակատեղին հաստատեց Լիկուսի հեղեղատին ձախ եզերքին վրայ, Մեծ պարիսպէն մէկուկէս մղոն հեռու, Մալթեբէի(*) բարձուն-

(*) Ո՛չ ափական եզերքի Մալթեփէն:

քին վրայ, հոն, ուր այսօր զինուորական հիւանդանոց մը կայ, Սուրբ-Ռոմէնի դրան ճիշդ դիմացը: Այդ համբաւաւոր դուռը, Մէհմէտ Բ.ի հրէշային ռմբաձիգներուն ի յիշատակ, Թուրքերուն կողմէ կոչուած է Թօփ-Գափուսը: Այդ ռազմագիտական կէտէն, զոր կ'ուզէր իր յարձակման կեդրոնը ընել, Սուլթանը միշտ աչքին տակ կրնար ունենալ Խառիսիոսի դրան եւ Ս. Ռօմէնի դրան միջեւ գտնուող պարիսպին ամբողջ մասը: Ճիշդ ու ճիշդ հոս էր որ երեսուն տարի առաջ Մէհմէտ Բ.ի հայրը՝ Սուլթան Մուրատ ինքն ալ եկեր իր վրանը զարկեր էր Պոլիսը զուր տեղը պաշարած ատեն :

Իբր ճշմարիտ միւսիւլման, Սուլթանը հոն հասնելուն, ցորեկուան ժամուն, էն առաջ գորգը փռել տուեր եւ ջերմեռանդօրէն դէպի Մէքքէ դարձնելով երեսը, ծնրաչոք կատարեր էր իր հանդիսաւոր աղօթքը. ամբողջ բանակը հետեւեր էր իրեն: Աղօթքը աւարտելուն պէս, ամբողջ բանակին մէջ մունետիկներ պոռացնել տուեր էր թէ՝ «քաղաքին պաշարումը հիմայ այլեւս սկսած է:» Իւլէմաներու պաշտօն տրուեցաւ ամէն մէկ զօրագունդի այցելել ճշմարիտ հաւատացեալները զգուել որ իրենց սրտովը երթան պատերազմի քանի որ Մարգարէն շատ որոշ կերպով հասկըցուցած էր թէ այդ անուանի եւ հիանալի քաղաքը իրենց ձեռքը պիտի իյնար վերջապէս:

Թրքական բանակին Անատոլուէն եկած մասը, որոնք մեծագոյն թիւը կը կազմէին, Մալթէփէի բլուրին աջ կողմը զարկին իրենց անհամար վրանները, իսկ Եւրոպայէն եկածները ձախակողմը: Ինչ զարհուրելի տեսարան մըն էր ասիկա խեղճ Պոլսեցիներուն համար, որոնք հաւանաբար այդ զինուած մարդկային ամբոխին սարսափելի աղմուկէն հետաքրքրուած՝ պարիսպներուն վրայ լեցուած էին: Խեղճ քաղքենիները, աչքերնին սարսափէ լայնցած, հետզհետէ ստուարանալը կը դիտէին այդ հրէշային բանակին, որ ծովուն աւազին պէս կը ծածկէր այդ անհուն տարածութիւնները, եւ որուն տեսքը կարծես իրենց մահուան դատակնիքն էր:

Ինչ սարսափ պատեց արդէօք այդ խեղճերուն հոգին, երբ դժբաղդ քաղաքին շուրջը, այդ խլացուցիչ եւ յանկարծական աղմուկին մէջ, երկաթի եւ պողպատէ այդ շղթանակին կազմութիւնը տեսան, որուն մէջէն այլ եւս ո եւ է փախստական չպիտի կրնար դուրս փախչիլ:

Նոյն ատեն, Սուլթանին անհուն նաւատորմը, պատմութեան մէջ երեւցող առաջին թրքական նաւատորմը, Կէլիպօլուէն եկած հասած էր, Պալթաօղլու ծովակալին հրամանին տակ: Այս մարդը, որ իրականօրէն Սիւլէյման Պէյս կը կոչուէր, Պուլկար հաւատուրաց մըն էր. Սուլթանը, համոզուած ըլլալով որ առանց այդ նաւատորմին երբեք չպիտի կրնար Պոլիսը գրաւել՝ այդ մարդը ամբողջ իր նաւատորմին ընդհ. հրամանատար անուանած եւ Կէլիպօլուի կառավարիչ ըրած էր :

«Այդ նաւերը, կ՚ըսէ Կրիտօպուլոս, երեք հարիւր յիսուն հատ էին,բացի փոխադրութեան նաւերէն եւ ոչ-պատերազմիկ նաւերէն: Մարմարայի ծովն ի վեր ելան չափազանց արագ գնացքով մը եւ ուրախութեան պոռչտուքներու ու դժոխային աղմուկի մը մէջ:

«Այդ անհուն նաւատորմը, կը շարունակէ, Հելլեսպոնտոսը անցած ըլլալով, սարսափ եւ ապշութիւն տարածեց իր անցնիլը տեսնողներուն մէջ, որովհետեւ, մարդկային միտքը չէր յիշեր երբեք ո՛չ մէկ տեղ այդ տեսակ նաւատորմ մը եւ այդ տեսակ ծովային համախմբում մը: Խեղճ Հռոմայեցիները(*), անոր համար մանաւա՛նդ աւելի սարսափեցան, որովհետեւ բնաւ չէին սպասեր ատանկ բանի մը: Իրենց յուսահատութիւնը այդ պատճառաւ աւելի եւս աւելցաւ եւ բոլոր յոյսերնին յօդս ցնդեցաւ: Որովհետեւ մինչեւ այդ օրը, նախորդ պաշարումներու պահուն, միայն ցամաքէն ինքզինքնին պաշտպանել պարտաւորուած էին, բայց հիմա որ պատերազմը ծովուն կողմէն ալ կուգար, ա՛լ սարսափնին չափ եւ սահման չունէր:

(*) Կրիթօպուլոս ընդհանրապէս այս ա՛նունը կուտայ Պոլսեց[illegible]

Թրքական նաւատորմը գնաց խարսխեց Վոսփորի մէջ, Երկու-Սիւներուն մօտ, «մինչեւ Ս. Կոստանդիանոս եկեղեցին» կ'ըսէ Ֆրանցէս:

Իսկ Պարպարօ կ'ըսէ. «Ապրիլի սկիզբները Պալթաօղլու իր նաւերուն քիթը ուղղած էր դէպի Վոսփորի մուտքը: Մեկնումը տեղի ունեցած էր թմբուկներուն եւ պատերազմական երաժշտութեան ձայներովը եւ նաւաստիներուն «կեցցէ»ներուն մէջ, որոնք ուրախ էին այդ երկար շրջանը վերջապէս աւարտած տեսնելով:

Մարմարայի ծովեզրին քրիստոնեայ ժողովուրդները, սոսկալի յուսահատութիւնով մը դիտեցին այս միւսիւլման վիթխարի արմատային անցնիլը, որու նմանը երբեք տեսնուած չէր այս կողմերը: Նոյնպէս Պոլսոյ բնակիչներուն ալ սիրտը, ի տես այս նաւերուն՝ սոսկումէ քարացաւ:

Թուրք նաւատորմը, ապրիլ 12ին միայն մտաւ Վոսփոր ու ինչպէս ըսի, անմիջապէս խարիսխ նետեց Երկու-Սիւներ կոչուած տեղը, հիմակուան Տօլմա-Պաղչէի պալատան ճիշդ վարի կողմը: Հոն գրեթէ անմիջապէս եկան իրեն միացան Սեւ ծովէն ու Մարմարայէն իջնող ուրիշ թուրք նաւեր ալ: Ֆրանցէս չորս հարիւր ութսուն կը հաշուէ այս նաւերուն թիւը, ինչ որ անհաւատալի է: Սեւ ծովէն եկողներուն մեծ մասը փայտով կամ վիրգերով բեռնաւորուած էին: Պարպարօ, որ ինչպէս տեսանք հարիւր քառասուն եւ հինգ կը համրէ այս նաւերու թիւը, ընդ որս կատարելապէս զինուած տասներկու խոշոր ցռկանաւեր ալ, կ'ըսէ թէ խարիսխ նետելու գործողութիւնը աւարտեցաւ իրիկուան ժամը եօթին: Ամէնէն աւելի կը խօսի երեք հարիւր թօնօնոց խոշոր փոխադրանաւի մը վրայ, որ Սինոպէն կուգար պատերազմական նիւթերով լեցուած՝ վիրգեր, շինութեան փայտեր եւ այլն եւ այլն:

Կայսերական պահակազօրքը, այսինքն Սուլթանին անձնապահ գունդը, շուրջ 15,000ի չափ ընտրեալ եէնիչէրի, որ կայսերական վրանին շուրջը բոլորուած էր, մասնաւորապէս յատկացուեցաւ պարիսպին ամէնէն կարեւոր մասին, այսինքն Սէն Ռոմէնի դուռնէն մինչեւ Ադրիանուպոլսոյ (Էտիր-

նօլթը, բայց ծիուսթինիանի որ ինքն ալ թնդանօթը պատրաստած էր, հարուած մը արձակեց թրքական թնդանօթին դէմ, այնքան ճշտութեամբ, որ անոր փառօղի սնտուկը պայթեցաւ: Այս բանը կատաղութեամբ լեցուց Մէհմէտը որ սկսաւ «եա՛ղմա, եա՛ղմա» պոռալ, ինչ որ կը նշանակէ «Յարձակեցէ՛ք, յարձակեցէ՛ք»: Բովանդակ բանակը կրկնեց այս գոչը եւ ծովէն ու ցամաքէն նետուեցաւ առաջ: Հակառակ կողմէն ալ, պաշարեալները ամենքն ալ, առանց բացառութեան, վազեցին պարիսպին վրայ. քաղաքին մէջ միայն պատրիարքը, արքեպիսկոպոսները եւ կղերը մնացին, որոնք սկսան աղօթել եկեղեցիներուն մէջ: Կայսրը առանց վայրկեան մը հանգիստ առնելու ու հեծկլտալով, ամբողջ քաղաքը պտտեցաւ, պաղատելով բոլոր հրամանատարներուն ու ժողովուրդին, որ առնացիօրէն դէմ դնեն, եւ չի թուլնան իրենց եռանդին ու իրենց յոյսերուն մէջ, ու միեւնոյն ժամանակ ամբողջ քաղաքին զանգակները զարնել հրամայեց: Երկու կողմէն ալ մեռելները փունջերու պէս պատերէն վար կը թափէին եւ արիւնը գետի պէս կը հոսէր: Թուրքերուն մեռելները կամուրջի ու սանդուղի տեղ կը ծառայէին իրենց :»

Կրիտոբուլոս ալ պատմելով այս առաջին յարձակումը, զոր ինք ապրիլ 19ին կը դնէ, կ՚ըսէ որ Սուլթանը միտքը դնելով թէ կրնար արդէն յարձակում մը փորձել, օգուտ քաղեց մթութենէն, ու պարիսպներէն վեր մագլցելու համար բազմաթիւ ջոկատներ ղրկեց, որոնք աղեղնաձիգներէ, զրահ հագած մարդոցմէ, նիզակներով զինուած զինուորներէ, եւ բոլոր իր հետեւակ պահակազօրքէն, այսինքն Եէնիչէրիներէ կը բաղկանային: Բոլոր ասոնք եռանդեամբ յարձակեցան փոսին վրայ, որ այս տեղ փլած աշտարակներու եւ պարիսպի բեկորներով երկու երրորդ մասով լեցուած էր: Պատերազմիկներու այս ամբոխը սարսափելի գոռում գոչումով անցաւ փոսէն ու յետին կատաղութեամբ

յարձակեցաւ արտաքին պատին վրայ, ամէն ճիգ թափելով որ կամ վրայէն անցնին կամ փլցնեն զայն։ Ամէնէն առաջ փորձեցին կրակի տալ այն դուռներն ու պատնէշները, զորս պաշարեալները գերաններով, փայտի կտորներով, որթի բարունակներով, աւա՜ղ, ամենքն ալ դիւրավառ նիւթեր, աճապարանօք բարձրացուցած էին թնդանօթին բացած խրամատին ետին։ Թուրքերը մեծ յոյս ունէին որ այս հըրդեհը մեծ խռովութիւն ու տագնապ պիտի ձգէր պաշարեալներուն մէջ. բայց իրենց յոյսը ի դերեւ ելաւ, որովհետեւ պաշտպանները, այս ըստ բաղդի շինուած պատին ետին դիզուած, քաջաբար դէմ դրին, խիզախօրէն մարելով բոցերը քանի կը բռնկէին։ Յարձակողները այն ատեն ուրիշ միջոցի մը դիմեցին։ Ծայրը կեռ անցուած երկար նիզակներու օգնութեամբ ճգնեցան վար ձգել հողով լեցուն այն տակառները զորս պաշարեալները պարիսպին վրայ շարած էին որպէսզի իբրեւ որմածակ ծառայեն իրենց ու պաշտպանեն իրենց ետեւէն կռուող պատերազմիկները։ Այս կերպով այս վերջինները բացը կը մնային, առանց ապաստանի, ու ենթակայ պաշարողներուն՝ աղեղնաձիգ, պարսաւոր կամ գեղարդաւոր, արձակած նետերուն եւ ուրիշ զէնքերուն։ Ուրիշ Թուրքեր ալ երկար սանդուղներ կը տնկէին պատերուն ու կը ջանային վեր մագլցիլ անոնցմէ, մինչ ռմբաձիգները վայրկեան մը չէին դադրեր քարերու սարսափելի տարափով մը ողողելէ քրիստոնեայ պատերազմիկները, ինչ որ ահագին վնաս կը պատճառէր անոնց։ Ժամը երեքին ամէն բան լռեցաւ. գիշերուան լռութիւնը յաջորդեց այս դժոխքին. ու երբ արշալոյսէն առաջ կայսրը կռիւին զանազան կէտերը այցելեց, տեսաւ որ շատ տեղեր պահնորդներն ու պատերազմիկները, յոգնութենէ ընկճուած, խոր քունի մէջ թաղուեր էին։

Ճիուսթինիանի եւ իր իտալացիները, որոնք բազմաթիւ Յոյներու հետ միասին խրամատը կը պաշտպանէին, ամենքն

ալ ցանցակերպ զրահ հագած էին, եւ ասոր համար է որ
ոեւէ վնաս չէին կրեր Թուրքերու արձակած անհամար նե-
տերէն եւ ուրիշ բաներէն: Մայրայեղ քաջութեամբ եւ յետին
կորովով մը կը կռուէին, ամէն բանի դարման կը գտնէին
ու այսպէս ի դերեւ կը հանէին պաշարող բանակին բոլոր
ճիգերը: Վերջապէս, չորս ժամ տեւող անդադրում կռիւէ,
եւ գերմարդկային ջանքերէ յետոյ այս քաջասիրտ հերոս-
ները իրենց ճիգերուն յաջողութեամբ պսակուիլը տեսան
գիշերուան ժամը վեցին ատեններր: Վերջնականապէս ետ
մղուեցան Թուրքերը, մեծ թիւով մեռեալ ու վիրաւոր ձգե-
լով պատերազմի տեղին վրայ: Պարպարօ երկու հարիւր կը
հաշուէ ասոնց թիւը, մինչ, կ'ըսէ, պաշարեալներու կողմէ
ոչ մէկը մեռաւ, նոյն իսկ չի վիրաւորուեցաւ:

Այս առաջին մասնակի յարձակումին մէջ տարած յա-
ջողութիւննին մեծ յոյս ու կորով ներշնչեց Յոյներուն ու
իրենց դաշնակից իտալացիներուն: Ամենքն ալ ամենամեծ
եռանդով սկսան նորոգել արտաքին պատին խրամատները:
Այս օրուընէ սկսեալ, կ'ըսէ Կրիտոբուլոս, ամէն օր նոր յար-
ձակումներ տեղի ունեցան երբեմն այս, երբեմն այն, բայց
ամենքն ալ պարիսպին տկար կէտերուն վրայ: Բայց ամէն
անգամուն ալ պաշարեալները իրենց քաջութեամբ կրցան
ետ մղել Թուրքերը:» Այս տեղական կռիւներու գլխաւոր
կեդրոնը միշտ Լիկոսի հովիտն էր, որ ինչպէս այնչափ ան-
գամներ ըսի, պաշտպանողական գիծին ամէնէն խոցելի
կէտն էր:

«Կայսրը պատրիարքին ու բոլոր կղերին հետ Այա-Սո-
ֆիա գնաց այս մեծ յաղթութեան համար շնորհակալու-
թիւն մատուցանելու Աստուծոյ: Թուրքերը իրենց մեռել-
ները վերցուցին ու այրեցին: Հետեւեալ օրը կայսրը քահա-
նաներուն ու սարկաւագներուն հրամայեց մեռելները ժող-
վել թաղել եւ վիրաւորեալներն ալ յանձնել բժիշկներուն
խնամքին: Սուլթանը ուզեր էր հոտելու վրայ եղող Թուրք

դիակները քաղաքին մէջ նետել, բայց յետոյ ետ կեցեր էր այդ գաղափարէն, նկատի առնելով որ քաղաքը այնչափ ընդարձակ էր որ այս գծուծ արարքը ոեւէ վնաս չպիտի պատճառէր անոր: (Սլավոնական ժամանակագրութիւն):

Կրիտոբուլոս այս օրերուն կը դնէ Պալթաօղլուի թուրք նաւատորմին առաջին յարձակումը՝ Շղթան կոտրել ու Ոսկեղջիւրէն ներս մտնելու փորձ մը ընելու համար: «Պալթաօղլու, կ'ըսէ, որ Բրինքիբօյէն Տիգլոքիօնիօնի իր խարսխատեղին դարձած էր. Սուլթանէն հրաման ընդունեց ինչ գինով ալ ըլլայ այս գործողութիւնը փորձելու: Իրաւ ալ թուրքերուն համար ամենամեծ կարեւորութիւն ունէր թէ ցամաքէն եւ թէ ծովէն բուռն յարձակում գործել քաղաքին վրայ: Սուլթանը, որ շատ լաւ գիտէր թէ պարիսպին Ոսկեղջիւրի երկայնքէն անցնող մասը ո՛ր աստիճան տկար եւ հոնկէ ներս մտնելը ո՛ր աստիճան դիւրին էր, լաւ համոզուած էր որ քաղաքին այնչափ քիչ թիւով պաշտպանները չպիտի կրնային դիմադրել այս կրկնակ ու բուռն յարձակումին:

Այս հրամանին վրայ, թուրք ծովակալը, իր խիստ բազմաթիւ պատերազմիկներով լեցուն 300-350 նաւերը պատերազմական կարգով շարեց, ու բոլոր առագաստները պարզած յառաջացաւ Շղթային ու անոր ետին դիզուած քրիստոնեայ նաւերուն դէմ: Թուրք նաւաստիները, մոլեռանդ նախանձով լեցուած, արդէն ապահով կը համարէին յաղթութիւնը եւ ինչպէս միշտ, մոլեգին աղաղակներ կ'արձակէին, Աստուծոյ օգնութիւնը կոչելով: «Թշնամի նաւերը, կ'ըսէ Կրիտոբուլոս, երբ նետերու հասողութեան չափ մօտեցան, դանդաղեցուցին իրենց գնացքը եւ իրենց կարգին հեռուն արձակող զէնքերու օգնութեան դիմեցին: Զարկին, զարնուեցան: Նետաձիգին նետեր ու թնդանօթներու վիրգերն էին: Յետոյ թուրք նաւատորմը կարելի եղածին չափ մօտը խոյացաւ Շղթային ետին մէկ գիծի վրայ շարուած յոյն նաւերուն:» Կարճ խօսքով, գիրկ գիրկի այն սոսկալի կռիւներէն մին եղաւ ասիկա, որոնք միջին դարու այս շրջանին նաւային միակ պատերազմները կը կացուցա-

նէին: «Ցանցակերպ զրահ հագած, կը շարունակէ ժամանակագիրը, Թուրք զինուորներու մէկ մասը, նաւերու կամրրջակներու վերեւէն, ձեռքերնին ջահեր բռնած, կը ջանային կրակ ձգել նաւահանգիստին մէջը գտնուող յոյն նաւերուն մէջ. ուրիշներ խարիսխներուն չուանները կտրել կը փորձէին. ու դեռ ուրիշներ երկաթ կեռերու եւ սանդուղներու օգնութեամբ նաւերուն կողերն ի վեր կը մագլցէին. ուրիշներ, տէգերու, գեղարդներու եւ երկար նիզակներու միջոցաւ կը սպաննէին քրիստոնեայ նաւաստիները: Ու ամենքն ալ կռիւին մէջ բուռն խանդ ու ծայրայեղ քաջութիւն կը ցուցնէին: Ու բոլոր այս ճիգին միակ նպատակն էր որ կարենային ետ մղել, այրել կամ ընկղմել քրիստոնեայ նաւերը նաւահանգիստին համբաւաւոր Շղթան վերջապէս կտրել յաջողելու համար:

«Գալով քրիստոնեայ կողմին, կ'ըսէ տակաւին պատմիչը, սկիզբէն արդէնայս յարձակման պատրաստուած նաւաստիները, որոնք՝ նաւահանգիստը պաշտպանող պարիսպին այս մասին գերագոյն պահպանութիւնը ստանձնած մեծ-դուքս Նօթարասի նախահոգութեամբ բոլոր պէտք եղածը առատօրէն ունէին, իրենց խոշոր նաւերու բարձունքէն կռուելու մեծ առաւելութիւնը կը վայելէին: Այս պատուական դիրքէն, քարերու, գեղարդներու, նիզակներու, տէգերու, ու ամէն տեսակ նետերու անդադրում տարափին տակ կը ճնշէին յարձակողները: Խելասարին մէջ կամ կայմերու ծայրը թառած կռուողները մանաւանդ մեծ նախճիրներ գործեցին հակառակորդներուն մէջ, մեծ թիւով սպաննելով կամ վիրաւորելով զանոնք: Նոյն իսկ, հաստ չուաններէն կրակը մարելու համար ջուրով լեցուն ամաններ կախած էին եւ նաեւ ահագին խոշոր քարեր, զորս վերէն կը ձգէին գրեթէ իրենց կողերուն փակած թշնամի նաւերուն վրայ, ահռելի վնաս պատճառելով անոնց:

Պատերազմիկներու եռանդը ծայրայեղ աստիճանի էր հասած. կարծես մրցումի ելած էին թէ երկուքէն ո՛ր կողմը պիտի տանէր յաղթանակը: Թուրքերը կ'ուզէին Ոսկեղջիւրի մուտքը խորտակել. քրիստոնեաները, յոյն ու իտալացի,

քաջաբար կը դիմադրէին: Վերջապէս, կարճ բայց նոյնչափ ալ բուռն կռիւէ մը յետոյ, քրիստոնեայ նաւերը իրենց դիւցազնական համառութեան շնորհիւ, ստիպեցին Սուլթանին նաւատորմը որ ետ քաշուի: Թուրք նաւերը, այս անգամուան համար Շղթան կոտրելու ամէն յոյս լքելով ետ գացին իրենց նախկին խարսխատեղին, քրիստոնեայ նաւազներուն նախատինքներուն, ծաղրերուն եւ յաղթութեան աղաղակներուն տարափէն հալածական:

«Սուլթանը, կը շարունակէ Կրիտոպուլոս, իր յարձակման անյաջողութիւնը տեսնելով, նորատեսակ մեքենայ մը հնարել ուզեց թշնամիին դիմադրութիւնը ջախջախելու համար: Կանչել տուաւ ռմբաձիգ շինողները եւ հարցուց թէ կարելի չէ՞ր թնդանօթներու հարուածներով ընկղմել նաւահանգիստին բերանը շարուած քրիստոնեայ նաւերը: Պատասխանեցին թէ անկարելի էր ատիկա Կալաթայի պարիսպներուն պատճառաւ, որոնք ամէն կողմէ արգելք կ'ըլլային այդ բանին»: հետաքրքրական պատասխան մը որ կը ցուցնէ թէ նոյն իսկ սանկ պահու մը, Սուլթանը, ո՛ր աստիճան չէր փափաքեր այս քաղաքին ճենովացի բնակիչներուն հետ աւրուելու: «Այն ատեն, կը շարունակէ մեր ժամանակագիրը, Մէհմէտ անոնց առաջարկեց տեսակ մը թընդանօթ շինել, բոլորովին նորանշան բան մը, այնպէս որ անոր ձեւը քիչ մը փոփոխելով, օդին մէջ մեծ բարձրութեամբ արձակուած վիրգը շիփ շիտակ պիտի իյնար թշնամի նաւին կամրջակին վրայ, ու ակնթարթի մը մէջ պիտի ընկղմէր զայն»: Ու անոնց բացատրեց թէ ինչպէս, եւ տեսակ մը նմանութիւններու վրայ հիմնուած ու հաշուուած ինչ մեծութեամբ շինելու էր այս գործիքը, որպէս զի կարենար ջախջախել թշնամի նաւերը:

«Երկրաչափները, որոնց այս կերպ խորհուրդ կը հարցուէր, ըսին թէ անկարելի բան մը չէր ատիկա, եւ անմիջապէս Սուլթանին իրենց հաղորդած նախագիծին համեմատ նոր թնդանօթ մը շինեցին: Յետոյ ուշադրութեամբ քննեցին թէ ո՛ր տեղ պէտք էր հաստատել զայն, եւ Կալաթայի հըրուանդանին քիչ մը վարօքը զետեղեցին, հոն ուր ծովեզերքը

*քիչ մը վեր կը բարձրանայ, ճիշտ քրիստոնեայ նաւատորմին գրաւած տեղին դիմացը : Հարկաւոր հաշիւները ընելէ յետոյ բերանը օդին տնկեցին եւ կրակ տուին :*

*«Ռումբը, մեծ բարձրութեամբ օդին մէջ ելլելէ յետոյ ինկաւ ծովը : Այն ատեն նշանառութիւնը ճշդեցին, եւ նոր ռումբ մը անհուն բարձրութեամբ օդին մէջ վեր ելլելէ յետոյ, ա՛յնքան ուժգնութեամբ ինկաւ քրիստոնեայ նաւերէն միոյն վրայ որ ակնթարթի մը մէջ ջախջախեց ու ընկղմեց զայն, սպաննելով ու խեղդելով բոլոր նաւաստիները, բացի մէկ քանիէն որոնք լողալով փախան ու ապաստանեցան դրացի նաւերուն մէջ :» Այս դէպքը պաշարեալներու սիրտը ահռելի անձկութեամբ մը համակեց : Բայց գրեթէ անմիջապէս, կ'աւելցնէ Կրիտոբուլոս, նաւերուն դիրքը քիչ մը փոփոխելով, յաջողեցան ռումբերուն նուազ ենթակայ տեղ մը դնել զանոնք:» Ա՛լ ո՛ եւ է նմանօրինակ աղէտ տեղի չունեցաւ, եւ այս կամ այն պատճառով, Սուլթանին յառակագիծերուն վրայ շինուած թնդանօթը չի կարողացաւ նոր վնաս պատճառել քրիստոնեայ նաւատորմին եւ ան շարունակեց պաշտպանել նաւահանգիստին մուտքը :*

# ԳԼՈՒԽ Դ.

Ապրիլ քսանի համբաւաւոր ծովային պատերազմը, Կոստանդնուպոլսոյ դիմացը, քանի մը քրիստոնեայ նաւերու եւ բովանդակ Թուրք նաւատորմին միջեւ.— Քրիստոնեաներու վերջ ի վերջոյ յաղթանակը տանիլը. — Սուլթանին կատաղութիւնը.— Թուրք ծովակալին շնորհազրկումը. — Ռմբակոծութեան շարունակումը.— Թուրք նաւատորմին մէկ մասին Բերայի բլուրին վրայէն Ոսկեղջիւր էջքը :

Գրեթէ այս պահուն էր, ապրիլի քսաներորդ օրը, ըստ Պարպարոյի կամ պաշարման տասներորդ օրը, ըստ Բիւսկիւլիսի, որ պատահեցաւ պաշարման ամէնէն հետաքըրքրական, ամէնէն թելադրական ու սրտառուչ դէպքերէն մին: Գրեթէ բոլոր պատմագիրները երկարօրէն կը պատմեն քրիստոնէից համար այնքան նպաստաւոր կերպով վերջացող այս նոր եղելութիւնը եւ անոնց գրութիւններուն մէջ կը զգաս թէ ի՜նչ խոր տպաւորութիւն ըրած է իրենց եւ մանաւանդ պաշարեալներուն վրայ այս այնքան սարսափելի որքան անհաւասար կռիւը: Պաշարման գրեթէ միակ երջանիկ դէպքը եղաւ այս, այն միակ դէպքը որ քիչ մը քաջութիւն եւ յոյս ներշնչեց Պոլսոյ պաշտպաններուն, այս կորուսեալ դատին վերջին հոգեւարքը յատկանշող աղէտներուն անհատնում ու անգութ շարքին մէջ:

«Արդ, ապրիլի քսաներորդ օրը, կ'ըսէ Պարպարօ, առտուան ժամը իննին, յանկարծ տեսանք որ բոլոր առագաստներնին պարզած ու հարաւի զով հովին առջեւ ինկած, երեք մեծ ու մէկ ալ ատոնցմէ պզտիկ նաւեր կը մօտենան, բեռնաւորուած պատերազմիկներով, զէնքերով ու ապրանքներով. ատոնք արեւմուտքի կողմէն կուգային, ու ինչպէս կ'ըսէին, Ճենովայէն, պաշարեալներուն օգնելու»:

Քանի մը բառեր անհրաժեշտ են հոս այս խիստ անըսպասելի գալուստը եւ պաշարեալներու միտքին վրայ այս երջանկայիշատակ նաւերուն թողած արտակարգ տպաւորութիւնը բացատրելու համար:

Նախ եւ առաջ սա յիշենք որ Կոստանդնուպոլսոյ մէջ ամէն մարդ, կայսրէն սկսելով մինչեւ յետինը իր հպատակներուն, շարունակ եւ յետին անձկութեամբ իտալական օգնական տորմիղի մը գալստեան կը սպասէին ամէն օր: Այս թշուառ Յոյները, հակառակ իրենց ատկէ զգացած սոսկումին ընդուներ էին Հռոմի հետ միութիւնը, եւ սա միակ մտածումով կը մխիթարուէին թէ պապը եւ արեւմուտքի վեհապետները, այս բանին ի վարձատրութիւն, զինուոր ու զէնքով լեցուն բազմաթիւ նաւեր պիտի ղրկէին իրենց օգնութեան: Այս պատճառաւ պոլսեցի ժողովուրդը, որ այնքան յուզմամբ կը դիտէր այս նաւերուն մօտենալը, նախ կարծեց թէ պապին կողմէ ղրկուած էին անոնք: Ամէն պարագայի մէջ, այս կարծիքէն չեղողները անգամ համաձայն էին անոնց թէ այս պատերազմիկներու գալուստը գերագոյն կարեւորութիւն ունէր պաշարեալ քաղաքին համար: Հետեւաբար, ոչինչ կրնայ գաղափար մը տալ այն խօլ ուրախութեան, այն անհուն յոյսին վրայ, որ յանկարծ քաղաքին պաշտպաններուն հոգին համակեց ի տես այս այնքան խիզախօրէն յառաջացող տորմիղիկին: Անհուն քաղաքին բոլոր այն բարձր կէտերը որոնցմէ կարելի էր Մարմարան

տեսնել, հազիւ մէկ քանի վայրկեանի մէջ շնչասպառ հանդիսատեսներու անհաւատալի ամբոխով մը լեցուեցաւ: Այս չորս նաւերու բերած օգնութիւնը չէր սակայն, որ բոլոր այս անձկալից ամբոխը զուարթ յափշտակութեամբ մը կը համակէր: Ճշմարտութիւնը այն էր որ, այնքան տառապանքներէ ա՛լ խելայեղած ժողովուրդը այս քանի մը նաւերուն մէջ վերջապէս հասած, վերջապէս շօշափելի նախակարապետները կը տեսնէր Արեւմուտքէն գալիք օգնութեան նաւերուն, այն անհուն տորմիղին որուն գալուստին, ամէնուն ալ երեւակայութիւնը, հրամանատարներէն սկսեալ մինչեւ յետին զինուորինը այնքան շաբաթներէ ի վեր հաստատ համոզմամբ կը սպասէր, այնքան ատենէ, եւ սակայն արեւմտեան ամենակարող օգնութեան յոյսով ընդունուած Միութեան ի վարձատրութիւն: «Հռոմի պապն է այս առաջին օգնութիւնը ղրկողը», կը գոչէր պոլսական ամբոխը խանդավառութեամբ, ու կ՚աւելցնէր՝ «ետեւէն դեռ շա՛տ ուրիշներ ալ պիտի գան»: Իրենց կողմէ, Թուրքերն ալ, ի տես այս քանի մը քրիստոնեայ նաւերուն, թեթեւ յուզում մը կը կրէին, որովհետեւ շօշափելի վկայութիւնը կը տեսնէին անոնց մէջ դուրսէն եկած օգնութեան մը, ուրկէ ամէնէն աւելի կը վախնային, որովհետեւ շատ մը կռիւներու առիթով, սորված էին վախնալ իտալական, ճենովական եւ մանաւանդ վենետիկեան պատերազմիկներու բազուկէն:

Այս նաւերուն այսքան նախախնամական կերպով գալուն պատճառներուն մասին համաձայն չեն պատմիչները, բայց ամէնէն հաւանականը Կրիտոբուլոսի տեղեկութիւնն է որ կ՚ըսէ թէ «Հռոմի մեծ կրօնապետը (այսինքն պապը)» ղրկեց այն նաւերը, պաշարեալներուն պաշար ու ամէն կերպ օգնութիւն հասցնելու համար:

Երկար ատեն, ամբողջ մարտի եւ ապրիլի մէկ մասին տեւողութեանը, այս երեք ճենովական նաւերը Քիոսի նա-

ւահանգիստէն չէին կրցած դուրս ելլել հիւսիսէն փչող հակառակ հովերուն պատճառով: Ապրիլ 15ին վերջապէս, հովը հարաւ դառնալով, օգուտ քաղէր էին այս նպաստաւոր առիթէն, ու յանդգնօրէն ճամբայ ելեր էին դէպ ի Տարտանէլ, առագաստնին պարզած նաւելով հիւսիսի ուղղութեամբ:

Ճամբան միասին առած էին նաեւ յունական կայսերական նաւատորմէն փոխադրանաւ մը, որ պաշարեալ քաղաքին համար ցորեն բեռցած Սիկիլիայէն կամ Մօրէայէն (ըստ տարբեր հեղինակներու) կուգար եւ որուն հրամանատարն էր Փլանթանելաս անունով հոյակապ նաւաստի մը: Հետեւեալ օրը, հովը աւելի զօրանալով, զիրենք Տարտանէլէն անցուցած ու մղած էր Մարմարա, ուրկէ յանդուգն նաւորդները միասին շարունակեցին ճամբանին: Այդ գիշերը, հարաւի զօրաւոր հովին առջեւ ինկած, հասան Կոստանդնուպոլսոյ մօտակայքը:

Ապրիլ 20, ժամը առտուան գրեթէ տասն էր, երբ Ճենովացի նաւաստիները հորիզոնին վրայ նշմարեցին Այա-Սօֆիայի գմբէթը: Արշալոյսը ծագելուն պէս, յանկարծ եւ միաժամանակ թէ պաշարեալ քաղաքին դէտերէն, թէ քաղաքին մերձականներուն հսկող թուրք արմատային նաւերէն նշմարուեցան: Ալ կրնաք երեւակայել այն անհուն յուզումը որ պաշարուածները համակեց: Քանի մը վայրկեանի մէջ, պահնորդներու կոչերու ձայնին, ուրախութեան աղաղակներով հազարաւոր ու բիւրաւոր հանդիսատեսներ ծածկեցին բոլոր այն պատերը, քարափները, բոլոր այն բարձր կէտերն ու շէնքերը, ուրկէ կարելի էր ծովը տեսնել, աչքովնին տեսնելու համար այս արտասովոր եղելութիւնը:

Ալ դիւրին է գուշակել այն անհուն խռովութիւնը որ կայծակի արագութեամբ ծաւալեցաւ պաշարեալ քաղաքին մէջ: Ցամաքային Մեծ-Պարիսպը պաշարող թրքական ան-

թիւ բանակին ամբողջ աջ թեւն ալ նշմարեց ճենովական նաւերը եւ կը պատմեն թէ Սուլթան Մէհմէտ անոնց զալուստը իմացածին պէս, իր գլխաւոր տեղակալներուն հետ միասին իր բանակատեղին Թուրք նաւատորմէն բաժնող խիստ երկար միջոցը քառատրոփ անցաւ եւ հրամայեց մեծ ծովակալ Պալթաօղլուին որ իր բոլոր նաւերով խոյանայ լատինական տորմղիկին վրայ ու գերի բռնէ կամ մանաւանդ ամէն գինով արգիլէ զայն որ Շղթայէն անցնի ու Ոսկեղջիւր մտնէ, իր բոլոր ջանքերուն նպատակատեղին։» «Եթէ չի յաջողիս, գոռաց Սուլթանը, ողջ մի՛ դառնար։»

«Սուլթանը, կ'ըսէ Կրիտոբուլոս, Պալթաօղլուի հրամայեց կարելի եղածին չափ շուտով յառաջանալ իր բոլոր նաւերով, զրահապատ ծովային զինուորները եւ նաւաստիները անմիջապէս նաւ առնելէ յետոյ։ Ասկէ զատ, աճապարանքով ամէն տեսակ զէնքեր՝ կլոր մանր, կամ դուռներու չափ խոշոր վահաններ, սաղաւարտներ, զրահներ, յետոյ մեծաքանակ նետ, գեղարդ, երկար նիզակ, կացին եւ ամէն տեսակ նաւ մագլցելու գործիքներ բերել տուաւ եւ նաւերուն մէջ շարեց։ Անոնց աւելցուց բազմաթիւ զրահապատ զինուորներ եւ աղեղնաձիգներ, նոյն իսկ իր անձնապահ գունդին ամէնէն քաջ, ամէնէն յամառ կռուող եւ ամէնէն լաւ զինուած զինուորները։»

Թուրք տորմիղը ամէն մեծութեամբ եւ ամէն տեսակէ եւ ժամանակին լաւագոյնները եղող հարիւր յիսուն նաւերէ կը բաղկանար։ Միասեռ ամբողջութիւն մը կը կազմէր, զոր աքանչելիօրէն կը վարէր իր հրամանատարը։ Ասոնց ամէն մէկը նաւաստիներու կատարեալ ամբողջութիւն մը ունէր։ Սրագագաթ սաղաւարտով ու ցանցակերպ զրահ հագած հազարաւոր աղեղնաձիգներ, նոյն իսկ նէնիճէրիներ, իր կամըրջակները կը ծածկէին։ Բազմաթիւ նաւեր ձեռքի թընդանօթներով (coulevrine) զինուած էին։ Ամէնքն ալ, գոնէ ամէնէն խոշորները, թշնամիէն արձակուած նետի ու գե-

*ղարդի տարափներուն անյաղթելի արգելք մը կը հանէին, այն է ամրօրէն զամուած խիտ մեծ վահաններու պատ մը որ կամրջակին ամբողջ շրջանը կ՚ընէր: Թուրերու եւ արձակուող զէնքերու ամէն տեսակները առատօրէն դիզուած էին իւրաքանչիւր նաւու վրայ: Ինչպէս կարելի էր որ ճենովական չորս նաւերը այսքան սարսափելի եւ թիւով այսքան արտակարգօրէն աւելի թշնամիէ մը խուսափէին:*

*Թրքական տորմիղը արդէն պատրաստուելու սկսեր էր: Թուրք նաւաստիները, իրենց թուական անհուն առաւելութիւնը նկատի առնելով, վստահ էին իրենց արագ յաղթանակին։ Քանի մը վայրկեանէն զինեցին բոլոր նաւերը: Այս միջոցին, սիրտը մահացու անձկութեամբ սեղմուած, եւ յուզումէն ու սոսկումէն լեզուն բռնուած, պոլսական ժողովուրդը, պատերուն բարձունքէն հանդիսատես կ՚ըլլար այս այնքան արտասովոր կերպով անհաւասար կռուին սկզբնաւորութեան:*

*Քրիստոնեայ նաւերը, զուարթօրէն, սաստիկ հովին առջեւ ինկած. արդէն անցեր էին Սարայ Պուրնիէն, որուն վրայ այն ատեն Սուրբ-Դեմետրի եկեղեցին կը բարձրանար: Ամենաքուռն թափով մը կը շարունակէին իրենց արշաւը դէպի Ոսկեղջիւրի նաւահանգիստը, որ փրկութիւնն էր իրենց, եւ ուղղակի քաղաքին վրայ կը նաւէին, կարծես անտեղեակ թրքական վիթխարի տորմիղին մօտենալէն: Ամէն կողմէ որոշակի կը տեսնուէին: Պոլսի ամբոխը՝ աշտարակներու եւ պատերու բարձունքէն կը դիտէր զանոնք, Աստուծոյ եւ ամենասուրբ Կոյսին պաղատելով: Թէ՛ Թուրքերը, թէ յուսահատ Յոյները, ամէնքը Գալթաօղլուի դիւրին յաջողութեան կը հաւատային, եւ Մէհմէտի ծովակալը՝ կարծես ոչ թէ պատերազմի, այլ ամենադիւրին յաղթանակի մըն է որ կը վազէր:*

*Թրքական նաւերը տօնի երթալու պէս կը յառաջանային: Անհամար նաւաստիները վայրենի ուրախութեան մը բանդագուշանքին մէջ, երկար ոռնումներ, զուարթութեան զարհուրելի ճիչեր կ՚արձակէին, մինչդեռ թմբուկները, պա-*

տերազմի ծզալթմբուկները ահագին ժխոր մը կ՚ընէին: Կրիտոպուլօսէն մինչեւ Լէոնարդ Արքեպ.ը եւ Ֆրանցէս՝ մամանորապէս կը նշանակեն Թուրքերուն չափազանց յաւակնոտ եւ աղմկալից վստահութիւնը՝ այդ պատուական որսը ձեռք ձգելու: Սակայն չորս նաւերը՝ հոսանքէն մղուելով քիչ մը աւելի դանդաղօրէն կը շարունակեն ճամբանին: Շիտ շիտակ դէպ ի յառաջ կ՚երթան, «ջանալով, կ՚ըսէ Դուկաս, Աքրոբոլի հրուանդանը (այսօրուան Սարայ-Պուրնուն) դառնալ եւ Ոսկեղջիւր մտնել»: Հարաւի հովը տակաւին զիրենք դէպի յառաջ մղելուն պատճառաւ, ծովեզերքէն կարելի եղածին չափ բաց կը մնան մինչեւ որ նպատակնուն հասնին: Պատերուն եւ տանիքներուն վրայ լեցուած բազմութիւնը անոնց յառաջացումը կը դիտէ աննկարագրելի անձկութեամբ մը լեցուած: Վերջապէս չորս նաւերը ճիշդ ու ճիշդ քաղաքին դիմացը կը հասնին: Հակառակ հովին կամաց կամաց ինքնայուն՝ այն ժամանակուան խոշոր առագաստները ջուրին վրայէն դիւրաւ կը սահեցնեն բարձր եզերքներով այդ նաւերը: Ճիշդ այդ վայրկեանին յանկարծ թրքական նաւատորմին դէմ կը գտնեն ինքզինքնին:

Պալթաօղլու, իր թուական ջախջախիչ առաւելութեան վրայ բացարձակապէս վստահ, համոզուած էր որ քանի մը վայրկեանէն պիտի լմցնէ թշնամիին գործը: «Երբ նետի մը հարուածին չափ մօտեցան իրարու՝ կ՚ըսէ Կրիտոպուլօս, կարծես կարճ դադար մը տեղի ունեցաւ: Յետոյ հեռուէն հեռու կռիւ մը. սկսաւ նետերու եւ բալիստրներու միջոցաւ արձակուած քարերով, նոյնիսկ վառող բամպակներ եւ քուրջեր կապուած նետեր կը նետէին առագաստներուն մէջ զանոնք բռնկցնելու համար. ցամաքէն հիանալի կերպով կ՚երեւար այդ կռիւը: Պալթաօղլու, հրամանատար-նաւուն ցռուկը կեցած՝ հրամայական կերպով նշաններ կ՚ընէր Իտալացիներուն որ առագաստները վար առնեն եւ անձնատուր ըլլան: Բայց անոնք քաջաբար կը խնդային իր աղաղակներուն վըրայ: Ամէնքն ալ՝ ոտից ցգլուխ զրահով պատուած՝ իրենց թշնամիներէն աւելի բարձրը գտնուելով իրենց փայտէ դըղ-

*նաւերուն մէջ՝ անձնային քաջութեամբ կը կռուէին: Իրենք-ալ Թուրքերը կը ծածկէին նետերու, նիզակներու, եւ անհազին քարերու տակ, որոնց ծանրութենէն թշնամիները կը ճզմուէին: Թէեւ հովը ինկած էր՝ բայց ծովը շատ ալեկոծ էր: Երկու կողմէն ալ բարկութենէ ոռնալներ, հայհոյութիւններ, յիշոցներ եւ ցաւի աղաղակներ կը լսուէին: Ամէն կողմ վիրաւորներ եւ մեռեալներ: Այդ առաջին կռուին մէջ շատ մը Թուրքեր մեռան կամ վիրաւորուեցան:*

*Քրիստոնեայ նաւերու բարձր դիրքը եւ նաւերուն փչող հովը առաւելութիւնք իրենց կուտային: Իրենց վրայ խոյացող թրքական առաջին գիծին նաւերը՝ կացութեան բոլոր անպատեհութիւնք կրեցին: Չէին յաջողեր անգամ մը քրիստոնեայ նաւերուն կառչելու, քանի որ տակաւին թեթեւ մը փչող հովը զանոնք կը մղէր եւ թշնամի նաւերու բազմութեան մէջէն անոնք կը բշէր, մինչ Իտալացի նաւազներն ալ մէկ կողմէ քարեր կը տեղացնէին թրքական նաւատորմին վրայ եւ միւս կողմէ իրենց բարձր դիրքին մէջ կեցած եւ կացիններով զինուած՝ յաղթականօրէն կը դիմադրէին իրենց մօտենալու ոեւէ փորձի:*

*Արդէն իսկ իտալական մեծ նաւերը մօտեցած էին քաղաքին: Բայց ճիշդ այդ վայրկեանին դէպք մը պատահեցաւ որ արդէն իսկ անհաւասար այդ կռիւը բոլորովին ի նպաստ Թուրքերուն դարձուց: Յանկարծ՝ հարաւէն տակաւին քիչ շատ փչող հովը ամբողջովին դադրեցաւ քանի մը վայրկեանի մէջ՝ մթնոլորտը բոլորովին հանդարտեցաւ, եւ քրիստոնեայ բարձր նաւերը յանկարծ կեցան, մինչ պարպուած առագաստները տխուր երեւոյթով մը կայմերէն վար կը կախուէին: Այդ պահուն՝ հիմակուան Սարայ-Պուռնուին առջեւն էին ճիշդ ու ճիշդ. այդ յանկարծական դադարը՝ կռուին առաւելութիւնը ամբողջովին Թուրքերուն կողմը անցուց: Ա՛լ կարելի է ըմբռնել ասոնց, Սուլթանին եւ Պալթաօղլուի ուրախութիւնը: Յանկարծ անշարժացած այդ չորս նաւերը ա՛լ ի՞նչ կրնային ընել զիրենք շրջապատող թրքական հարիւր յիսուն նաւերուն դէմ: «Թրքական նաւատորմին հրամանատարը, կ'ըսէ Պարպարօ, ա՛լ համոզուած էր որ իր հարիւր*

յիսուն նաւերը պատառի մը պէս պիտի կլլէին չորս քրիստոնեայ նաւերը. ինքն իսկ կատաղօրէն յարձակեցաւ անոնցմէ մէկուն վրայ եւ կառչեցաւ անոր յետսակողմին, մինչ բոլոր մնացորդ նաւերը, գէշ աղէկ կը նետուէին միացեալ երեք նաւերուն վրայ: Կատաղի գիրկընդմէջ կռիւ մը սկսաւ. Պալթաօղլու, ծայնափողը ձեռքը, իր նաւին ետեւօքը կեցած, անձամբ կը վարէր կռիւը»: «Թուրքերէն ոմանք, կ՚ըսէ Կրիտոպուլոս, վառած ջահեր ձեռքերնին, կը վազէին կրակի տալու թշնամի նաւերը, ուրիշներ՝ կացինի հարուածներով, կը ջանային նաւերուն կողերը բանալ, ուրիշներ ալ, երկար նիզակներով, կը ջանային վարէն վեր զարնել Իտալացի պատերազմիկները. վերջապէս, ուրիշներ՝ նետերու եւ քարերու տարափի մը տակ կը ջանային զանոնք սպաննել, կամ խարիսխներու շղթաներուն, չուաններուն կառչելով, կամրջակին վրայ ելլել: Ամէնքն ալ աննկարագրելի կատաղութեամբ մը կը կռուէին, բայց իրենց ջանքերուն արդիւնքը շատ միջակ էր: Իսկ քրիստոնեայ պատերազմիկները՝ ոտքերնէն մինչեւ գլուխնին զրահապատ, անհունապէս նպաստաւոր բարձր դիրքի մը մէջ, չխոնջած եռանդով մը ամէն յարձակում ետ կը մղէին: Ջուրով լեցուն ահագին ամաններ, կամրջակին վրայ նախապէս պատրաստուած քարի ահագին կոյտեր, յարձակողներուն վրայ կը թափէին շարունակ: Ջուրը թշնամիին կրակը կը մարէր, քարի զանգուածները թուրք զինուորները խումբերով կը ճզմէր կամ զանոնք ջուրը կը թափէր, ուր կը խեղդուէին: Նիզակներու, նետերու, գեղարդներու հարուածներով՝ Լատինները կը ծակէին վեր մագլցիլ փորձողները եւ անոնց ձեռքերը դանակներով կը կտրտէին: Ուրիշներ ալ երկաթածայր գաւազաններով կամ ծանր զէնքերով զինուած՝ յարձակողները թաղամած կ՚ընէին անոնց գանկը ճեղքելով: Վերջապէս յունական հուրը յարձակողներուն մերկ մարմինները կ՚այրէր: Պատերազմին եռուզեռը աննկարագրելի էր. ցաւի աղաղակները, մէկ կամ միւս կողմին կատաղութեան պոռչտուքները, հոգեւարքներուն յիշոցները, դժոխային աղ-

մուկ մը կը հանէին»: «Վերջապէս, կ՚ըսէ Պարպարօ, զարհուրելի սպանութիւն մըն էր»:

Ուզեցի այս գրութիւնները բառ առ բառ տալ հոս, գաղափար մը կազմելու համար Միջին Դարու ծովային պատերազմներուն սարսափելի գիրկընդխառն կռիւներուն վրայ: Հովը թէեւ դադրած էր բոլորովին, բայց ծովը սաստիկ էր: Հոսանքը պատերազմիկները կը քշէր կը տանէր դէպի Կալաթայի ափունքը եւ զանոնք կը մօտեցնէր պաշարուած քաղաքին: Հիմա Ոսկեղջիւրի առջեւն էին արդէն, պատնէշին կարելի եղածին չափ մօտը, մէկ կողմէ Սարայ-Պուրնուի եւ միւս կողմէ Թօփհանէի շրջակայքը տարածուող տափարակ ծովեզրին մէջտեղը: Կռիւին ո եւ է մէկ մանրամասնութիւնը չէր փախչէր պարիսպներուն երկայնքը ամէն կէտի վրայ խռնուած հազարաւոր հանդիսականներուն անձկալից հետաքրքրութենէն: Ֆրանցէս կը պատմէ թէ վայրկեան մը եղաւ ուր պատերազմիկները ծովեզերքէն բաժնող հեռաւորութիւնը ձեռքով նետուած քարի մը հեռաւորութեան չափ էր: Անձկութիւնը ամէնուն սիրտը կը սեղմէր այդ եղերական տեսարանին առջեւ: Այդ հազարաւոր պատերազմիկներուն անկարողութիւնը՝ օգնելու անոնց որոնք այնքա՜ն քաջութեամբ իրենց օգնելու եկած էին՝ իրականօրէն ահռելի բան մըն էր: Ոսկեղջիւրի բերանը փակող Շղթային ետեւը շարուած քրիստոնեայ նաւերուն նաւաստերը՝ կայմերուն վրայ ելած՝ անկարող հանդիսատես կ՚ըլլային այդ պատերազմին եւ չէին կրնար ճակատական նաւերուն օգնութեան վազել, որոնք թշնամիին անհամար թիւին տակ պիտի ճզմուէին: Իսկ Ղալաթիոյ ծովափին վրայ Սուլթանը, ձիու վրայ, իր աւագանիէն շրջապատուած՝ այդ արտակարգ կռիւին կը հետեւէր կրքոտ հետաքրքրութեամբ մը, հեռուէն քաջալերելով թուրք նաւազները եւ վայրկեանէ վայրկեան սպառնալով հերոսներու այդ փոքրիկ խումբին վերջնականօրէն ճզմուելուն:

Պատերազմը անորոշ կերպով եւ նոյն կատաղութեամբ տեւեց ամբողջ երկար ժամեր: Հանդիսատեսները դժուարաւ կը հետեւէին անթիւ միջադէպերուն, եւ պատերազմին

շարունակ փոփոխուող փուլերուն, եւ քրիստոնեայ չորս նաւերուն շարժումներուն որոնք հարիւր քառասունըհինգ Թրքական նաւերու դէմ կը կռուէին. այս վերջինները, իրենց ճնկայ թիւին իսկ պատճառաւ, շարունակ յաղթուելու վրայ էին :

Պալթաօղլուի նաւը յամառօրէն կառչած էր Ճենովական չորս նաւերուն ընդհ. հրամանատարին՝ Ֆլաքթանէլլասի նաւուն, մինչ միւս Թրքական նաւերը կատաղօրէն կը ջանային այդ սարսափելի աղմուկին եւ դժոխային խառնակութեան մէջ, մագլցիլ Ճենովական նաւերուն կողերն ի վեր: Իսկ տեղի չգոյութեան պատճառաւ հեռուն մնացած Թուրք նաւերէն՝ նետերու անձրեւ մը կը տեղար քրիստոնեայ պատերազմիկներուն վրայ: Երբ Թրքական նաւու մը նաւազները գրեթէ կը հասնէին սպաննուելով՝— ողջ մնացողները նաւը կը հեռացնէին կռիւին տեղէն եւ ուրիշ թարմ զինուորներով լեցուն նաւ մը կը վազէր անոր տեղը բռնելու: Իտալացիները առանց յոգնելու կարծես, հրաշալի եռանդով կը շարունակէին կռուիլ: Այդ տեսարանը ճշմարտապէս դժոխային տեսարան մըն էր: Պոլսոյ ժողովուրդը, զարհուրած՝ ներկայ կը գտնուէր այդ հրէշային կռիւին, որուն պատճառը իր կեանքն իսկ էր: Թրքական հրամանատար-նաւուն եւ Ճենովական հրամանատար-նաւուն միջեւ տեղի ունեցող կռիւը պատերազմին կեդրոնն էր իրականօրէն. այդ պատճառաւ իսկ Ճենովական նաւերը ջանացած էին իրենց հրամատարին նաւը պաշտպանել եւ այնպէս իրարու մօտեցեր էին որ կարծես իրարու փակեր, իրարու մէջ ձուլուեր էին, կ'ըսէ Փուսկուլոս:

Ամէնուն նայուածքը Ճենովական այդ հրամատար նաւուն էր ուղղուած. յամառ Պալթաօղլուն բռնած որսը չէր թողուր: Յունական քաջարի նաւուն կամրջակին վրայ ամէն կողմէ կը տեսնէին Ֆլաքթանէլլասը որ նաւուն քիթէն դէպի ետեւի կողմը կը ցատքէր, եւ իր զինուորները այնպէս աղաղակներով կը քաջալերէր որ կարծես նմանը չէր լսուած երբեք: Ինքն իսկ առիւծի մը պէս կը կռուէր, կ'ըսէ Ֆրանցէս, կացինը ձեռքը• Թուրքերուն յարձակումը այնքան սաս-

տիկ էր որ քանի քանի անգամներ քիչ մնաց որ քրիստոնեաները յաղթուէին, բայց ամէն անգամուն ալ պէտք եղած պահուն ճենովական նաւերը օգնութեան հասան անոնց, եւ վերջապէս, իրենց միութիւնը այլեւս չկորսնցնելու եւ աւելի զօրաւոր ըլլալու համար չուաններով իրարու կապեցին չորս նաւերը:

Երբ ժամուան կատաղի կռիւէ մը վերջը ճենովական հերոսութիւնը բնաւ տեղի չէր տուած եւ ճիշդ ու ճիշդ կռիւին սկզբնաւորութեան կացութիւնն էր որ կը տեւէր: Կռիւին ամէնէն սաստիկ պահերուն՝ ծովեզերքին վրայ խմբուած բազմութիւնը թեւերը երկինք կը վերցնէր եւ օգնութեան կը կանչէր Քրիստոսն ու Բանայիան. իսկ դիմացի կողմը, արդի Թօփհանէի ցած եզերքին վրայ Սուլթանին եւ հրամանատարներուն փայլուն խումբը կը շարժուէր ջղաձգօրէն: Անոնք կատարելապէս ապահով էին յաղթութեան վրայ եւ առաջուց կ'ուրախանային: Բայց կռիւը երկար կը տեւէր եւ անհունապէս գերազանց թրքական նաւատորմը ո եւ է առաւելութիւն չկրնալով շահիլ, ամէն մարդ յանկարծ ապշութեամբ տեսաւ որ սուլթան Մէհմէտ Բ. իր ձին քշեց թաց աւազներուն եւ ցած ջուրերուն մէջէն դէպի իր նաւերուն կողմը եւ այնքան յառաջացաւ որ իր լայն քաֆթանին փէշերը թրջեցան: Բարկութենէն գինովցած կարծես, կը ջանար պոռալով ուշադրութիւնը գրաւել Պալթաօղլուի եւ իր նաւաստիներուն, ուզելով ինքզինքը ճանչցնել անոնց: Ծովային կռիւներէն բնաւ տեղեկութիւն չունենալով՝ Սուլթանը տարօրինակ հրամաններ կուտար Պալթաօղլուին, զորս այս վերջինը չլսելու կը զարնէր, կ'ըսէ Դուկաս: Յետոյ յանկարծ տեսնելով որ իր հազարաւոր նաւազները, հարիւրաւոր նաւերը չեն կրնար գլուխ ելլել այդքան տկար թշնամիի մը հետ, սարսափելի բարկութիւն մը տիրեց իրեն: Զարհուրելի հայհոյութիւններ կը պոռար, Պալթաօղլուն եւ իր զինուորները վատ կը կոչէր: Զանոնք կիներու կը նմանցնէր, ակռաները կը կճրտացնէր եւ ամբողջ մարմինովը կը դողար»: «Յետոյ կ'ըսէ Կրիտոպուլոս, իր ուժասպառ ձին մտրակեց ու ետ դարձաւ ա՛լ բառ մը

չարտասանելով։ Փաշաներուն մեծ մասը ետեւէն կուգային, իրենք ալ հայհոյութիւններ ուղղելով իրենց կայսեր դէմ։ Ծովեզրը գտնուող Թրքական բանակին մասն ալ նմանապէս կը ճայճայէին Պալթաօղլուի եւ իր նաւազներուն որոնք այդ պարտութենէն կարծես խարազանուած աւելի կատաղօրէն կը կռուէին։

«Հակառակ այդ փաղըուն ինքնապաշտպանութեան կ'ըսէ Կրիտոպուլոս, յարձակողները իրենց վճռական առաւելութեան պատճառաւ՝ կարծես վերջապէս պիտի յաղթէին, կռիւը չափազանց անհաւասար էր. յայտնի էր որ ճենովացիները վերջապէս պիտի ընկճուէին։»

Իրենց տիրոջը ներկայութենէն եւ անարգանքներէն գրգռուած՝ Թրքական նաւերը վերջին յարձակում մը, գերագոյն փորձ մըն ալ ըրին. «անգամ մը եւս կ'ըսէ Ֆրանցէս, նաւերուն քիթը դարձուցին ճենովական նաւերուն վրայ եւ կատաղօրէն կռուեցան»։

Թէեւ այս բանը կարծես հէքեաթի մը կը նմանի աւելի քան թէ ճշմարտութեան, քրիստոնեայ չորս նաւերը ամէն յարձակում ետ մղեցին եւ այնքան մեծ ջարդ տուին իրենց հակառակորդներուն՝ որ շատ մը Թրքական նաւեր ստիպուեցան կռիւէ քաշուիլ։

Պատերազմին այդ երկրորդ մասը երկու ժամէն աւելի էր որ կը տեւէր։ Արեւը մարը մտնելու մօտ էր։ Չորս նաւերը՝ հով չըլլալուն պատճառաւ անշարժացած, նոյն տեղը կը մնային, եւ ճակատագրականօրէն պիտի յաղթուէին եթէ ճիշդ այդ վայրկեանին զրեթէ հրաշալի նոր դէպք մը չի գար անգամ մըն ալ կացութիւնը յեղաշրջել եւ պարտուելու մօտ եղող կողմին շնորհել յաղթանակը։ Այն պահուն ուր քրիստոնեաները, թշնամիին թիւէն յաղթուած՝ այլ եւս անձնատուր պիտի ըլլային, արեւը մարը մտած ատենը, յանկարծ հարաւային սաստիկ հով մը ելաւ եւ անշարժացած խոշոր նաւերուն առագաստները լեցուց։ Պոլսոյ բնակիչներուն խանդավառ ուրախութեան մէջ այդ առագաստները ուժով մը ուռեցան եւ ճենովական խոշոր նաւերը դարձեալ դէպի առաջ սուրացին իրենց ճամբուն վրայ ճըզ-

մեյով Թրքական ցուկանաւերը, ու իրենց ետին թողլով Թիով քաշուող այդ նաւերը որոնք հոսանքին դէմ չէին կրնար յա-ռաջութեան մասին մրցիլ միւսներուն հետ: Նոյն իսկ այդ վայրկեանին եթէ պէտքով Թրքական նաւատորմը քրիստոնէ-եայ նաւերուն առջեւ ըլլար եւ ճամբանին փակէր, կ'ըսէ Դուկաս, դարձեալ չպիտի կրնար անոնց յաղթական փախուստը արգիլել: Քանի մը վայրկեանի մէջ կռիւը դադրեցաւ՝ պա-տերազմիկները իրարմէ բաժնուած ըլլալով: Անակնկալ, յանկարծական դէպք մը եղաւ ասիկա, որ խելայեղ ուրա-խութեամբ մը լեցուց պաշարուած քաղաքին անթիւ անհա-մար հանդիսատեսները: Քանի մը վայրկեանի մէջ չորս ազա-տարար նաւերը յաղթական եւ վեհխառն աղմուկով մը ան-ցան Ոսկեղջիւրի բերնէն, իրենց գերագոյն ապաստանարա-նէն զիրենք բաժնող կարճ միջոցը. Թրքական պզտիկ նաւե-րուն բազմութիւնը ճեղքեցին վայրագօրէն, ամէն բան կոտ-րելով Թափելով իրենց ճամբուն վրայ, Թիակ, նաւակ եւն.: Հիմա ալ ամէն վտանգէ զերծ էին: Իտալական նաւերը ճշմարիտ հրաշքով մը ազատեր էին իրենց անհամար Թշնա-միներուն ձեռքէն: Թուրքերը յաղթուեր էին:

Սուլթանը տակաւին ծովեզերքն էր իր ձիուն վրայ, անձկութեամբ սպասելով յաղթանակին եւ ջանալով իրեն-ները ձայնովը ու շարժումներովը քաջալերել: Երբ յանկարծ տեսաւ որ ճենովական նաւերը, որոնք արդէն իսկ գերի բռնուած կ'երեւակայէր, տեղերնուն շարժեցան հարաւային հովին ազդեցութեան տակ, բարկութենէն ինքզինքէն ելած անգամ մըն ալ Պալթաօղլուին ջղալից հրամաններ պոռաց: Ա՛լ սակայն ժամանակը անցած էր: Երիտասարդ Սուլթանը ստիպուեցաւ վերջապէս ըմբռնել իրականութիւնը: Գիշերը վրայ կը հասնէր արդէն. աստղերը սկսեր էին փայլիլ. հովը միշտ աւելի սաստիկ կը փչէր: Կատաղութենէն տակնուվրայ եղած, տխրութենէն ընկճուած, բայց յանկարծ հանդարտա-ցած, կ'ըսէ Կրիտոպուլոս, այլեւս ամէն յոյս կորսնցուցած, Պալթաօղլուին հրամայեց որ նաւատորմը իր սովորական տեղը տանի, ու ինք ալ իր փրփրերախ ձին ուժգնօրէն




ՊՈԼՍՈՅ ՅԱՏԱԿԱԳԻԾԸ 1422ԻՆ, ԳԾՈՒԱԾ ՊՈՒՕՆՏԷԼՄՕՆԹԷԻ ԿՈՂՄԷ-
ԵՒ ՊԱՀՈՒԱԾ ՎԵՆԵՏԻԿԻ ՄԷՋ

մտրակելով՝ դառնացած լռութեան մը մէջ դէպի բանակատեղին սուրաց:

Պարպարօ կը պատմէ թէ ինչպէս երբ բոլորովին մթնցաւ, Տիար Թրէվիզազ եւ Զաքարիա Կռիօնիի հրամաններուն տակ քանի մը հատ ցռկանաւեր շղթային քով, բայց դուրսի կողմը գտնուող ճենովական խոշոր նաւերուն մօտ գացին կրցածնուն չափ ահագին աղմուկ հանելով եւ ահագին թիւով փողեր փչելով որպէս զի Թուրքերուն կարծեցնեն թէ ահագին թիւ մըն են, եւ զանոնք քաշելով առին Ոսկեղջիւրէն ներս տարին զանոնք: Դիւրին է հասկնալ Պոլսեցիներուն ուրախութիւնը. վայրկեան մը կարծեցին թէ այլ ազատած են թշնամիէն:

Պ. Բիոս կ'ըսէ թէ Թուրքերուն անյաջողութեան գլխաւոր պատճառներէն մին՝ իրենց թուական հսկայ առաւելութիւնն էր:

Ամէն տեսակէ մանր ու խոշոր նաւերը շարունակ իրարու կը զարնուէին եւ իրար կը նեղէին, իսկ թիերը իրարու զարնուելով կը կոտրուէին: Մինչդեռ իտալական նաւերէն մեկնող ո եւ է հարուած, ո եւ է նետ կարելի չէր որ այդ ահագին բազմութեան մէջ չերթար ո եւ է թշնամիի մը չզարնէր: Շատ մը Թուրք նաւազներ խեղդուեցան, ուրիշ տակ կոխկռտուեցան, ջուրը նետուեցան այդ շփոթութեան իսկ պատճառաւ. անկասկած է որ Թուրքերուն կորուստները շատ մեծ եղան, թէեւ յաղթականները քիչ մը շատ չափազանցուցած են այդ թիւը: Լէօնար կ'ըսէ որ լրտեսներուն բամբին նայելով տասը հազար մեռեալ կար, իսկ Ֆրանցէս իբր թէ Թուրքերուն իսկ վկայութեամբ տասներկու հազարի կը հասցնէ այդ թիւը. այդ թիւերը պարզապէս առասպելական են: Բայց յաղթողներն ալ զգալի կորուստներ ըրին. Կրիտոպուլոս կ'ըսէ թէ քաներկու Իտալացիներ մեռան եւ «կռուողներուն գրեթէ կէսն ալ» վիրաւորուեցան:

«Թուրք նաւատորմը, կը շարունակէ Պարպարօ, զգուշացաւ իր նաւարանը թողուլ հեռանալէ, որովհետեւ

անոնք ալ կը վախնային որ մի գուցէ յունական ամբողջ նաւատորմը իրենց վրայ յարձակի:

Յաջորդ օրը որ ապրիլի 21ն էր, Սուլթանը իր բանակէն ելաւ եւ տասը հազար ձիաւորներով Սկիւտարէն մօտեկաւ ուր իր նաւատորմը խարսխած էր, հասկնալու համար թէ ինչո՞ւ համար իր նաւատորմի հրամանատարը չէր կրցած իր անհուն նաւատորմիղով չորս հատիկ վենետիկեան նաւերը գերի բռնել: Հաւաստին պէս՝ Սուլթանը իր առջեւ բերել տուաւ Պալթաօղլուն եւ անոր պոռաց. «Թէ Մուհամմէտի հաւատքը եւ թէ զիս քու տէրդ ուրացող ըլլաս նայիմ ի՞նչ պատճառով իմ անհագին նաւատորմիղս չկրցաւ այդ չորս հատ քրիստոնեայ նաւերը գրաւել քանի որ անոնք օդին հանդարտութենէն անշարժացած, մեռածի պէս էին: Այդ չորս հատ նաւը երբ չկրցար բռնել, ինչպէ՞ս պիտի ընես ամբողջ քրիստոնեայ նաւատորմը գրաւելու համար»:

«Տէր, ըսաւ խեղճ ծովակալը, նայէ իմ աչքիս, զոր պատերազմին մէջ կորսնցուցի(*) եւ կը պաղատիմ, մի՛ բարկանար: Միմիայն իմ նաւուս վրայ հարիւր տասնըհինգ հոգի մեռած ինկան: Դուն ալ տեսար եւ քու հետդ ամէնքն ալ տեսան որ վայրկեան մը իսկ իմ ցուկանաւիս քիթը չզատնուեցաւ ծովակալ-նաւուն կողէն, որու մէջ մտած էր: Վայրկեան մը իսկ չդադրեցայ ամենամեծ եռանդով կռուելէ. իմ բոլոր միւս նաւերս ալ մեծ թիւով մեռեալներ ունեցան. նոյն իսկ քանի մը նաւերս ընկղմեցան. Կ'երդնում քեզի որ անկարելին ըրի. ուրեմն Տէր, կը պաղատիմ քեզի, ներէ ինծի եւ մի բարկանար ինծի դէմ»: Ծովակալին երկրորդներն ալ իրեն ի նպաստ վկայութիւն տուին, իր քաջութիւնը գովեցին, իր յամառութիւնը, եւ իր աչքին ծանր վէրքը ցուցուցին: Տակաւին խօսքերնին չէին աւարտած երբ

(*) Թուրք զինուոր մը կ'երեւի թէ անզգուշութեամբ ծանրօրէն վիրաւորեր էր խեղճ ծովակալին մէկ աչքը:

Սուլթանը, բարկացած, մոռնալով Պալթաօղլուի բոլոր մատուցած ծառայութիւնները, անոր պոռաց. «Մատնի՛չ, ես իմ ձեռքովս պիտի կտրեմ գլուխդ»:

Սակայն Պալթաօղլու իր մահացու սարսափին մէջ այնքան պերճախօս դարձաւ որ Սուլթանը քիչ մը վարանումէ ետքը կեանքը շնորհեց անոր: «Այսպէս, կ'ըսէ Պարպարօ, ազատեցաւ իր տիրոջը կատաղութենէն»: Միայն թէ Մէհմէտ Բ. զայն գետինը նետել տուաւ եւ իր ներկայութեանը գաւազանել տուաւ. յետոյ նաւատորմի հրամանատարութիւնը առաւ անոր ձեռքէն իր բոլոր տիտղոսներով եւ ուրիշ հրամանատարներով եւ անոր բոլոր ստացուածքը գրաւել տուաւ յօգուտ Եէնիչէրիներուն :

Կրիտոպուլոս կ'ըսէ թէ Սուլթանը գետինը պառկեցնել տուաւ Պալթաօղլուն եւ ինք իր ձեռքով իր ոսկեզօծ գաւազանովը ամէնուն աչքին տակ հարիւր հարուած տուաւ: Ուրիշներ կը պատմեն թէ Սուլթանը կ'ուզէր զայն ցիցի զարնել, բայց տեղի տուաւ իր շրջապատին աղաչանքներուն: Այն ատեն Շամուզա փաշա, Սուլթանին սիրականներէն մին, որու վրայ է՛ն շատ վստահութիւն ունէր, պարծենցաւ թէ առանց հարուած մը իսկ արձակելու քրիստոնեայ ամբողջ նաւատորմը գերի պիտի բռնէր եւ իրեն բերէր, պայմանաւ որ եթէ չկարենայ ընել այդ բանը՝ իր գլուխը կտրեն։ Սուլթանը գնահատեց այդ խօսքերը եւ անմիջապէս զայն իր բոլոր նաւատորմի հրամանատար ըրաւ:

Այդ անակնկալ յաղթութենէն ետքը Պոլսոյ բնակիչներուն մտքի վիճակին վրայ դժուար է գաղափար մը կազմել: Պոլսական ամբոխը հիմայ ա՛լ վստահ էր որ իտալական այդ նաւերը պարզապէս յառաջապահ մասն էին Արեւմտեան հսկայ նաւատորմին որ Յոյներու օգնութեան կուգար ի վարձ իրենց միութեան Հռովմայ եկեղեցւոյն հետ: Աւա՜ղ, պէտք եղաւ շուտով յուսախաբ ըլլալ, ո եւ է նոր նաւատորմ չերեւցաւ հորիզոնին վրայ :

Իտալացիներն ու Հունգարացիները, որոնք սակայն այնքան մեծ շահ ունէին Պոլսոյ ազատումին եւ Արեւելեան կայսրութեան տեւականութեան մէջ, չուզեցին կամ չկրցան

օգնութեան համնիլ խեղճ դժբախտ քաղաքին որ թերեւս ամենափոքր օգնութեան մը շնորհիւ իսկ կարենար ազատիլ վերջնական աղէտէն: Հիւնեատ, իր օգնութեան ի վարձ պահանջած էր կամ Սելեմպրիա կամ Մեզեմպրիա քաղաքներէն մէկը եւ նոյն իսկ կայսրը ստորագրած էր երկրորդ քաղաքին իրեն տրուելուն ոսկեհրովարտակը: Բայց անկէ ալ ո եւ է օգնութիւն չեկաւ, ո՛չ ալ Արակոնի հռչակաւոր թագաւորութենէն, որու իշխանը իր օգնութեան ի վարձ Լէմնոս կղզին ուզած էր: Արդէն բոլոր այդ բանակցութիւնները զուր եւ պարապ մնացին: Արեւմուտքի իշխաններուն կուրութիւնը խենթութեան մօտ բան մըն էր կ՚ըսէ իրաւամբ Բիրս: Քիչ ատենէն, իրենք ալ, իրենց ժողովուրդն ալ դառնօրէն պիտի զղջային Պոլսոյ քաղաքը, կայսրը ու ժողովուրդը լքելնուն:

Նոյն ապրիլ 20ի օրը որ այնքան նշանաւոր եղաւ այդ նաւամարտով, թրքական հրէշային թնդանօթները չդադրեցան որոտալէ պարիսպին ամբողջ երկայնքը: Նոյնպէս շարունակուեցաւ հետեւեալ օրը: Այդ օրը ռմբակոծումին ազդեցութեան տակ կործանեցաւ պարիսպին ամէնէն խոշոր աշտարակներէն մէկը, Պաքթաթինիոսի աշտարակը, Ս. Ռօմէնի դրան մօտ եւ անոր կից գտնուող պարիսպին մասը: Բացուած խրամը այնքան խոշոր էր, որ յարձակում մը այդ բացուածքին մէջէն շատ կարելի թուեցաւ: Այդ օրը Սուլթանը դարձեալ բացակայ էր եւ այլապէս կարեւոր ուրիշ գործողութեան մը կը հսկէր, բայց իր բացակայութիւնը արգելք չէր ռմբակոծման:

Ըստ Պարպարոյի, այդ օրը առաջին անգամ ըլլալով Պոլսոյ բնակչութիւնը սարսափելի վախի մէջ ինկաւ կարծելով որ ընդհանուր յարձակումը այդ օրն իսկ տեղի պիտի ունենայ: «Եթէ այդ օրը, կ՚ըսէ, Սուլթանը միմիայն տասը հազար զինուորներով պարիսպին առջեւ գար, կասկած կայ որ քաղաք պիտի մտնար եւ զայն գրաւէր, եւ այդպէս ամօթալի կերպով տուած պիտի ըլլայինք զայն»:

«Առաջին յարձակումէն 13 օր ետքը, կ'ըսէ Սլաւոն պատմագիրը, Թուրքերը իրենց թնդանօթները լարեցին, որոնցմէ երկուքը ահարկու մեծութիւն մը ունէին եւ տեղւոյն վրայ թափուած էին: Մէկուն վիրգերը մինչեւ մարդու ծունկը կ'ելլային, միւսինը մինչեւ գօտին: Ժան Ճիուսթինիանիի եւ իր խումբին գտնուած տեղւոյն դէմ այդ երկու թնդանօթներէն էն մեծը դրին, որովհետեւ հոն պարիսպը նուազ հաստատուն եւ շատ ցած էր: Առաջին հարուածին պարիսպը դղրդեցաւ. երկրորդին վերին մասը քանդուեցաւ 30 ոտք երկայնութեան մը վրայ, երրորդ հարուածը չքաշուեցաւ որովհետեւ մութը կոխեր էր: Գիշերը Ժան Ճիուսթինիանի պարիսպը ամրացուց, զայն ներսի կողմէն կրկնելով երկրորդ պարիսպով մը որ շինուած էր հողով լեցուած փայտերով»:

Հետեւեալ առտուն, Թուրքերը սկսան պատնէշին նոյն կէտը ռմբակոծել մեքենաներու եւ թնդանօթներու խումբով մը, եւ բաւական մը այդ ամրութիւններուն դէմ այդպէս գործելէ ետք՝ մեծ թնդանօթը լարեցին եւ վիրգեր նետեցին խրամ մը բանալու համար: Այս անգամ հրէշային վիրգը պատին վրայէն անցաւ պարիսպին հինգ ակռաները միայն քակելով եւ գնաց եկեղեցիի մը պատին զարնուեցաւ որ հազար կտոր եղաւ: Երեկուան մօտ, երկրորդ անգամ ըլլալով թնդանօթը դարձեալ լարեցին, բայց Ճիուսթինիանի որ ինք ալ իր թնդանօթը պատրաստած էր՝ թրքական թնդանօթը հարուածեց այնքան ճարտարօրէն որ, անիկա պայթեցաւ»: «Եթէ Սուլթանը այդ օրը յարձակումը չվերջացնէր, քաղաքը անպատճառ պիտի իյնար, կ'ըսէ նոյն պատմագիրը, ճիշդ Պարպարոյի ըսածին պէս, որովհետեւ պաշարեալները ամէնքն ալ ուժասպառ եղած էին: Գիշերը, Թուրքերը իրենց բանակատեղին դարձան, իսկ պաշարեալները գտնուած տեղերնին իսկ յոգնութենէ գետին կ'իյնային: Ամբողջ գիշերը վիրաւորեալներուն հեծեծիւնները լսուեցան:

Պարպարօ երկարօրէն կը պատմէ թէ ինչպէս պարիսպը բոլոր պէտք եղած տեղերուն վրայ, նորոգեցին քարերով եւ հողով լեցուն տակառներուն միջոցաւ: Յետոյ այդ պարիս-

ակին ետեւը խոր եւ լայն փոս մը փորեցին եւ այդ փոսէն ելած հողին մէջ որթի տունկերու ուռեր եւ ծառերու ճիւղեր խառնեցին եւ ջուրով շաղուեցին, որպէս զի բոլոր այդ թանձրուքը աւելի դիմացկուն ու միակտուր ըլլայ ու այսպէսով նոր պատ մը շինեցին որ ճշմարիտ պարիսպէն մը աւելի դիմացկուն էր, այնպէս որ այդ տեղը ալ Թուրքերուն յարձակումէն վախ չի կար։ Եւ սակայն Թուրքերուն յարձակումը երթալով աւելի սաստկացաւ այդ տեղը. գիշեր ցորեկ թնդանօթի, հրացանի, պարսատիկի եւ նետի հարուածներ կը տեղային պարիսպը նորոգել փորձողներուն վրայ։ Մանաւանդ Եէնիչէրիները՝ անհարկու ճիգեր կ՚ընէին խրամներէն ներս մտնելու։ Այդ օրը ուրիշ կռիւ տեղի չունեցաւ :

Հետեւեալ օրը կիրակի 22 ապրիլ, տեղի ունեցաւ Պոլսոյ այս արտակարգ պաշարման ամէնէն տարօրինակ դէպքերէն մին, այն որ ամիս մը ետքը տեղի ունենալիք Պոլսոյ անկման մէջ ամէնամեծ դերը պիտի ունենար։ Քանի օրերէ ի վեր Սուլթան Մէհմէտ Բ. խորհրդաւոր ժողովներու մէջ եւ ամէնամեծ գաղտնիքով կը պատրաստէր այս անուանի եւ տարօրինակ գործողութիւնը որմով ծրագրած էր ցամաքէն՝ Բերայի բարձր բլուրներուն վրայէն, Վոսփորէն Ոսկեղջիւր անցնել իր նաւատորմը։ Ապրիլ 20ի նաւամարտին մէջ կրած պարտութենէն զգացած զայրոյթը հաւանաբար նպաստեց իր ծրագրին գործադրութիւնը փութացնելու։

Այս հատորին բոլոր ընթերցողները գիտեն Կ. Պոլսոյ անիքան մասնայատուկ տեղագրութիւնը, որ ծանօթ է շատ մը յատակագիծերով եւ պատկերներով։ Մեծ քաղաքը իր եռանկիւնաձեւ անհուն պարիսպով շրջապատուած եւ մէկ կողմն ալ Մարմարայի ծովէն թրջուած ըլլալով՝ միւս կողմէն Գալաթայէն, Բերայէն, եւ Քասըմ Փաշայէն կը բաժնուի Ոսկեղջիւրի հրաշալի նաւահանգիստով որ քանի մը քիլոմէթր երկարութիւն ունի։ Մինչեւ այդ ատեն Պոլսոյ պաշտպան զօրքը պարիսպին երկու մասերը միայն պէտք էր պաշտպանէր, նախ Մարմարայի վրայ գտնուող մասը, երկրորդ Մարմարայէն մինչեւ Ոսկեղջիւրի հիւսիսային ծայրը երկա-



ՊՈԼՍՈՅ ՄԵԾ ՊԱՐԻՍՊԸ ՏԵՍՆՈՒԱԾ ԵԷՏԻ ԳՈՒԼԷԻ ԿՈՂՄԷՆ

րող մասը. իսկ երրորդ մասը, այն որ Ոսկեղջիւրի երկայնքը կը քերէ, եւ որու վրայ յարձակելով Խաչակիրները 1204ին քաղաքը գրաւած էին՝ հիմակուհիմա բոլորովին ապահով էր, քանի որ Ոսկեղջիւրի մուտքին առջեւ քաշուած հսկայ շղթան կ'արգիլէր Թրքական նաւերուն այդ ծոցը մտնալը: Դիմացի կողմը, Ոսկեղջիւրի հանդիպակաց եզերքը, Կալաթայի Ճենովական քաղաքին հուժկու պարիսպներուն ետին, այսօրուան Գասըմ-Փաշայի եւ Թաքսիմի բազմամարդ բլուրներուն վրայ կը գտնուէր Զականփաշայի հրամանատարութեան տակ գտնուող Թրքական բանակը: Այս բազմաթիւ բանակը Ոսկեղջիւրէն մինչեւ Վոսփոր տարածուող բոլոր այդ տարածութիւնը գրաւած էր՝ բացի Կալաթայի Ճենովական պարիսպներուն մէջ գտնուող պզտիկ մասէն: Մէկ կողմէ յարաբերութեան մէջ էր Վոսփորի վրայ Ռումէլի Հիսարի բերդին հետ որ Սուլթանին գործողութեան առաջին խարիսխն էր, միւս կողմէ ալ արդի Քեաղըտ-Հանէի վրայ շինուած կամուրջի մը շնորհիւ՝ մեծ պարիսպին առջեւ գտնուող բանակին ծախակողմին հետ. բայց անտով հանդերձ՝ այդ յարաբերութիւնները միշտ վտանգալից եւ դժուար էին: Անգամ մը որ Սուլթանին նաւատորմը կարենար ո եւ է միջոցաւ, հակառակ շղթային արգելքին, Ոսկեղջիւր մտնալ՝ եզականօրէն նպաստաւորած պիտի ըլլար յարձակման գործին. Նախ յունական նաւատորմը որ շղթային ետին ապաստանած էր՝ վտանգի մէջ պիտի ըլլար, յետոյ պիտի կարենար յարձակիլ նաեւ Ոսկեղջիւրի եզերքը երկարող պարիսպին վրայ եւ վերջապէս իր բանակին Բերայի եւ Պոլսոյ երկու բաժանումներուն միջեւ դիւրին յարաբերութիւն մը հաստատած պիտի ըլլար: Բայց Կալաթայի կողմը գտնուող Ճենովական քաղաքին պարիսպները որոնք կ'երթային կը յանգէին տակաւին կանգուն եղող Կալաթայի աշտարակին՝ արգելք կ'ըլլային Սուլթանին այդ կողմէն անցքին. ուստի եւ այդ կողմէն ճամբան գոցուած ըլլալուն Սուլթանը որոշեց իր նաւատորմը Ճենովական պզտիկ քաղաքին շուրջը պտըտցնել ցամաքէն՝ եւ Վոսփորէն Ոսկեղջիւր փոխադրել: Առջի բերան այս բանը հէքեաթ մը կը թուի կարծես,

եւ այնքան անհաւատալի կ'երեւի. այդ ծրագիրը իրագործելու համար պէտք էր Բերայի Թերակղզիին չոր ու քարոտ բլուրներն ի վեր քաշել հանել նաւերը եւ յետոյ զանոնք իջեցնել միւս կողմի զառիվայրէն վար եւ Ոսկեղջիւր մտցնել, այնպէս որ քրիստոնեայ նաւատորմը որ Շղթային ետին հաւաքուած էր՝ կարելի ըլլար կռնակէն զարնել: Դիւրին է հասկնալ թէ այդ տեսակ գործողութիւն մը ի՛նչ զարհուրելի հարուած մը պիտի ըլլար պաշարուածներուն համար:

Սուլթանին բոլոր ծրագիրներուն պէս՝ այս ալ չափազանց արագօրէն գործադրուեցաւ։ Մեր հիացումը իրաւամբ չի պակսելով հանդերձ այս արտակարգ գործողութեան, պէտք չէ սակայն միտքէ հանենք թէ թրքական նաւերը շատ խոշոր չէին: Այս արտասովոր ցամաքային ճամբորդութիւնը կատարող նաւերը տակաւին քանի մը տարի առաջ Վոսփորի եւ Ոսկեղջիւրի մէջ գործածուող քսան զուգաթի շատ խոշոր «քայիք»ներէն շատ աւելի մեծ չէին: Սա ալ ըսենք որ Մէհմէտ Բ. իր անհուն բանակին մէջ ունէր բազմաթիւ կրօնամոլ եւ հուժկու աշխատաւորներու ահագին թիւ մը:

Սուլթանին ծրագրին իրագործումը գրեթէ կայծակի արագութեամբ կատարուած ըլլալ կը թուի: Արդարեւ պէտք էր աճապարել կանխելու համար ո եւ է հակառակ ձեռնարկ որ կրնար զայն վիժեցնել:

Գաղտնիքը այնքան կատարեալ կերպով պահուեցաւ որ ո՛չ պաշարուած մայրաքաղաքին բնակիչները եւ ո՛չ ալ Բերայի Ճենովացիները կասկած մը իսկ ունեցան այդ հսկայական ձեռնարկին վրայ:

Սուլթանին ծրագիրներուն յաջողութեան համար այս գործողութեան կարեւորութիւնը աւելորդ անգամ մըն ալ կրկնելու պէտք չի կայ. ըսինք արդէն թէ նախ պաշարուած քաղաքին պաշտպանութիւնը սարսափելի կերպով պիտի դժուարանար, քանի որ պիտի ստիպուէին քաղաքին երրորդ պարիսպն ալ պաշտպանել, երբ հազիւ հազ կը հանէին երկու պարիսպներուն պաշտպանութեան, երկրորդ՝ Սուլթանին երկու բանակները իրարու հետ դիւրին յարա-

քերութիւն պիտի ունենային, եւ վերջապէս ու մանաւանդէն կարեւորը, Սուլթանը պիտի կրնար իրական հսկողութիւն մը կատարել Ղալաթիոյ ճենովական փոքրիկ քաղաքին վրայ եւ զայն բոլորովին կղզիացնել, որովհետեւ Ճենովացիները թէեւ պաշտօնապէս պատերազմի վիճակի մէջ չէին գտնուեր Սուլթանին հետ՝ եւ սակայն իրենց գաղտուկ համակրութեամբը Յոյներուն յաջողութեան շարունակ կը նպաստէին եւ սարսափով կը մտածէին որ Թագուհի Քաղաքին ինկած օրը իրենց քաղաքին գործն ալ լմնցած էր ալ: Եթէ բացէ ի բաց համակրութիւն չէին յայտներ Յոյներուն՝ ամէնազօր թշնամիէն իրենց ունեցած վախերնուն էր: Կարճ խօսքով Սուլթանը մեծ շահ ունէր իր ձեռքին տակ ունենալով Կալաթայի Ճենովացիները, որոնց կասկածելի չէզոքութիւնը զինքը շատ կը նեղէր, եւ որոնց որոշ հակառակութիւնը կրնար կացութիւնը չափազանց կնճռոտել եւ նոյն իսկ զինքը ստիպել որ պաշարումը վերցնէ:

Հեղինակները բոլորովին համաձայն չեն Վոսփորի հիւսիսային այն կէտին վրայ զոր Սուլթանին ճարտարագէտները ընտրեցին նաւերուն փոխադրութեան գործը սկսելու համար։ Բայց գրեթէ ամենայն ապահովութեամբ կարելի է պնդել որ այդ կէտը արդի Տօլմա-Պաղչէի ծովեզերքն էր. իսկ նաւերուն անցած ճամբան յաջողած են աւելի ճշգրտօրէն որոշել: Բլուրներու այն շղթան որուն վրայ այսօր Բերան կառուցուած է, կ'ըսէ Պ. Բիրս, այն ատեն թաւուտներով եւ այգիներով ծածկուած էր իր արեւելեան կողին վրայ. իսկ արեւմտեան զառիթափը՝ այսօրուան «Մեծ-փողոց»էն սկսեալ (որ Բերայի բլուրներուն կատարն է) մինչեւ Գասըմ-Փաշայի ձորը՝ Ճենովացիներուն իբր գերեզմանատուն կը ծառայէր։ Այդ մասը տակաւին այսօր ծածկուած է թրքական գերեզմանատան նոճիներով, քանի որ քրիստոնէական գերեզմանատան՝ իսլամ գերեզմանատունը յաջորդած է: Այդ ատեն, կ'ըսէ Պ. Բիրս, ճամբայ մը կար որ Վոսփորի վրայ կէտէ մը (այսօրուան Թօփհանէին մօտ) մեկնելով ուղիղ գիծով մը՝ Վոսփորի տիրապետող Բերայի բլուրն ի վեր կ'ելլէր անոր արեւելեան կողին վրայէն: Այդ

*բլուրին կատարէն վրայ գտնուող ճամբան (որ այսօրուան Շիտակ-Ճամբան է կամ Մեծ-փողոցը, ինչպէս ըսինք արդէն) ուղիղ անկիւնով մը կտրելով այդ ճամբան յետոյ բլուրին միւս կողն ի վար կ'իջնար մինչեւ «Ակեր»ը (*) կոչուած տեղը Ոսկեղջիւրի վրայ. բլուրին գագաթին վրայ, այսօրուան Թօփ-Գըշլային տեղը երկու ճամբաները ուղիղ անկիւնով մը իրար կտրելով խաչաձեւ քառուղի մը կը կազմէին, որու պատճառաւ արդէն Յոյները տակաւին «Սթավրոտրոմիոն» կ'ըսեն Բերայի, այսինքն «խաչուղի» կամ «խաչաձեւ ուղի»:*

*Այս ճամբան ուրեմն, որ Վոսփորի եզերքէն սկսելով կը մագլցէր ձորակի մը երկայնքն ի վեր (որ այսօր փողոց մը եղած է, ուր կը գտնուի Խրիմի պատերազմին ատեն մեռած Անգլիացի զինուորներուն ի յիշատակ շինուած եկեղեցին), այդ քառուղիին մէջ կը կտրէր կ'անցնէր հազիւ քանի մը հարիւր մէթր լայնք ունեցող նեղ լեռնադաշտը որ լեռան գագաթն է եւ յետոյ բլուրին միւս կողէն վար կ'իջնար: Այդ էջքին մէջ գրեթէ ուղիղ գիծով մը ուրիշ ձորակի մը կը հետեւէր, որ այն ալ այսօր Բերայէն «Ակերու ձոր»ը եւ Ոսկեղջիւր իջնող փողոց մը եղած է: Անհունապէս հաւանական է որ այս նախ վեր ելլող եւ յետոյ վար իջնող ճամբէն է որ Սուլթանը որոշեց բազուկի ուժով անցընել տալ իր նաւատորմը:*

*Մէհմէտ Բ. կացութիւնը լաւ ուսումնասիրած էր: Մանաւանդ լաւ գիտէր թէ Կալաթայի Ճենովացիները իրենց գաղտնի յարաբերութիւնները կը շարունակէին պաշարուած քաղաքին հետ: Գիտէր թէ այդ ազգին պատկանող նաւերը որոնք յաղթականօրէն անցած էին իր նաւատորմին մէջէն՝ հիմա համբաւաւոր Շղթային ետին հանդարտ ու ապահով կեցած էին ու իրեն դէմ մղուած կռիւին գործնականապէս պիտի մասնակցէին:*

---

(*) Ասիկա Ոսկեղջիւրի ներքին փոքրիկ խորշերէն մէկն էր որ այսօր աներեւութացած է: Անոր տեղը կառուցուած է հիմայ ծովային զինուորներու զօրանոցը:

Ականատես պատմագէտներ կը պատմեն թէ Սուլթանը հաւանաբար Ճենովացիները սարսափեցնելու համար, եւ մանաւանդ անոնց ուշադրութիւնը ուրիշ կողմ դարձնելու համար, որպէս զի բան մը չկասկածէին իրենց կռնակի կողմը կատարուած պատրաստութիւններէն նաւատորմին փոխադրութեան մասին, ապրիլ 21ի արշալոյսին նոր հրետանիներ զետեղել տուաւ ճենովական քաղաքին վերեւը, Ս. Թէոդորոսի բլուրին վրայ, Կալաթայի պարիսպին հիւսիսի կողմը, հաւանաբար այսօրուան անգլիական յիշատակարան-մատուռին տեղը: Այդ թնդանօթները պաշտօն ունէին ռմբակոծել փոքր քաղաքին տուներուն վրայէն՝ Ոսկեղջիւրի մէջ Շղթային ետին ապաստանած քրիստոնեայ նաւատորմը: Ասիկա պաշարեալներուն համար ամէնէն մեծ վտանգն էր, որ կրնար Սուլթանին կողմէ այնքան ատուած իրենց նաւատորմին բնաջնջումին պատճառ ըլլալ:

Ամբողջ այդ 21 ապրիլի օրը այդ զարհուրելի ռմբակոծումը կատաղօրէն շարունակուեցաւ, այնպէս որ Կալաթայի մէջ ո՛չ ոք խորհեցաւ թէ ի՛նչ կը դառնար Թրքական այդ նոր հրետանիին ետեւը, մեր նկարագրած զառիվարներուն վրայ: Տեսանք արդէն թէ այդ նոյն օրը Պալթաօղլուի տեղը բռնող նոր ծովակալը, անոնց ուշադրութիւնը աւելի եւս ուրիշ կողմ դարձնելու համար՝ քանի մը անգամներ յարձակում գործած էր Շղթային ետին գտնուող նաւատորմին վրայ:

Ռմբակոծումը երկար տեւեց քրիստոնեայ ճարտարագէտի մը հսկողութեան տակ, զոր Յոյները չէին կրցած լաւ վարձատրել եւ որ դժգոհ մնալով Սուլթանին կողմը անցած էր:

Առաջին ռումբը ահռելի պայթումով մը եւ սեփ սեւ ու սոսկալի ծուխի մը մէջէն գնաց ինկաւ Ոսկեղջիւրի ջուրերուն մէջ. երկրորդը՝ օդին մէջ անհուն բոլորակ մը գծելէ վերջը, գնաց ինկաւ քրիստոնեայ նաւու մը կամրջակին վրայ զոր ծակեց նաւաստիներէն մէկ քանին ալ սպաննելով. դժբաղդ նաւը իր բոլոր բեռներովը վայրկենապէս ընկղմեցաւ:

Ու կարելի է երեւակայել նաւազներուն սարսափը, որք այսպէս յանկարծ իրենց հանգիստին մէջ կը վրդովուէին։ Եւ սակայն շուտ մը՝ իրենց խարսխատեղին թողուցին Շըղթային ետին եւ եկան շարուեցան Ճենովական քաղաքին պարիսպին տակը, Թրքական վիրգերուն հարուածներէն դուրս, որոնք ա՛լ հիմայ իրենց վրայէն անցնելով կ՚երթային ծովը կ՚իյնային։

Սարսափը անմիջապէս փարատեցաւ. աւելի աղմուկ պատահած էր քան թէ վնաս։ Ասով հանդերձ ռմբակոծումը մինչեւ իրիկուն անդադար տեւեց։ Թուրքերը, կ՚ըսէ Լէօնար Արք.ը, հարիւր յիսուն վիրգ նետեցին եւ անոնցմէ շատերը աղէկ նետուած չըլլալով գացին Ղալաթիոյ տուները քանդեցին, հակառակ Ճենովացիներուն չէզոքութեան։ Ճշմարիտ հրաշքով մը՝ միակ զոհ մը պատահեցաւ քաղաքին մէջ։ Կին մը սպաննուեցաւ, «ամէնաբարձր առաքինութեամբ խաթուն մը»։

Տեսանք արդէն թէ Մեծ պարիսպին կողմը, այդ նոյն 21 ապրիլի օրը Թրքական ռմբակոծումը կատաղօրէն տեւեր էր գրեթէ անդադրում։ Պարպարօն է ատիկա ըսողը։ Եէնիչէրի Միշէլ պատմագիրն ալ կ՚ըսէ թէ՝ ամբողջ գիշերը Թրքական բոլոր հրետանիները չդադրեցան պաշարուած քաղաքին պարիսպներուն դէմ որոտալէ։ Սուլթանին հրամայած բոլոր այս բացառիկ յարձակումները յայտնի է որ մէկ նպատակ միայն ունէին.— պաշարեալներուն եւ Ճենովացիներուն ուշադրութիւնը ուրիշ կողմ դարձնել։ Եւ հիանալի կերպով յաջողեցաւ ա՛լ։ Ո՛չ մէկ տեղ ո՛չ մէկ փորձ եղաւ պաշարեալներուն կողմէ՝ Թրքական նաւատորմը ջընջելու, երբ զանոնք մէկ ծովէն միւսը կը փոխադրէին։ Ապահովաբար ո՛չ Յոյները ո՛չ ալ Ճենովացիները բան մը չկասկածեցան իսկ, թէեւ Դուկաս կ՚ըսէ թէ վերջէն Ճենովացիները պնդեցին թէ գիտէին Սուլթանին ծրագիրները բայց անոր հաճելի ըլլալու համար գործը գաղտնի պահած էին։ Ֆիլէլֆ որոշ կերպով կ՚ըսէ սակայն թէ ընդհակառակն ապշահար եղան երբ եղածը իմացան։

Արդէն խոհեմ երիտասարդ Սուլթանը ամէնամեծ կան-

խազգուշութիւններ ձեռք առած էր: Վոսփորի եզերքին ամբողջ երկայնքին վրայ, կ'ըսէ Քալքոնդիլաս, թնդանօթներով զինուած զինուորական ուժեր դրուած էին ամէն յարձակում ետ մղելու համար: Ապրիլ 21էն 22ի գիշերը վերջին պատրաստութիւնները տեսնուեցան աւարտեցան: Ընտրութիւն մը ըրած էին Թրքական նաւատորմին նաւերուն մէջ. հեղինակներուն մեծ մասը վաթսունը ութէն մինչեւ ութսուն նաւու խօսքը կ'ընեն:

Ապրիլ 22ին արշալոյսին զարմանահրաշ ճամբորդութիւնը սկսաւ: «Այդ ապրիլ ամսուն 22րդ օրը, կ'ըսէ Կրիտոպուլոս, Սուլթանը տեսնելով որ ցամաքի վրայ չէր յաջողեր մեզի մեծ վնաս մը տալու՝ ինչպէս փորձով տեսեր էր, երեւակայեց իր նաւատորմին մէկ մասը Պոլսոյ նաւահանգիստին մէջ իսկ մտցնել, որպէսզի մեզի դէմ իր ծրագիրներուն իրականացումը փութացնէ...: Իր բոլոր նաւատորմը Սիւներուն մօտ խարսխած ըլլալով որ քաղաքէն երկու մղոն հեռու էր, հրամայեց բոլոր նաւաստիներուն ցամաք իջնել, եւ երեք մղոն երկայնութեամբ ճամբու մը վրայ, Բերայի լերան ամբողջ երկայնքը, Վոսփորի եզերքէն սկսեալ մինչեւ Պոլսոյ նաւահանգիստին մէջ, ճամբայ մը հարթել տուաւ: Եւ երբ այդ ճամբան ամբողջովին հարթուեցաւ, անոր ամբողջ երկայնութեանը վրայ Թուրքերը գլանաձեւ գերաններ շարեցին զորս այնքան լաւ իւղեցին Ղալաթիոյ Ճենովացիներէն գնուած մեծաքանակ իւղով եւ ճարպով, որ Սուլթանը խորհեցաւ թէ՝ ա՛լ կրնայ փորձ մը ընել իր նաւատորմին մէկ մասը Պոլսոյ նաւահանգիստին մէջ մտցընելու: Գործի սկսաւ փոքրիկ «ֆուստ»ով մը. զայն յիշեալ գլանաձեւ գերաններուն վրայ դնել տուաւ եւ քիչ ատենուան մէջ մեծ արագութեամբ զայն հասցուց Ոսկեղջիւրի մէջ. ու երբ Թուրքերը տեսան որ այս գիւտը շատ լաւ կը յաջողէր, սկսան ուրիշ աւելի փոքրիկ «ֆուստ»եր ալ քաշել, որոնք 15էն մինչեւ 20 կամ 22 զուգաթի էին: Անշուշտ առաջին ակնարկով այս բանը անկարելի կամ անհաւատալի պիտի թուէր եթէ Սուլթանը իր տրամադրութեան տակ չունենար այնքան ստահակներ, այդ լեռներուն

վրայէն այդ «ֆուստ»երը քաշելու համար. որովհետեւ այդ նաւերէն մինչեւ 72 հատ մտցուցին Պոլսոյ նաւահանգիստին մէջ, ամենքն ալ լաւ զինուած եւ ամէն բանի պատրաստ. եւ այս բանը կարելի եղաւ, որովհետեւ Թուրքերը շատ լաւ կ'ապրէին Ղալաթիոյ Ջենովացիներուն հետ»:

Վենետիկցի բժիշկին այս շատ համառօտ պատմութիւնը բաւական լաւ կը պատկերացնէ այս արտաքոյ կարգի պատերազմական գործողութիւնը, որ, Պոլսոյ համբաւաւոր պաշարման ամէնէն նշանաւոր միջադէպներէն մէկը եղաւ, եւ որ հակառակ բացարձակ յաջողութիւն մը չունենալուն, դարձեալ ամենամեծ ազդեցութիւն մը ըրաւ վերջնական արդիւնքին վրայ:

Կրիտոպուլոս, քիչ մը աւելի մանրամասնօրէն կը պատմէ նոյն գործողութիւնը. ըստ իր պատմութեան, նաւերը սահեցնելու համար շինուած կլոր գերանները կամ սահնահետքերը կը մեկնէին արդի Թօփխանէի եւ ութը մղոն երկայնութեամբ ճամբէ մը անցնելով արագօրէն բլուրն ի վեր կ'ելլէին եւ նոյնքան արագօրէն դէպի Ոսկեղջիւր կ'իջնէին:

Ութը մղոն երկար այս անհուն սահնահետքին տախտակամածը կազմող փայտէ գլաններէն ամէն մէկը 13—14 ոտք երկայնութիւն ունէր: Այս գլանները նախապէս խնամքով տաշած ու իւղոտած էին: Նախ ջուրը իջեցուցին բալխիրի կամ օրօրոցի ձեւով շինուած աստղձները. յետոյ այս աստղձներուն երկու կողմերէն վեր բարձրացող գերաններուն կապեցին ու լաւ մը ամրացուցին իրենց տանիլ ուզած նաւերէն մէկը: Այն ատեն չուաններ կապելով ջուրէն դուրս քաշեցին այդ հսկայ զանգուածներէն իւրաքանչիւրը ու տարօրինակ, այլանդակ ճամբորդութիւնը սկսաւ: Ինչպէս ըսի, նախապէս աւելի թեթեւ «ֆուստով» մը փորձ ըրած էին. այս փորձը շատ լաւ յաջողելէն էր որ Թուրքերը քաջալերուեցան շարունակելու: Ասկէ զատ անթիւ գոմէշներ ալ գործածեցին այս ահագին բեռները բլուրն ի վեր հանելու համար:

Եօթանասուն նաւերն ալ այս կերպով խիստ քիչ ատենի մէջ իրարու ետեւէ վեր քաշեցին, ամէնէն աւելի մարդոց

ձեռքով, քանի որ Սուլթանին տրամադրելի աշխատաւորնե-րուն թիւը այնքան սարսափելիօրէն շատ էր:

«Նաւերուն ամէն մէկուն ետեւէն գացող բազմաթիւ նաւաստիները, կ'ըսէ Պարպարօ, այս տեսարանին առջեւ ուրախութենէ խելայեղեցան, մանաւանդ երբ ապագայ ըլ-լալիքին կը խորհէին, եւ երբ բլուրին գագաթը կը հասնէին կը ցատքէին արագօրէն ու շիփ շիտակ Ոսկեղջիւր իջնող նաւերուն մէջ իբր թէ ծովու վրայ ըլլային: Նաւաստիներէն ոմանք յաղթութեան աղաղակներով եւ իբր թէ բաց ծովը կ'ելլան կոր, առագաստները կը քակէին եւ հովը ուժգին փչելով կ'ուռեցնէր զանոնք. ուրիշներ ալ, թիավարներու նստարաններուն վրայ նստած, թիավարելու պէս թիերնին ձեռքերնին կ'առնէին, մինչ բեռնատեսուչները փայտէ եր-կար ու բարձր ճամբուն մէկ ծայրէն միւսը կը վազվռտէին եւ սուլումներով, գոչերով եւ ի հարկին մտրակի հարուած-ներով ալ իրենց մարդոց կորովը կը գրգռէին: Ու թուրք նաւերը, արտասովոր ճամբորդներ, դաշտին մէջէն կը սա-հէին, իբր թէ ծովուն վրայէն կը նաւեն եւ մինչ վերջին նաւերը դեռ բլուրն ի վեր մագլցելու վրայ էին, առաջին-ները արդէն, առագաստներնին սեղմած, ուրախութեան գոռում գոչումներով եւ ահագին աղմուկով Ոսկեղջիւր տա-նող ցից զառիվարն ի վար կը խոյանային:

«Նորէն կ'ըսեմ, տարօրինակ ու աչքովը չի տեսնողին համար անհաւատալի տեսարան մըն էր ասիկա, դաշտերուն մէջէն նաւերուն այսպէս յառաջանալը իրենց առագաստնե-րով, նաւաստիներով ու զէնքերով: Քսերքսէսի Աթոս լեռը ծակելէն շատ վեր կը դասեմ ես այս բանը, եւ աչքերովս այս բանը տեսնելէս ի վեր է որ հաւատ կ'ընծայեմ նաեւ այն իմ չտեսած ուրիշ զրոյցներուս, զորս առաջ քնաքեր մասալներու տեղ կը դնէի:»

Այսպէս առնուազն եօթանասունըեօթը նաւերու ահա-գին տորմիղ մը ցամաքէն իջաւ Ոսկեղջիւր եւ Ղալաթիայէն քիչ մը վերօք խարիսխ նետեց:

Այս հետաքրքրաշարժ գործողութեան ամէնէն փափուկ մասը ստոյգ է որ իր սկզբնաւորութիւնը եղաւ, այսինքն

այն նաւու փորի, բալխիրի կամ օքօրոցի ձեւով գործիքներուն ծովը իջեցնելու շրջանը, որոնց կողերուն մէջէն ամրօրէն կը կապէին նաւերը: Անգամ մը որ նաւերը այս կերպով իրենց համապատասխան գործիքին կողերուն մէջ դրին ու ամուր մը կապեցին, ցամաք քաշեցին այս ծանրածանր մեքենաներէն իւրաքանչիւրը եւ յաջորդաբար հաստատեցին պէտք եղածին պէս ուղղուած փայտէ սահնահետքին վրայ, ու սկսաւ նկարագեղ ճամբորդութիւնը որ այնքան խնդացուց Թուրք նաւաստիները, այս վայրենի խոշոր մանուկները :»

Մէկ ծովէն միւսը նաւերուն անցքին այս արագութիւնը կ'երեւայ իրապէս արտասովոր բան մը եղաւ: Այս երեւոյթը աշխատողներու անհուն թիւովը կրնանք միայն բացատրել: Թողէք որ արդէն նման գործողութեան մը յաջողութիւնը այս արագութենէն միայն կախում ունէր: Անոնք որ մարդու ձեռքով անկարելի եղաւ, անասուններու կամ ուրիշ մեքենաներու, կամ ահագին թիւերով գոմէշներու միջոցով քաշուեցան: Բայց սա եւս երբեք նկատողութենէ չի հեռացընենք, որ երկու հարիւր յիսուն ոտքէ աւելի բարձր բլուրի մը վրայէն այսքան առասպելական կերպով անցնող նաւերը մեծութեան կողմէ ոչ մէկ նմանութիւն ունէին մեր հիմակուան նաւերուն։ Նոյն իսկ երկու կամ երեք շարք նաւաստիներ ունեցողները, եթէ երբեք կային, հազիւ հազ յիսունէն եօթանասուն ոտք երկայնութիւն ունէին: Ամէնէն տաժանելին ու դժուարը բլուրէն վեր քաշելու գործողութիւնն էր. անկէ անդին շուտով, բազուկներու ուժով, կ'անցնէին մէջտեղի սարահարթը ու արագօրէն կ'իջնէին Ոսկեղջիւր տանող զառիվարէն : Ամբողջ այս գործողութիւնը, անհաւատալի եւ սակայն ստոյգ, մէկ գիշերուան մէջ աւարտեցաւ:

Բոլոր ժամանակակից քրոնիկագիրները միաբերան կը խօսին Թուրք նաւաստիներու աղմկալից ուրախութեան վրայ, որոնք իրենք ալ ապշած այս անլուր եւ այնքան դիւրին յաջողութեան առջեւ, իրենց ցնծութեան ոռնումներով, իրենց կոշտ ու խռպոտ երգերով, իրենց պատերազմական

նուագչութեան ձայներով, Վոսփորի արձագանգները կը
հնչեցնէին, քանի նաւերէն մին Ոսկեղջիւր կ'իջնէր զուար-
թօրէն, ու ծովեզերքին վրայ կուգար խարսխել Զաղան փա-
շայի թնդանօթներուն պաշտպանութեան տակ։ Բոլոր այս
ժամանակագիրները կ'ըսեն միաբերան թէ երբեք ատանկ
բան տեսած չունէին։

Այս կերպով աւարտեցաւ այս դիւցազնական աշխա-
տութիւնը, որ այնքան նպաստեց Թուրքերուն վերջնական
յաղթանակին։ Յոյներն անգամ ծափահարեցին օսմանցի
երկրաչափներուն այս փայլուն եւ հանճարեղ յանդգնու-
թիւնը։ Այդ գիշերը, Թուրք թնդանօթները, վայրկեան մը
որոտալէ չդադրեցան. ատով կը բացատրուի թէ ինչո՛ւ
պաշարեալները եւ մանաւանդ Ոսկեղջիւրի յունական նա-
ւատորմը ո՛ եւ է խոչընդոտ չի յարոյց Թուրք նաւերուն, պա-
շարեալ քաղաքին նաւահանգիստին սրտին մէջ իսկ գա-
յանալուն։ Զաղան փաշայի Գալաթիոյ բլուրին գագաթը հաս-
տատած մարտկոցներուն անդադրում ռմբակոծութիւնը
բաւական եղաւ թշնամական ո եւ է փորձ արգիլելու։

Ժամանակագիրներէն միայն Դուկաս, հոս կը պատ-
մէ դէպք մը. երբ թէ կայսրը, Թուրք նաւերու ուղղակի
Ոսկեղջիւրի մէջ այս երեւումէն սարսափահար, նոր դես-
պանութիւն մը կը ղրկէ Սուլթանին, յայտնելով թէ պատ-
րաստ է անոր ուզած հարկը, ինչ որ ալ ըլլայ, վճարելու,
պայմանով որ պաշարումը վերցնէ եւ հեռանայ, եւ երբ թէ
Սուլթանը ետ կը դարձնէ դեսպանութիւնը, պատասխանե-
լով թէ ամէն պարագայի մէջ ինք որոշած է գրաւելու քա-
ղաքը։ Բայց ուրիշ ո եւ է ժամանակագիր՝ յիշատակութիւն
չըներ նման դէպքի մը, մինչ ընդհակառակն Ֆրանցէս, ան-
բախտ տերոջ մը այս այնքան անձնուէր ծառան, կ'ըսէ թէ իր
սիրեցեալ տէրը՝ դիւրաւ կրնար Կոստանդնուպոլսէն փախ-
չիլ, բայց թէ ընդհակառակն, ան շարունակ մերժած է այդ
բանը, «նախապատիւ համարելով, կ'ըսէ Ֆրանցէս, հետեւիլ
բարի հովիւին օրինակին՝ որ դնէ զանձն իւր ի վերայ ոչ-
խարաց իւրոց, ինչպէս որ ալ ըրաւ իրօք»։ Արդէն տարբեր
աղբիւրներէ մեր ունեցած բոլոր տեղեկութիւններէն ալ ծա-

նօթ ենք կայսեր ազնուական նկարագրին, եւ գիտենք թէ պատերազմին սկզբնաւորութենէն իսկ իր որոշումը տուած էր ան,—ազատել իր սիրեցեալ քաղաքը կամ մեռնիլ անոր հետ:

«Երբ Ցոյները, կ'ըսէ Կրիտօբուլոս, տեսան այս անպատում գործողութեան յաջողութեամբ գլուխ ելլելը եւ դիտեցին Ոսկեղջիւրի մէջ խարիսխ նետած այս թշնամի նաւերը, անհաւատալի բան մը, որուն բնաւ չէին սպասեր, սարսափով լեցուեցան այս խելքէ մտքէ դուրս տեսարանին հանդէպ։ Ամենամեծ վարանման ու ամենազէշ յուսահատութեան մէջ ինկան, բոլորովին շուարած: Որովհետեւ, մինչեւ այն ատեն երկարօրէն եւ բազմաթիւ գունդերով պաշտպանելու պէտք չէին ունեցած նաւահանգիստին կողմէն քաղաքը պաշտպանող երեսուն սթանտիոն —մէկ սթատիոնը 600 ոտք էր — երկար այս պատը: Եւ սակայն, առանց ատոր արդէն, թէ ազգային եւ թէ օտար զինուորները քիչ կուգային իրենց պարիսպին մնացած մասը պաշտպանելու, այն աստիճան որ ամէն մէկ երկու կամ երեք որմածակի մէկ պաշտպան միայն յատկացուցած էին:»

Հիմայ Ոսկեղջիւրի երկայնութեամբը տարածուող պարիսպն ալ ամէն վայրկեան ենթակայ էր թուրքերու յարձակումին: Ասկէ յետոյ, այսքան նուազ պատերազմիկներով, պէտք պիտի ըլլար պաշտպանութեան այս նոր ու այնքան դժուար կէտին ալ հասնիլ: Պէտք պիտի ըլլար պատնէշին միւս մասերէն զինուորներ առնել ու հոս դնել. ասիկա գերագոյն վտանգ մըն էր, որովհետեւ այս կերպով պատնէշին այս միւս մասերը անպաշտպան կը մնային բոլորովին եւ հոն ձգուածները, իրենց քիչութեան պատճառաւ, չէին կըրնար զանոնք պաշտպանել: Այս տիեզերական աղէտին առջեւ, կայսրը նորէն չկորսնցուց իր քաջութիւնը, եւ սակայն պատնէշին արդէն այնքան քիչ պաշտպաններէն դեռ մասմըն ալ վերցնելու այս սոսկալի անհրաժեշտութիւնը տարօրինակ կերպով վշտացուց իր սիրտը :

Եւ տակաւին այս չէր ամէնը: Ոսկեղջիւրի արեւելեան(*) ծայրին մէկ եզերքէն միւսը Թուրքերու նետած կամուրջը աւարտելու վրայ էր: Հարկ անհրաժեշտ էր այս կողմէն ալ պաշտպաններու թիւը աւելցնել, թշնամի յարձակումներու դէմ դնելու համար: Նոյնպէս, մարդ պէտք էր դնել այն բազմաթիւ մեծ ու փոքր նաւերը լաւագոյն եւս պաշտպանելու համար, որոնք Շղթային ետեւ խարսխած էին եւ որ հիմա երկու կրակի մէջ առնուելու գերագոյն վտանգին ենթակայ էին, այսինքն ետեւի կողմէն Ոսկեղջիւր իջած Թուրք նաւերուն եւ դուրսէն ալ Վոսփորի մէջ խարսխածներուն կրակին: Անհունօրէն անձկալից ու ողբերգական էր կացութիւնը, խելք կորսնցնելիք բան մը. եւ սակայն, ամէնքն ալ, ըրին ինչ որ այսքան եղերական պարագաներու մէջ մարդկօրէն կարելի էր:

(*) Գումգըր հանէի եւ Տէֆթէրտար Իսկէլէսիի միջեւ:

## ԳԼՈՒԽ Ն.

*Ոսկեղջիւրի մէջ խարխափող Թուրք նաւերուն ի տես պաշարեալներուն սարսափը.— Թուրք նաւերը այրելու համար եղած փորձին աղետալի անյաջողութիւնը.—Ոսկեղջիւրի խորը Թուրքերու շինած կամուրջը.—Ռմբակոծումը կը շարունակուի.—Պաշարեալները գողանաւ (brigantin)մը կը ղրկեն Արեւմուտք.Բերայի պատերուն վերեւէն ռմբակոծում.—Պաշարեալներուն միջեւ երկպառակութիւն կ'ըլլայ.—Մայիս 12ի նոր անյաջող յարձակում.— Պաշարեալները երեւան կը հանեն Թուրքերու Ականափորները:*

Դիւրաւ կը հասկցուի թէ ինչ ահ ու սարսափ ծգեց Կոստանդնուպոլսոյ մէջ Գասըմ-փաշայի խորշին ու Ոսկեղջիւրի ներսի նաւահանգիստին մէջ 70էն 90 Թրքական այս նաւերուն յանկարծական ու գրեթէ հրաշալի մուտքը: Հիմա պէտք էր Պոլսոյ նաւահանգիստը եզերող պարիսպին այս մասին պաշտպանութեան ալ հասնիլ: Պարիսպը հոս ցած ու գէշ վիճակի մէջ էր, ինչ որ բնականաբար յարատեւ նախըզգուշութիւն կը պահանջէր ալ: Ինչ սրտաբեկութիւն թիւով արդէն այնքան քիչ եւ պատերու այնքան անհուն տարածութեան վրայ ցրուած պատերազմիկներուն համար: Մանաւանդ որ Շղթային ետին դիզուած լատին նաւատորմն ալ այսպէս մէկ հարուածով ետեւէն յարձակում կրելու մեծ վտանգին մէջ կ'ըլլար: Տիեզերական յուսահատութիւն մը տիրեց ամէնուն: Պարպարօ նկարագրելէ յետոյ այս սարսափը, կ'աւելցնէ թէ, ստիպուեցան ամէն վայրկեան զէնքի տակ մնալ եւ որոշեցին դուրսի ծովուն մէջ գտնուող Թրքական նաւերուն վրայ հսկելու համար Գալաթիոյ հրուանդանին ծայրը—այսօրուան Թօփհանէի նաւամատոյցին առջեւ—թեթեւ ցռկանաւ մը պահապան դնել, որ Տոլմա-Պաղչէի առջեւ խարսխած թիւրք նաւատորմին ամենափոքր

շարժումներուն վրայ պիտի հսկէր, եւ ո եւ է շարժման պարագային, անմիջապէս լուր պիտի տար նաւատորմի հրամատարին, որ տիար Ալոյզիօ Տիէտօն էր: Բայց բարեբախտաբար ատանկ բան չպատահեցաւ, որովհետեւ Թուրքերն ալ իրենց կարգին կը վախնային յանկարծակի գալ յարձակելու Ողէթային ետին խարսխած այնքան բազմաթիւ նաւերուն վրայ: Բայց վտանգին մեծութիւնը ուրիշ միջոց մը խորհիլ տուաւ պաշարեալներուն:

«Արդ, հետեւեալ օրն իսկ, այսինքն ապրիլի 25ին, մեր միտքին մէջ հասունցաւ սա ծրագիրը թէ պէտք էր ամէն գինով փորձել լերան վրայէն Պոլսոյ ներքին նաւահանգիստը իջնող Թուրք նաւախումբը ջնջելու: Եւ նոյն օրն իսկ առաւօտեան Կոստանդնուպոլսոյ Սրբուհի Մարիամ եկեղեցիին մէջ —հաւանաբար վենետիկեան թաղին մէջ, այս օրուան Բիւսթէմ փաշա մզկիթին մօտերը, կ՚ըսէ Բիրս,— Տասներկուքներու ժողով մը կազմեցինք»: «Հաւանական է որ, կ՚ըսէ Բիրս, Վենետիկի Պայլը կը նախագահէր այս շահեկան ժողովին, որով, անշուշտ կայսեր հաւանութեամբը, պաշտպանութեան գործին ուղղութիւնը իր վրայ կ՚առնէր: Խիստ հաւանական է նաեւ որ, հակառակ Պարպարոյի լռութեան, այս տասներկուքներու մէջ կը գտնուէր նաեւ Ճիուսթինիանի, որ իր քաջութեան եւ արագ վճռականութեան յատկութիւններով ամէնուն վստահութիւնը գրաւած էր:»

«Նախ, կը շարունակէ Պարպարօ, սկզբունքով քուէարկեցինք Թուրք արմատան ջնջել, բայց այսքան մեծ գործողութեան մը յաջողութիւնը ալ աւելի ապահովելու համար երկարօրէն վիճաբանեցանք ամէնէն յարմար եւ յաջողելու ամէնէն աւելի հաւանականութիւն ունեցող միջոցին վրայ, ու ամէնքն ալ իրենց կարծիքը յայտնեցին: Մաս մը կ՚ուզէր որ օր ցորեկով բոլոր մեր նաւատորմը, խոշոր նաւ թէ ցռուկանաւ ու «ֆուստ», խարիսխը վերցնեն ու խոյանան Ոսկեղջիւրի եզերքը դիզուած Թուրք նաւերուն վրայ: Պատասխանեցին թէ այս յարձակման համար անհրաժեշտ էր Ղալաթիոյ Ճենովացիներուն հաւանութիւնը, ինչ որ հաւանաբար պիտի մերժէին տալ քանի որ բնաւ չէին ուզեր գէշ

մարդ ըլլալ Սուլթանին հետ. ամէն պարագայի մէջ, մինչեւ իսկ առնէին ալ այդ հաւանութիւնը, թանկագին ժամանակ մը պիտի կորսուէր: Երկրորդ առաջարկը այն եղաւ որ ցամաքէն զինուորներ ղրկեն միայն, երկու թեթեւ ցուկանաւերու ընկերակցութեամբ, որոնք երթան յարձակին, իրենց նաւերը պաշտպանելու համար Ղալաթիոյ արեւմտեան կողմը Թուրքերուն դրած թնդանօթներուն եւ բանակատեղիին վրայ, եւ յետոյ երբ յաջողին այրել. փոքրնին նաեւ Թուրք նաւերը:»

Ասիկա իրապէս խիստ վտանգաւոր գործողութիւն մըն էր, մանաւանդ որ պաշարեալները բաւականաչափ մարդ չունէին արդէն նմանօրինակ գործի մը մէջ անպատիժ կորսնցնելու համար գումարտակ մը զինուոր, Զական փաշա.ի բանակին այսչափ մօտիկը:

Երրորդ առաջարկութիւն մըն ալ եղաւ, եւ արժանացաւ ամէնուն հաւանութեան: Այս առաջարկութիւնը բերաւ տիար Եագօմօ Քօքօ, աւելի գործի քան խօսքի մարդ մը, եւ թերեւս միս մինակը ամբողջ ժողովին մէջ, իր բոլոր ուժովը պաշտպանեց զայն, ու ինչպէս ըսինք, թէեւ ամէնքն ալ ընդունեցին ատիկա, բայց տարաբաղդաբար զարհուրելի վախճան մը ունեցաւ այս փորձը, եւ պաշտպանութեան գործին նոր ու մեծկակ ալ հարուած մը տուաւ: Այս ծրագիրն էր, անմիջապէս, առանց վայրկեան մը կորսնցնելու, առանց Բերայի Ճենովացիներուն հաւանութիւնը առնել խորհելու, միայն երկու ցուկանաւերով նետուիլ Քասըմ-Փաշայի խորշը դիզուած Թուրք նաւերուն վրայ ու հոն տեղնիտեղօքը կրակի տալ զայն: Քօքօ իր վրայ կ'առնէր գործին ուղղութիւնը: Մափահարեցին զինքը:

Տասներկուքներու ժողովը խիստ գաղտնի կատարուած էր եւ ո եւ է ժամանակ կորսնցուցած չէին որոշումի մը յանգելու համար: Արդէն Քօքոյի առաջարկութեան էութիւնը իսկ կը պահանջէր անմիջական եւ ամենագաղտնի գործադրութիւն: Ցանդուգն իտալացին անմիջապէս ու ամենամեծ փութկոտութեամբ պատրաստուելու սկսաւ:

«Հետեւաբար, կը շարունակէ Պարպարօ, Ապրիլի 24ին,

յիշեալ տխար Նաֆօմօ Քօքօ, Տրապիզոնի ցռկանաւին հրամանատարը, իւրաքանչիւրը 500 թօնօ տարողութեամբ երկու նաւ առաւ եւ անոնց շուրջը բամբակի եւ բուրդի պարկերով սպառազինեց, թուրք ումբաձիգներու ամենախոշոր վիրգերէն անգամ պաշտպանելու համար զանոնք: Բայց այս կերպով տապաստակուած այս նաւերը ոեւէ կերպով, մինմինակնին, առանց ցռկանաւերու կամ «ֆուստ»երու օգնութեան, չէին կարող խոյանալ թուրք արմատային վրայ: Հետեւաբար երկու արագաշարժ խոշոր ցռկանաւեր ալ պատրաստեցին անոնց ընկերանալու համար: Ասկէ զատ, այս վերջիններուն իւրաքանչիւրն ալ իր կարգին թիավարներու քանեւչորս նստարաններով ու եօթանասուն երկու թիավարներով կայսերական «ֆուստ»երէն մին զինեց, եւ ամէն մէկ նաւ զինեց իր խոշոր նաւակներէն մին»: Քօքոյի ծրագիրն էր իր երկու խոշոր նաւերը հողմարգելի (paravent) տեղ գործածել ցռկանաւերու եւ «ֆուստ»երու ներկայութիւնը ծածկելու համար, որպէսզի, վերջին վայրկեանին, այս արագաշարժ նաւերը կայծակի նման կարենան խոյանալ ու ջնջել կամ այրել թուրք նաւերը: Ամէն բան պատրաստ էր եւ որոշուեցաւ որ ցերեկէն յետոյ ժամը եօթը երեք քառորդ անցած, ամէն ինչ պատրաստ պիտի ըլլար, որպէս զի կէս գիշերուան մօտ պզտիկ արշաւախումբը կարենար խոյանալ դէպի թշնամի բանակը, եւ կէս գիշերուան ժամուն, ամենքն ալ, «ֆուստ»երուն հետ միասին, գացին Տիար Ալօյզիօ Տիէտոյի ցռկանաւը որ նաւահանգիստին ընդհանուր հրամանատարն էր, հոն վերջին անգամ մըն ալ խորհրդակցեցան թէ պէ՞տք էր թէ ոչ սասնկ գործի մը ձեռնարկել, եւ մեծամասնութիւնը վճիռ կայացուց թէ՝ այո՛ պէտք էր անմիջապէս, կէս գիշերուան այս ժամուն, երթալ յարձակիլ թշնամի նաւատորմին վրայ եւ կրակի տալ զայն:

«Այն առեն, կը շարունակէ Պարպառօ, Բերա:ի ճենովացիները, քրիստոնէական հաւատքին այս թշնամիները(*), չենք գիտեր ինչպէս տեղեկութիւն ունեցան այս գործին

---

(*) Պէտք չէ մոռնալ որ խօսողը Վենետիկցի մըն է:

վրայ եւ իմացան թէ Թուրք արմատան կրակի տալ կ'ուզէինք. անմիջապէս Բերայի Բօտէսթան երկու ճենովացի դեսպան ղրկեց Տիար Թուրքին Սէն-Րօմէնի դրան դիմաց հաստատուած բանակատեղին, միւս կողմէ Տիար հրամանատարին ցուկանալը մեր գումարած ժողովին մէջ այս շուն ուրացողները ըսին այս վերջինին. «Տիար հրամանատար, միս մինակնիդ մի՛ գործադրէք այս խոշոր ձեռնարկը այս գիշեր, այլ եթէ ուրիշ գիշերուան մը ձգէք անոր գործադրութիւնը, մենք, Բերայի ճենովացիներս ալ կը խոստանանք ձեզի օգնել, աւելի ապահով կերպով այրելու համար թուրք նաւերը:» Մեր հրամանատարը, ի լուր այս առարկութեան, գործը ուրիշ գիշերուան մը ձգելուն վրայ գոհ եղաւ. եւ երբ ճենովացիները տեսան արշալոյսին ծագիլը, որովհետեւ խաղաղութեամբ կ'ապրէին Թուրքին հետ, Բերայի դուռներէն մին բացին եւ Ֆայեուցօ կամ Ֆրակիուզօ անունով մէկը ղրկեցին Թուրքին մօտ: Այս վերջինը երբ Մեծ Թուրքին —Սուլթանին— վրանին առջեւ հասաւ, յայտնեց անոր թէ նախորդ գիշերը Վենետիկցիները որոշած էին երթալ կրակի տալ Մանտրաքիոնի առջեւ խարսխած իր նաւատորմը եւ ամէն ինչ պատրաստուած էին ատոր համար: Այս լուրին վրայ, Մեծ Թուրքը խիստ շնորհակալ եղաւ դեսպանին ու անմիջապէս Բերա ղրկեց զայն: Ցետոյ, հրացանակներով զինուած մեծաքանակ զինուոր ղրկեց իր նաւատորմը, ասկէ զատ, ծովեզերքը երկու ումբածիգ ջուրին երեսովը, երկու ումբածիգ ալ Մանտրաքիոնի միւս կողմը -- այսինքն Գասըմ փաշա— զետեղեց: Ու խորշին շուրջանակի, խաղխամներ շինել տուաւ, իր զինուորները թշնամիին գեղարդներուն արձակած նետ ու տէգերուն ու հրացանակներու գնտակներուն դէմ պաշտպանելու համար: Այս կերպով, թուրք նաւատորմը կատարեալ ապահովութեան մէջ կը գտնուէր ալ. ու այս մատնութիւնը, Բերայի անիծեալ ճենովացիները, քրիստոնէական հաւատքին այս ըմբոստները կատարեցին:

«Ապրիլի քսան եւ չորսէն մինչեւ քսանութը պատրաստուեցանք այս գործին, բայց իմ կարծիքս սա է որ ամէն բան

Աստուծոյ կամքովը եղաւ, որ ուզեց որ հոն երթանք, մեր մէջ գտնուող քանի մը մեղաւորները պատժելու համար: Միայն կ'ուզեմ իմացնել որ, մենք, Վենետիկցիներս, սկիզբէն ո եւէ կերպով չգիտցանք չար ճենովացիներու մատնութիւնը: Սուլթանը, իր նաւատորմին ապահովութեանը վստահ, համդարտօրէն սպասեց Քօքոյի յարձակումին:

«Ապրիլի քսանեւութին ուրեմն, յանուն Յիսուսի Քրիստոսի, որոշեցինք նենգաւոր Թուրքին նաւերը վառելու մեր ծրագիրը գործադրել: Արեւուն ծագելէն երկու ժամ առաջ, երկու նաւերը, բուրդի եւ բամպակի պարկերով կատարելապէս սպառազինուած, սկսան հեռանալ Ղալաթիոյ նաւահանգիստէն — այսինքն Ոսկեղջիւրի հիւսիս-արեւելեան մասէն: Իրենց կ'ընկերանային երկու ցռկանաւեր, եւ կատարելապէս զինուած՝ իւրաքանչիւրը թիավարներու քսան եւ չորս նստարաններով երեք «ֆուստ»եր: Ասոնցմէ զատ, բազմաթիւ պզտիկ նաւերու վրայ դիւրավառ նիւթեր՝ ձիւթ, ծացառ, վառօդ եւն. լեցուցած էինք, ասոնք թշնամի նաւերուն կրակ տալու յատկացուած էին: Հրամանը այն էր որ առջեւէն խոշոր նաւերը պիտի երթային, իրենց խոշորութեամբը ծածկելով իրենց հետքերուն վրայէն եկող ցռկանաւերն ու երկթի նաւերը: Արշաւախումբին ճամբայ ելլելու պահուն, մենէ մէկ քանիներուն բաւական զարմանք պատճառեց յանկարծ Ղալաթիոյ աշտարակին գագաթը բուռն բոցի մը փայլիլը, ասիկա հաւանաբար Թուրքերու որոշած նշանն էր նաւերուն ճամբայ ելլելը ծանուցանող: Մթութիւնը դեռ ամէն կողմ խորունկ կը տիրէր եւ Թուրք նաւերէն ոչինչ, ոչ մէկ ձայն, ոչ մէկ նշան կուգային հասկըցնելու մեզի թէ արթուն կը հսկէին անոնք:

«Որովհետեւ քրիստոնեայ նաւերը դանդաղօրէն ու լռիկ մնջիկ կը յառաջանային, տիար Եագօմօ Քօքօ, ամբարտաւան մարդ, ուզեց որ առաջինը ինք յարձակի Թուրք նաւատորմին վրայ ու ասով փառք ու պատիւ վաստկի: Ինչպէս գիտէք, երբ մեր տորմղիկը Մանտրաքիոնի խորշին դիմացը հասնէր, որոշուած էր որ խոշոր նաւերը էն առջեւէն պիտի յառաջանային, բայց որովհետեւ քառասուն

նստարան թիավար ունեցողը բնականաբար չէր կարող եօթանասուն երկու ունեցողին չափ արագ երթալ, Քօքօ, ամբարտաւան ու փառասէր մարդ, չթողուց որ մեծ նաւերը սկսին կռիւը, եւ առաջին հարուածը ինք տալու փափաքէն, առաջ անցաւ եւ խօլ վազքով մը խոյացաւ Թուրք նաւերուն վրայ: Ճիշտ այս վայրկեանին, յանկարծակի խըզուած լռութիւնը ապուշ կտրած յարձակողներուս հասկցուց թէ Թուրքերը կը հսկէին: Թնդանօթի առաջին հարուած մը Քօքոյի նաւուն քիթին հանդիպեցաւ, առանց բնաւ վնասելու. բայց անմիջապէս այս առաջինին ետեւէն արձակուած երկրորդ հարուած մը մէկ կողմէն միւսը ծակեց անցաւ նաւը, եւ «Հայր մեր» մը ըսելու ժամանակ չեղած, խեղճ նաւը հրամատարով, սպաներով ու նաւազներով միասին իջաւ ծովին յատակը:

«Ամենքս ալ, ի տես այս բանին, չափազանց մեղքցանք զինքը, մանաւանդ որ ո եւ է կերպով օգնութիւն ալ չէինք կարող հասցնել անոնց: «Ֆուստ»ին այս կերպ ընկղմիլը չնշմարեցին անգամ ճիշդ անոր ետեւէն թիավարող թեթեւ ցռկանաւին մարդիկը, եւ անոր ետեւէն կռիւի կ'երթային, միշտ կարծելով թէ ան առջեւնուն է եւ թէ ամէն բան լաւ կ'երթայ. զարմանալի չէ արդէն ասիկա չի տեսնելնին, որովհետեւ ռմբաձիգներն ու հրացանակները այն աստիճան մուխ ու ծուխ կ'արձակէին ու ամէն կողմէ եկող գոռում գոչումները այնքան սարսափելի էին, որ բացարձակապէս անկարելի էր ո եւ է բան տեսնել: Արդ, այդ երկրորդ ցռկանաւն ալ երբ այսպէս անտեղեակ կը յառաջանար, յանկարծ Թուրքերը իրենց երկու ռմբաձիգները արձակեցին, ու անոնց ռումբերը զարկին անոր մէջտեղին ու մէկ կողմէն միւսը ծակեցին: Նաւուն փորին մէջ գտնուող երկու հոգի վիրաւորուեցան. անմիջապէս բոլոր նաւազները իրենց վերարկուներով գոցեցին ռումբերուն բացած ծակերը, այնպէս որ ցռկանաւը, հակառակ որ կէսը ջուրին մէջն էր, գէշ աղէկ կրցաւ ջուրին երեսը կենալ, եւ թիակի ուժով ետ դարձաւ Շղթային ետեւ իր նախկին տեղը ու ազատեցաւ: Այսպէս ըրին միւսներն ալ ու ցռուկնին ետ դարձուցին: Թուրքերը

տեսան մեր դառնօրէն արտասուելը մեր պարտութեան վրայ. չափազանց կը մեղքնայինք նաեւ մեր այնքան բազմաթիւ խեղճ ընկերները, Աստուած հոգինին լուսաւորէ: Կուլայինք նաեւ Թուրքին վախով, որ չըլլէ յանկարծ իր յաղթութիւնը շարունակել ուզէ ու ճամբայ ելլէ գրաւելու մեր ամբողջ նաւատորմը, որովհետեւ կը վստահեցնեմ որ եթէ նոյն օրը ընդհանուր կռիւ մը մղել ուզէին, մեզ ամենքս ալ, ըլլայ ցամաքէն, ըլլայ ծովէն, կրնային բռնել, սարսափը այնքան մեծ էր մեր մէջ: Բայց յաւիտենական Տէրը, նախապատիւ համարեց քանի մը օր ալ յետաձգել քաղաքին գրաւումը:

«Սակայն, ի՜նչ ըրին յիշեալ հեթանոսները: Անմիջապէս, իրենց եօթանասուներկու ֆուստերով խոյացան բուրդէ պարկերով զինուած երկու խոշոր նաւերուն վրայ, ու այս խեղճ երկու նաւերը կանգ առին կեցան թշնամիներու այս զանգուածին մէջտեղ, ու սպասեցին որ մենք, քրիստոնեաներս, օգնութեան հասնինք իրենց, ինչ որ աւա՜ղ, բոլորովին անկարելի էր, որովհետեւ անմիջապէս պիտի բռնուէինք Թուրքերէն: Այս վերջինները, տեսնելով մեր այսքան դժընդակ կացութիւնը, իրենց բոլոր ուժով քաջաբար նետուեցան այս երկու խեղճ նաւերուն վրայ: Սոսկալի ու ուժգին կռիւ մը սկսաւ, եւ բիւրաւոր այս խաժամուժէն անանկ գոռում գոչում մը կը բարձրանար որ, դժոխքին մէջն էինք կարծես: Անթիւ անհամար հրացանակի գնդակներ եւ նետեր կը տեղացնէին եւ այնչափ ալ ռումբ ու հրացան: Այս դժնդակ ու դաժան կռիւը առ նուազն ժամուկէս տեւեց եւ սակայն երկու կողմերէն ոչ մին մեծ առաւելութիւն մը շահեցաւ: Մեր նաւերը կրցան ետ դառնալ եւ եօթանասուն երկու թրքական նաւերն ալ գացին իրենց խորշը: Այդ օրը ոչ ցամաքի ոչ ալ ծովու վրայ նոր բան մը պատահեցաւ, միայն Թուրքերը մեծ ուրախութիւն կատարեցին տխար Եաքօմօ Քօքոյի նաւը ընկղմելնուն համար: Անհաւասիկ թէ ինչ մեծ դժբախտութիւն յառաջ բերաւ Ճենովացիներուն, այս Հաւատքի թշնամիներուն մատնութիւնը, զոր Թուրքին աչքին հաճոյ երեւալու համար կատարեցին»:

Երկու վենետիկեան նաւերու եւ թրքական ամբողջ տորմիղին միջեւ մղուած այս սարսափելի կռիւը, անգամ մըն ալ քրիստոնեայ նաւերուն անվիճելի գերազանցութիւնը ի հանդէս բերաւ․ Թուրք չափազանց բազմաթիւ բայց մեծութեամբ ալ չափազանց տկար նաւերուն վրայ։ Ասով հանդերձ, փոքրը անյաջող եղած էր, ի մեծ ցաւ Յոյներուն ու Լատիններուն հաւասարապէս, որոնք ապրիլ 20ի նաւային կռիւէն ի վեր ծովու վրայ անյաղթելի կը համարէին իրենք զիրենք։ Հիմա անօգուտ տեղը իրենց լաւագոյն պատերազմիկներէն ութսունէն իննսուն հոգի զոհ տուեր էին, մինչ Թուրք նաւերէն մէկը միայն ընկղմած էր, որովհետեւ անոնք կրցեր էին արագօրէն մարել միւսներուն վրայ սկսած հրդեհը։

Պարպարոի եւ միւս բոլոր ժամանակագիրներուն գրեթէ նմանօրինակ պատմութիւններէն կը հետեւի որ եթէ Քօքօ անհամբերութեամբ առաջ չանցնէր եւ եթէ ամէնէն առաջ երկու խոշոր նաւերը սկսէին կռիւը, ձեռնարկը յաջողութեամբ պիտի պսակուէր, մանաւանդ որ, ինչպէս տեսանք, այս երկու նաւերը մինակնին կրցան ժամ ու կէս դիմադրել ամբողջ թրքական տորմիղին առանց ո եւ է վնասի։

Ոսկեղջիւրի մէջ թուրք տորմիղին ներկայութեան սարսափելի անպատեհութիւնը, աւա՜ղ, շուտով ցոյց տուաւ իր պտուղները, որովհետեւ այս բանը ստիպեց պաշտպաններէն մաս մը անշարժ մնալ ու գիշեր ցերեկ հսկել այս նոր վտանգին դէմ․ «Յոյները, կ՚ըսէ Կրիտոպուլոս, տեսնելով իրենց ծրագիրին ձախողիլը, ալ ուրիշ բան չկրցան ընել եթէ ոչ պարիսպին բարձունքէն վիրգերով ռմբակոծել Ոսկեղջիւրի մէջ խարիսխ նետած թուրք նաւերը, արգիլելով որ իրենց խորշէն դուրս ելլեն։ Եւ սակայն ամէն օր քրիստոնեայ նաւերէն մէկ քանին կը բաժնուէին Շղթային ետեւը շարուած իրենց տորմիղէն ու կը հալածէին ու թող չէին տար որ Թուրք նաւերը նաւահանգիստին մէջ ո եւ է վնաս գործեն։ Երբեմն մինչեւ ծովեզերք կը հալածէին զանոնք։ Թուրք նաւերը երբ մօտենային իրենց տեղին, իրենց կարգին յարձակողականի կը սկսէին, ու ռումբ կ՚արձակէին քրիստոն-

ճայ նաւերուն վրայ: Ամէն օր կը պատահէին նաւահան-գիստին մէջ հեռուէ հեռու այս կռիւները»:

Այս պարտութեան առաջ բերած տխրութիւնը, իրենց մեծ մեծ յոյսերուն այսպէս ցաւագինօրէն յօդս ցնդիլը, այս առիթով Վենետիկցիներու եւ Ճենովացիներու միջեւ յառաջ եկած բուռն վիճաբանութիւնները, որոնք փոխադարձաբար իրար կ'ամբաստանէին իբր մատնիչ ու վատ, եթէ կարելի է այսպէս ըսել,սատիճան մը եւս աւելցան նոր անռելի դէպքի մը պատճառով: Քօքոյի նաւերէն քառասունի չափ նաւազներ աղէտին պահուն յաջողեր էին լողալով մինչեւ ծովեզերք հասնիլ: Հոն, Թուրքերը անմիջապէս ձերբակալեցին այս դժբաղդ պատանիները, ու մերկացուցած, ձեռքերնին կըռ-նակնուն կապած պարիսպին առջեւ տարին ու հոն, ծովե-զերքին վրայ, Սուլթանին հրամանով, իրենց զէնքի ընկեր-ներուն աչքին առջեւ, որոնք պարիսպին բարձունքէն, կա-տաղութենէ դողալով՝ անզօր հանդիսատես կ'ըլլային այս բանին, խողխողեցին զանոնք: Թէթալտի կ'ըսէ՝ «իրենց յե-տոյքէն սուր ցիցերու զարկին», ու թէ անոնց մէջ դժբաղդ նաւուն սպաներէն ալ կային:Այնքան զարհուրելի եղաւ պա-շարեալներու զգացած ցաւը որ կայսրը որոշեց արհւնալի վրէժ լուծել եւ իր հրամանով, իրարու կապած բազմաթիւ թուրք գերիներ, գրեթէ երկու հարիւր վաթսունի չափ, պարիսպին վրայ շարեցին ու ամէնէն բարձր որմածակերէն կախեցին, թուրք բանակին աչքին առջեւ, ճիշդ Վենետիկցի խեղճ նա-ւազներու չարչարուած տեղին դիմացը:

Բոլոր այս գերիներու ընդարձակ սատիճանի վրայ այս մահացումը յայտնի է որ անպատում սարսափով լեցուն տեսարան մը եղաւ:

Այս աղետալի անյաջողութիւնը, կ'ըսէ Ֆրանցէս, ճենո-վացիներու եւ վենետիկցիներու միջեւ բուռն վիճաբանու-թիւններու պատճառ եղաւ: Առաջինները կ'ամբաստանէին երկրորդները, մանաւանդ Քօքօն, թէ իրենց անկարողու-թեան պատճառով յառաջ բերին այս աղէտը: Կայսրը, հաս-կընալով որ վերջ ի վերջոյ գործը կռիւի պիտի յանգի, անճա-պարանօք անոնց մօտ գնաց եւ պաղատեցաւ որ այս անհ-

ռելի պատերազմին արդէն այնքան զարհուրելի սարսափներուն վրայ ներքին կռիւի մը նոր զարհուրանքն ալ չաւելցնեն, ու այնքան լաւ խօսքեր ըրաւ որ կրցաւ վերջապէս հանդարտեցնել զիրենք :

Բոլոր այդ օրերը, եւ ամսուն մնացեալ օրերն ալ Թուրքերը շարունակական յարձակումներ գործեցին ցամաքի կողմի պարիսպին դէմ: 18 ապրիլի իրենց առաջին յարձակման անյաջող վերջաւորութեան յաջորդեց, գրեթէ անընդհատօրէն. կատաղի թնդանօթաձգութիւն մը: «Թնդանօթները, կ'ըսէ Պարպարօ, վայրկեան մը չէին դադրեր որոտալէ, եւ երբեմն պարիսպին մէկ մասը կը փլցնէին, երբեմն ալ քաղաքը ինքնին մեծ վտանգի մէջ կ'իյնար. իսկ մենք, քաղաքին մէջ, ամէն պէտք եղած տեղերուն տակառներով, փայտէ ծողերով եւ հողերով նորոգութիւններ ըրինք, այնպէս լաւ կերպով որ առաջուանին նման, ճշմարիտ պարիսպի մը պէս ուժով կը կանգնէին նորէն:»

Հաւանական է որ, կ'ըսէ Բիրս, 23 ապրիլին, Թուրքերը մեծ թնդանօթը իր տեղէն հանած եւ Սէն-Ռօմէնի դրան դիմացը հաստատած ըլլան, այսինքն այն տեղը ճիշդ, ուր Ճիուսթինիանի իր խումբովը դիրք բռնած էր, եւ պատերը ամէնէն տկար եւ ամէնէն նուազ բարձր էին: Այդ վայրկեանէն սկսեալ, այդ հրէշային մեքենան վայրկեան մը չդադրեցաւ պարիսպին այս մասը ծեծելէ ու մինչեւ վերջն ալ շարունակեց այսպէս:»

Իր նաւատորմին Ոսկեղջիւրի մէջ այս գրեթէ ցնորական էջքէն յետոյ էր որ Սուլթանը այդ ծոցին խորը շինել տուաւ այն համբաւաւոր կամուրջը որ այնքան նեղութիւն պիտի պատճառէր թշուառ պաշարեալներուն: Թուրք զինուորները Ոսկեղջիւրի մէկ եզերքէն միւսը անցնելու համար ստիպուած էին ծոցին խորը գտնուող անհուն ճախճախուտներուն շուրջը բոլորակի դառնալ, որով ահագին ժամանակ կը կորսնցնէին. Թէ ատոր առաջքը առնելու եւ թէ երկու եզերքներուն հաղորդակցութիւնը դիւրացնելու համար Սուլթանը շինել տուաւ այս դիւրին տեղափոխուող կամուրջը, որ արեւելեան եզերքէն մեկնելով կը յանգէր դի-

մացի եզերքը, գրեթէ այն կէտին վրայ ուր ցամաքային մեծ պարիսպը կուգար Ոսկեղջիւրի պարիսպին կը կցուէր, այն ատեն Քինէկոն, իսկ այսօր Այվան Սարայ կոչուած տեղը: Այս այնքան արագօրէն հաստատուած կամուրջը շինելու համար գործածուեցան հազարէ աւելի խիստ խոշոր տակառներ, կամ աւելի ճիշտը փայտէ սնտուկներ, որոնք խիստ ամուր կերպով քով քովի շարած էին: Երկայնքէն իրարու կցուած երկու տակառ կը կազմէին կամուրջին լայնքը: Երկաթէ կեռերով ու չուաններով գերաններ հաստատեցին այս տակառներուն վրայ, եւ այդ գերաններուն վրայ ալ տախտակներէ պատուական ու հանգստաւէտ ճամբայ մը շինեցին որու վրայէն հինգ հոգի քով քովի կրնային քալել: Խիստ հաւանաբար երկու հազար ոտք երկայնութիւն ունէր այս կամուրջը, գրեթէ Ոսկեղջիւրի այդտեղ ունեցած լայնքը: Յայտնի է որ Սուլթանը միմիայն մէկ եզերքէն միւսը իր զինուորներուն անցնիլը դիւրացնելու համար չէ որ շինել տուաւ ասիկա, այլ նաեւ, ինչպէս կ'ըսէ Ֆրանցէս, իր երկրաչափները անոր կողերուն խոշոր ցած նաւեր կապեցին որոնց վրայ ռմբաձիգներ զետեղեցին, եւ ասոնց շնորհիւ կրցան գրեթէ երես երեսի ռմբակոծել Ոսկեղջիւրի երկայնքի ամբողջ ցած ու տկար պարիսպը։ Թնդանօթակիր ցռկանաւեր ալ, նոյնպէս կամուրջին քովը զետեղուած, իրենց գործունէութիւնը կը միացնէին այս ռմբաձիգներու գործունէութեան:

Երբ քաղաքին պաշտպանները առաջին անգամ ըլլալով տեսան Թուրք զինուորներու այնքան դիւրութեամբ պատրաստելը այս կամուրջը, նոր ու մեծ անձկութիւն մը զգացին ու անմիջապէս ըմբռնեցին թէ պարիսպին այս ամէնէն տկար մասին համար ի՜նչ մեծ վտանգ էր Թուրքերու շինած այս նոր յարձակման տեղը, մանաւանդ որ կը յիշէին թէ 1204ին, ճիշտ այս տեղէն էր որ քաղաքը անգամ մը գրաւուած էր: Եւ հակառակ պաշտպաններու այնքան նուազ թիւին, կայսեր ներկայութեամբ կայացած ժողովներու մէջ վճռեցին թէ անպատճառ անհրաժեշտ էր բոլոր պէտք եղած զոհողութիւնները ընել այս նոր վտանգին դէմ ամե-

նակորովի դիմադրութիւն ընելու համար: Որոշուեցաւ յոյն ու իտալացի լաւագոյն պատերազմիկներէն ուժեղ խումբ մը տեղաւորել ճիշտ այդ կէտին վրայ, այսինքն պատնէշին հիւսիս-արեւմտեան կէտին, որ իշխող դիրք ունէր այսօրուան Այվան Սարայի վրայ:

Այսօր, մենք դիւրաւ կրնանք գաղափար մը կազմել թէ ի՛նչ սարսափելի բաներ էին Միջին Դարու վերջերուն հանդիպող այս մեծ պաշարումները: Իրարմէ խիստ քիչ հեռաւորութեամբ կը պատերազմէին: Ոսկեղջիւրի նորակերտ կամուրջին վրայ հաստատուած Թուրք թնդանօթաձիգները եւ Աստուածապահ քաղաքին պարիսպին որմածակերուն ետեւ պահուըտած քրիստոնեայ թնդանօթաձիգները, հազիւ մէկ քանի մէթր հեռաւորութենէ իրար կը ռմբակոծէին: Խոշոր վիրգերու կտրած անցած միջոցը այնչափ կարճ էր որ երկու կողմի թշնամի զինուորները կրնային խօսակցիլ իրարու հետ, եւ մանաւանդ ամենազարհուրելի հայհոյութիւններ ունալ իրարու:

Թուրք նաւատորմը Ոսկեղջիւր մտնելէն ի վեր սոսկալի եղած էր պաշարեալներու վիճակը: Անհունապէս քիչ էին ասոնք ապահով կերպով պաշտպանելու համար պարիսպի այնքան ահագին տարածութիւն մը, մանաւանդ հիմա որ Ոսկեղջիւրի կողմէն քաղաքը պաշտպանող պարիսպին մասն ալ անհրաժեշտ էր պաշտպանել: Անհուն շրջապատին ամէն կէտերուն վրայ օրը հազար յարձակում վանելու սպառող եւ յուսահատեցուցիչ անհրաժեշտութեան մէջ կը գտնուէին, ու ասիկա ամէն վայրկեան, գիշեր ցորեկ: Ու մինչ օրէ օր իրենց թիւը կը քիչնար հետզհետէ, ընդհակառակն պաշարող բանակը հետզհետէ կ'աւելնար Ասիոյ կողմերէն թարմ թարմ հասնող անթիւ օգնականներով:

«Ամբողջ ապրիլ ամիսը այսպէս յարատեւ թնդանօթաձգութեամբ անցաւ, կ'ըսէ Պարպարօ: Մայիս առաջին եւ երկրորդ օրերն ալ նորէն, ոչ ծովու ոչ ալ ցամաքի վրայ նոր շարժում մը տեղի ունեցաւ, բացի տեւական ռմբաձգութենէն, որուն, իրենց սովորութեան համեմատ, Թուրքերը շարունակական գոռում-գոչումներով ու մանր կռիւներով:

կ'ընկերացնէին: Այդ օրերէն սկսեալ, կամաց կամաց ուտելիքները, մանաւանդ հացը, գինին եւ մարդուս պէտք եղած միւս կարեւոր պէտքերը սկսան պակսիլ:»

Պարիսպին պաշտպանները, առանց լուրջ հետեւանքներու, չէին կրնար ձգել հեռանալ իրենց տեղէն, երթալ կերակուր ուտելու համար, որովհետեւ հեռաւորութիւնները շատ խոշոր էին, եւ շատ պատերազմիկներ, իրենց տունը երթալ կերակուր ուտելու կամ իրենց ընտանիքին ուտելիք տանելու ստիպուած ըլլալնուն համար, կը գանգատէին չարաչար: Այս բանը կը դիւրացնէր պաշարողներու յարձակումներն ու անակնկալները: Կայսրը ջանաց կերակուր բաժնող տեսակ մը օգնութեան քոմիթէներ կազմելու ասով առաջքը առնել այս լուրջ անպատեհութեան։ Անոնք որ անկարող էին կռուելու, պաշտօն ստացան պատերազմիկներուն տանելու ամէնէն կարեւոր սնունդը, իսկ իրենց ընտանիքներուն ալ պէտք եղածը ապահովուեցաւ կայսեր կողմէ: Աւաղ, Թուրք բանակին ճակատը շարուած աղեղնաձիգ ու հրացանակիրներուն տեղ ամէն օր նոր պատերազմիկներ կը բռնէին, մինչ պաշտպան կողմի զինուորները միշտ միեւնոյններն էին ու քնաւ չէին հանգչեր: Պահեստի գունդի հրամանատար Դեմետրիոս Կանդագուզինոս հրաման ստացաւ օրը բազմաթիւ անգամներ պահակ պտտելու, քննելու համար թէ ամէն մարդ իր տեղը բռնա՞ծ է, ու դասալիք վատերը իրենց թաքստոցներէն հանելով իրենց տեղերը բերելու:

«Մայիս 3ին, կը պատմէ Պարպարօ. որոշեցին բաւական խոշոր բերնով երկու ռմբաձիգ զետեղել Ոսկեղջիւրի երկայնութեամբ տարածուող պատնէշին վրայ, այսինքն Թուրք նաւատորմին ճիշտ դիմացը եղող դրան մօտակայ կէտի մը վրայ: Ու յիշեալ ռմբաձիգները առանց կենալու ռմբակոծեցին Թշնամի նաւերը, այնպիսի կերպով մը որ Թուրքերը չկրցան այս խոշոր ռմբակոծութեան առաջքը առնել ու տեսնելով որ անոնք իրարու ետեւէ կ'ընկղմէին իրենց Ֆուստերը ու բաւականաչափ զինուոր կը սպաննէին, բերին երեք խոշոր ռմբաձիգ զետեղեցին նոյն կէտին դիմացը ու սկսան գիշեր ցորեկ պատնէշը ռմբակոծել: Թնդա-

նօթի սարսափելի կռիւ մը եղաւ ասիկա, որ առանց վայրկեան մը կենալու, գիշեր ու ցորեկ, տասը օր տեւեց, առանց սակայն ոչ մէկ կողմին մեծ վնաս պատճառելու, որովհետեւ Թուրք Թնդանօթները զօրաւոր գլանաձեւ կողովներով, իսկ մերիններն ալ պատնէշով պաշտպանուած էին: Անկէ զատ, հոս մեծ հեռաւորութեան վրայ կը ռմբակոծէին իրար:

«Արդ, կը շարունակէ վենետիկցի ժամանակագիրը, որ իրապէս մեր գլխաւոր աղբիւրն է այս դէպքերու նկարագրութեան մէջ, մեծապայծառ Կոստանդիանոս կայսրը— շատ հաւանական է որ մայիսի 3ին է ասիկա—սա խօսքերը ուղղեց մեր հրամատարներուն. «Տեարք հրամատարք, եւ դուք ամէնքդ, վենետիկեան ազնուականներ, բացայայտ է որ Վենետիկի իշխանապետութիւնը քաղաքիս պաշտպանութեան համար ո եւ է նաւ ղրկած չէ ինծի. հետեւաբար, ինծի այնպէս կ'երեւայ թէ անհրաժեշտ է որ փութով արագաշարժ նաւ մը ղրկենք Նէկրէփօնթի ջուրերը որպէսզի եթէ կարելի է հանդիպի ձեր նաւատորմին»: Անշուշտ կը յիշէք թէ, 26 յունուարին, Պոլսոյ վենետիկեան Պայլին հետ կընքուած համաձայնութեամբ մը, Արշիպեղագոսի մէջ խարըսխած Վենետիկի նաւատորմը մայրաքաղաքին օգնութեան պիտի գար անմիջապէս: Բայց ի դժբախտութիւն թշուառ պաշարեալներուն, խիստ երկար ատենէ ի վեր ոեւէ լուր չկար այդ նաւատորմէն, եւ ով գիտէ ինչ պատճառով ծովակալ Լօրէտան, քաջ զինուոր մը, չէր բերած այդ նաւատորմը: Կրնայ ըլլալ որ իշխանապետութեան հրամանը ձեռքը չէր հասած. սակայն պաշարեալներու միակ ու գերագոյն յոյսն էր անիկա: Ասոր համար է որ կայսեր փափաքը միաձայնութեամբ ընդունուեցաւ:

«Եւ նոյն օրն իսկ, կը շարունակէ Պարպարօ, միմիայն տասներկու նաւազներով գողնաւ մը զինեցին, եւ հրաման ըրին որ Տարտանէլէն դուրս սահի, մինչ Արշիպեղագոս, եւ երբ հոն հասնի, հարցնէ փնտռէ թէ ո՛ւր կը գտնուի մեր նաւատորմը, եւ երբ գտնէ զայն, ըսէ անոր հրամանատար Տիար Ցակոբոս Լօրէտանի, որ անճապարէ

 




**ՍՈՒԼԹԱՆ ՄԷՀՄԷՏԻ ՄԷՏԱՅԵՕՆԻՆ ԵՐԵՍԻ ԿՈՂՄԸ**

(1481ին շինուած Իտալացի Քոնսթանցօ արուեստագէտին կողմէ)

գայ Կոստանդնուպոլիս, որ ի փառս քրիստոնէութեան կը դիմադրէ կոր տակաւին, եւ թէ ազատօրէն, առանց Թրքական նաւատորմէն վախնալու, թող գայ»: Կէս գիշերուն, որպէսզի մթութենէն օգուտ քաղէ, յանդուգն պզտիկ գողանաւը ճամբայ ելաւ: Կայմին ծայրը Սուլթանին դրօշը կը ծածանէր եւ բոլոր նաւաստիները Թուրքի ձեւով հագուած էին: Հակառակ ամէն հաւանականութեան, այս խիզախ նաւազները, ճշմարիտ հերոսներ, որոնք ստոյգ մահուան մը կը դիմէին, յաջողեցան Ոսկեղջիւրէն դուրս ելլել առանց Թուրքերուն ուշադրութիւնը հրաւիրելու երբ գողանաւը դուրս ելլելու համար անոնք բացին նաւահանգիստին մուտքին ցցաթումբը: Արագընթաց այս փոքր նաւը, որ Արեւելքի մեծ մայրաքաղաքին վերջին յոյսը կը կրէր· լռիկ սահեցաւ ամբողջ Մարմարայի երկայնքէն, գրեթէ հրաշալիօրէն անվտանգ անցաւ Տարտանէլի նեղ անցքէն, եւ ա՛լ ազատ շունչ քաշելով, յառաջացաւ Արշիպեղագոսի խռովուն ալիքներուն վրայէն: Աւա՜ղ, շուտով պիտի տեսնենք թէ այս յանդուգն նաւաստիները չկրցան գտնել բնաւ ամէնուն այնքան փափաքած, այնքան սպասած վենետիկեան նաւատորմը: Նախախնամութիւնը չօրհնեց այսքան քաջասիրտ զոհաբերութիւնը, հայրենասիրական այսքան կորովը:

Հոս, միմիայն «Մոսկովեան անանուն ժամանակագրութեան» հեղինակը, որ հաւանաբար աչքերովը տեսած է այս մեծ դէպքերը, կը յիշատակէ բաւական տարօրինակ եղելութիւն մը, որ իր ըսելով, իբր թէ այս օրերուն պատահած է. «Սուլթանը, կ՚ըսէ, նոր ընդհանուր յարձակում մը հրամայած ըլլալով, պատրիարքը եւ կայսրութեան բարձրաստիճան պաշտօնակալներ, Ժան Ճիուսթինիանիի հետ համախորհուրդ, պաղատեցան կայսեր որ հեռանայ քաղաքէն եւ տեղ մը քաշուի. հոն, երբ իր փախուստին լուրը տարածուէր, անշուշտ իր եղբայրները եւ հաւանաբար Ալպանացիներն ալ պիտի կրնային իրեն օգնութեան գալ եւ թերեւս ասով պիտի կրնային վախցնել Սուլթանը եւ ստիպել զինքը որ վերցնէ պաշարումը: Ճիուսթինիանի, ալ աւելի ուժ տալով այս պաղատանքներուն, իր ցռկանաւերը կայ-

ակը տղամարդութեան տակ կը դնէր Պոլսէն փախցնելու համար զինքը»:

Դիւրաւ հասկնալի է կայսեր խորհրդատուներուն գաղափարը: Կը մտածէին թէ կայսեր՝ իր պաշարուած մայրաքաղաքէն դուրս գտնուիլը անհունօրէն կրնար օգտակար ըլլալ. այնպէս կը հաւատային թէ անգամ մը որ անոր փախուստը իմացուէր, Դեմետրիոս եւ Թովմաս դեսպոտներու բանակները, ինչպէս նաեւ կայսերական հողերուն վրայ հոս ու հոն ցրուած բոլոր ազգային ուժերը պիտի հաւաքուէին իր քով, թերեւս պիտի կրնար նաեւ ալպանիացի փառաւոր պետին՝ Իսկէնտէր Պէյի հետ ալ համաձայնիլ, որ ինքը անձամբ բերէ, կամ թէ ղրկէ իր զինուորներէն բանակ մը: Ո՞վ գիտէ թէ կայսրը երբ այսպէս նոր զօրագունդերով յանկարծ պաշարող բանակին կռնակէն երեւար, Սուլթանը պաշարումը չպիտի վերցնէր, մանաւանդ որ արդէն քաղաքին կործանիչ ինքնապաշտպանութիւնը քիչ քիչ վհատեցնելու սկսած էր այս ծայր աստիճան դիւրազգած իշխանը: Իրաւ ալ, նոյն այս պատմութեան հեղինակը կը հաստատէ թէ Սուլթանը մէկ քանի անգամներ արդէն մտքէն անցուց ետ քաշուիլ: Ամէն պարագայի մէջ, եթէ պաշարումը վերցնել տալու չյաջողէին ալ, կայսեր Թուրք բանակին ետեւը գտնուիլը գոնէ թոյլ պիտի տար Վենետիկի պապին եւ ամբողջ քրիստոնէութեան նաւատորմին, այս ատեն սպասուած նաւերուն, որ վերջապէս հորիզոնին վրայ երեւան:

«Կայսրը, կը շարունակէ Մոսկովեան ժամանակագրութիւն»ը, լռիկ մտիկ ըրաւ իր խորհրդատուները, եւ արցունք թափելով, սա պատասխանը տուաւ անոնց. «Ձեր խորհուրդ պատուական է, շնորհակալ եմ ատոր, եւ գիտեմ նաեւ թէ ձեր առաջարկածը մեր դատին համար շատ օգտակար կրնայ ըլլալ, եւ ինչպէս շատ լաւ կ՚ըսէք, ամէն բան կրնայ պատահիլ, բայց երբեք, երբեք չպիտի կրնամ այսպիսի վտանգի մը պահուն, լքել իմ կղերականներս, իմ մայրաքաղաքիս սուրբ եկեղեցիները, իմ գահս ու իմ ժողովուրդս: Ամբողջ աշխարհ ինչ պիտի ըսէր ինծի: Ընդհակառակն, ես ալ կը պաղատիմ ձեզի որ ինէ խնդրէք որ բնաւ չի թողում ձեզ:

Այո՛. իմ փափաքս է ձեր ամէնուդ հետ մեռնիլ հոս»: Յետոյ գլուխը ծռեց ու դառնօրէն արտասուեց, ու իր հետ արտասուեցին նաեւ պատրիարքը ու բոլոր ներկաները. ու նորէն սուրհանդակներ ղրկեցին Մօրէա, կղզիները եւ Ֆրէնկներու երկիրը»: Անշուշտ գողանաւերին համար է ըսածը:

Այս ճշմարտապէս եղերական տեսարանը անվիճելի մեծութիւն մը ունի. որոշ կը տեսնենք հոս անքակտ դիւցազնական նկարագիրը վեհապետին, որ հազիւ քանի մը օրէն, իրաւ ալ պիտի զոհուէր իր ժողովուրդին համար։ Այս քաջերու մէջ քաջ Իշխանը շատ անգամ կ'ըսէր թէ «Բարի հովիւին նման իր կեանքը իր հօտին պարտական էր»:

«Մայիսի հինգերորդ օրը, կ'ըսէ Պարպարօ, չար Թուրքը խոշոր ռմբաձիգներ զետեղեց Բերայի բլուրին գագաթը, եւ անոնցմով, Բերայի վրայէն, սկսան ռմբակոծել Շղթային ետեւ գիզուած մեր նաւերը։ Օրերով, առանց կենալու, շարունակուեցաւ այս ռմբակոծութիւնը. Թուրքերը երկու հարիւր լիպրա ծանրութեամբ վիրգեր կ'արձակէին: Երրորդ վիրգը—հակառակ որ Թուրքերը կը ջանային միայն վենետիկեան նաւերը զարնել—Կալաթայի դրան մօտը երեք հարիւր թոնօնոց ճենովական նաւու մը վրայ ինկաւ, որ Իտալիա մեկնելիք մետաքսի եւ ուրիշ ապրանքներու խիստ հարուստ բեռով մը լեցուն էր, մօտաւորապէս տասներկու հազար դուկատ արժէքով: Նաւը անմիջապէս իջաւ ջուրին յատակը, քանի մը ճենովացի նաւազներ ալ խեղդուեցան»։ Այս հոյակապ յաջողութիւնը շատ քէֆը բերաւ Թուրքերուն, որոնք ալ հիմա վստահ էին թէ դիւրաւ եւ արագօրէն պիտի կրնային իրենց ռմբաձիգներով ծովուն յատակը ղըրկել թշնամի նաւերը: Հիմա մէկ մտածում միայն ունէին, ջախջախել Ոսկեղջիւրը պաշտպանող քրիստոնեայ նաւատորմը: Ատոր համար է որ կատաղօրէն շարունակեցին ռմբակոծումը: Բայց Պարպարօ կը պատմէ որ քրիստոնեայ նաւերը անմիջապէս Շղթային քովէն հեռանալով, անգամ մը եւս գացին ապաստանեցան բուն իսկ Կալաթայի պատնէշին տակը. հոն իրենց չէին կրնար վնասել թշնամի վիրգերը, որոնցմէ հարիւր երեսունէն աւելի արձակուեցան

Ասով հանդերձ ումբակոծութեան վնասները, թէեւ քիչ համեմատութեամբ, շարունակուեցան նորէն, եւ ամէն օր խոալական նաւերը կամ քանի մը մարդ կը կորսնցնէին կամ մեծ ու պզտիկ վնասներ կը կրէին։ Վերջապէս, յարատեւ եւ ցաւագին հսկողութիւն մը պէտք էր։ Միակ զոհ մը սակայն, կին մը սպաննուեցաւ Կալաթայի մէջ։

Ճենովացիները, որոնք այնքան ջանացեր էին Թուրքերուն հետ աղէկ ըլլալու, չափազանց վշտացան թշնամի ռմբաձիգներու այս անտրամելի գործողութենէն, որով իրենց նաւերէն մին ընկղմեր էին։ Գացին Սուլթանին գանգատելու։ «Կ'ուզենք չէզոք մնալ, ըսին, եւ մեր երկու կրակի մէջ գտնուելու սարսափելի կացութեան մէջ մէկ փափաք մը միայն ունինք, այն է խաղաղ ապրիլ երկու կռուող կողմերուն հետ։» Դուկաս կը պատմէ թէ անոնք ըսին նաեւ որ եթէ իրենց բարեկամութիւնը չըլլար, Սուլթանին նաւերը քիչ մը դժուար կ'անցնէին Բերայի բլուրէն ու Ոսկեղջիւր կը մտնէին, եւ թէ իրենցմէ միայն կախում ունէր որ քրիստոնեաները ամենայն դիւրութեամբ այրէին բոլոր այդ նաւերը։ Ինչպէս կը տեսնէք, խիստ անպիտան խօսքեր են ասոնք եւ կը սիրենք յուսալ թէ այս տեսակ խօսքեր չըրին անոնք։

«Սուլթանը եւ իր խորհրդականները, կը շարունակէ Դուկաս, պատասխանեցին թէ չէին գիտեր բնաւ թէ՝ ո՛ր ազգին կը պատկանէր իրենց ընկղմած նաւը եւ թէ թշնամի նաւ մը կարծած էին զայն իրենք, եւ խնդրեցին Ճենովացիներէն որ Կոստանդնուպոլսոյ դէմ իրենց գործողութիւններուն յաջողութեանը համար աղօթք ընեն եւ խոստացան որ երբ վերջնականապէս յաջողին, առատօրէն պիտի վճարեն ընկղմած նաւուն տիրոջ վնասները։» Իսկ եթէ Ֆրանցէսի պատմածին նայինք, որ մեզի աւելի ճշմարտութեան մօտ է, Սուլթանը անհունօրէն նուազ սիրալիր պատասխան մը տուաւ անոնց. «Այդ նաւերը, ըսաւ զարհուրած Ճենովացիներուն, վաճառականական նաւեր չեն բնաւ, այլ ընդհակառակն ծովահէնի նաւեր. անոնք բնաւ առեւտուր ընելու գաղափարով չեն եկած հոս, այլ միայն իմ հակառակորդիս,

կայսեր օգնութիւն բերելու: Անոր համար թշնամիի տեղ պիտի դնեմ ու ըստ այնմ պիտի վարուիմ անոնց հետ: Իսկ դուք, որ բարեկամներս էք, խաղաղութեամբ գացէք ձեր գործին:»

Այսքան աղէտներ, Թուրք նաւերը այրելու համար այնքան մանրամասնօրէն պատրաստուած փորձին անյաջողութիւնը, քաղաքին պաշտպանութեան համար Վենետիկցի օգնականներէ պահանջուած աշխատութեան օր ըստ օրէ աւելնալը, եւ մանաւանդ Ճենովացիներու բռնած դիրքին այս ատտինան երկդիմութիւնը այնքան վառեցին այս երկու ազգերու քաղաքացիներուն միջեւ տիրող դարաւոր ատելութիւնը որ ամենածանր խռովութիւններ սկսան, ու բուռն ապստամբութիւն մը արիւնոտեց Կոստանդնուպոլսոյ փողոցները: Երկու ազգերն ալ իրար կ'ամբաստանէին թէ պէտք եղած պատուախնդրութեամբ չի պաշտպաներ քաղաքը, այլ միայն առաջին պատեհ առիթով իր նաւերը փախցնելը կը խորհի: Այս ամբաստանութիւնները ջրելու համար Վենետիկցիները կը յիշեցնէին թէ իրենց նաւերուն թիակները հանած են եւ առագաստներով ու կազմածներով միասին քաղաքին մէջ պահած: Ճենովացիներն ալ կը պատասխանէին թէ թէեւ այդ տեսակ բան մը չեն ըրած իրենք, բայց անոր փոխարէն իրենք ալ իրենց կիներն ու զաւակները ունին Կալաթայի մէջ, եւ թէ աշխարհի մէջ ոչ մէկ բանի համար կը լքեն Արեւելքի մէջ իրենց շահերուն համար այսքան կարեւոր տեղ մը, ու կ'աւելցնէին թէ եթէ խաղաղութեան մէջ են Սուլթանին հետ, (որուն հետ լաւ վարուելնին արդէն ամէնէն աւելի գէշ կ'երեւար Վենետիկցիներուն աչքին), կայսեր հետ համաձայնութեամբ ու անոր որոշ փափաքին վրայ էր որ այդպէս կը վարուէին: Բոլոր այս բացատրութիւնները սակայն ոչ մէկը համոզեցին. եւ երկու ազգերն ալ համոզուած էին թէ իրենց հակառակորդ կողմը իր անմիջական շահուն միայն կը մտածէր եւ ուրիշ ոչինչ: Գալով այս ամբաստանութիւններու ամենածանրին, այսինքն թէ Ճենովացիները լուր տուած ըլլան Սուլթանին, իր նաւերը այրելու համար քրիստոնեաներու կազմած ծրա-

գրի մասին, Ճենովացիները ցասմամբ կը բողոքեն անոր դէմ: Ու կը հաւաստէին թէ այս աղետալի անկարողութեան միակ պատճառը Բօքոյի խօլ անխոհեմութիւնն էր, որ գործողութեան յաջողութեան ամբողջ փառքը եւ օգուտը ինք վաստկելու համար ամենապատրաստական նախազգուշութիւնները անգամ զանց ըրած էր ձեռք առնելու: Համոզիչ փաստերու չգոյութենէն, հակառակորդները փողոցներուն մէջ կռուելու սկսան: Ու գործը մինչեւ իրար խողխողելու պիտի գար, երբ կայսրը, աղմուկին ձայնէն վազելով, արտասուագին անոնց միջեւ նետուեցաւ, եւ ամենակարող Աստուծոյ անունով խնդրեց որ ներքին կռիւի մը սարսափը չաւելցնեն արտաքին պատերազմի մը վրայ: Ու շատ խօսելէ ու սրտաշարժ ճարտասանութենէ յետոյ յաջողեցաւ ատելութիւնները լռեցնելու եւ Վենետիկցի ու Ճենովացի համոզելու որ մի միայն հասարակաց պաշտպանութեամբ զբաղին: Այսով հանդերձ խուլ ատելութիւն մը նորէն մնաց երկու ազգերուն միջեւ մինչեւ վերջնական աղէտը:

«Մայիս վեցերորդ օրը, կ'ըսէ Պարպարօ, որ միշտ մեր լաւագոյն առաջնորդն է պաշարման օրը օրին ժամանակագրութեան մէջ, նշանաւոր դէպք մը չը պատահեցաւ, միայն ռմբակոծումը անընդհատ շարունակուեցաւ ցամաքային պարիսպին դէմ, եւ ինչպէս միշտ, Թուրքերը գոռացին, գոչեցին եւ ծնծղաներու խլացուցիչ աղմուկով ահ ու սարսափ ձգեցին պաշարեալներուն մէջ:»

«Մայիս 7ին, միշտ նոյն ժամանակագրին ըսելովը, երեսուն հազար Թուրքեր կատարեալ կարգապահութեամբ, յարձակման սանդուղներով ժամը գիշերուան չորսին ամբոխները խոյացան պարիսպին վրայ, յուսալով յանկարծակիի բերել պաշարեալները, որոնք բնաւ չէին սպասեր ասանկ բուռն յարձակումի մը: Ամբողջ երեք երկար ժամեր տեւեց կատաղի կռիւը: Ամենայետին ուժգնութեամբ կռուեցան, եւ Յաւիտենական Տէրը այս անգամ ալ ուժ եւ օգնութիւն տուաւ մերիններուն, եւ Թուրքերը քաջաբար ետ մղեցինք, որոնք ամօթահար եւ մեծ վնասներով քաշուեցան գացին

դիւնքներ ալ ունեցան, բայց երբեք վտանգի մէջ չդրին պաշտպանութեան գործը: Ամէնքն ալ թէեւ իրարու մէջ անհամաձայն, բայց հասարակաց թշնամիին՝ Թուրքին դէմ միացած կռուեցան միշտ:» Արդէն ամէնէն հրամայական պահանջը կար այդ կերպ շարժել տալու իրենց, ամէնուն ալ կեանքին փրկութիւնը ատկէ կախուած էր: Ուստի եւ այս անհամաձայնութիւններուն պատմութիւնը մեծ կարեւորութիւն մը չունի: Տարակոյս չկայ որ Յոյներն ու Լատինները, Վենետիկցիներն ու Ճենովացիները ամէնէն մահացու ամբաստանութիւնները ըրին իրարու դէմ. Ճենովացիները մանաւանդ, որոնք Կալաթայի մէջ երկու կռուողներուն մէջտեղը ամենափափուկ կացութեան մը մէջը կը գտնուէին՝ շատ անգամներ իբր դաւաճան ամբաստանուեցան, բայց բոլոր այս պարագաները ժամ մը իսկ առաջ չի տարին վերջնական աղէտը: Երբ այնքան սարսափեցնող Թուրքը յարձակումի կը վազէր կամ պատնէշը կը ռմբակոծէր, ամէն կրօնքէ եւ ամէն ցեղէ պաշարեալները իրենց վէճերը մոռնալով դէպի պարիսպ կը վազէին միասին իրենց գերագոյն ապաստանարանը պաշտպանելու համար: Իրաւ է որ պաշարման առաջին օրերուն վենետիկեան նաւազներու խումբ մը ամբաստանուեցաւ իբր թշնամիին ապրանք փոխադրող եւ անոնց գաղտնի փախուստը դիւրացնող, բայց կայսեր կորովի ընթացքը զանոնք շուտով կարգի բերաւ եւ անկէ ի վեր մինչեւ պաշարման վերջը Վենետիկցիներուն ընթացքը բացարձակապէս ուղիղ եղաւ: Պատմենք նաեւ պաշարման վերջին օրերուն սա յատկանշական անէքտոթը: Ժամէ ժամ վերջնական յարձակումին կը սպասէին եւ պաշտպանութեան հերոսը, Ժան Ճիուսթինիանի որ վայրկեան մը իսկ դադրած չէր յարձակողներուն ամէնէն հիանալի դիմադրութիւնը ընելէ՝ մեծ-դուքս Նօթարասէն շարունակ թնդանօթ ուզեր էր ինքզինքը պաշտպանելու համար Լիկոսի հովտին մէջ: Նօթարաս իբր թէ արհամարհանքով մերժեր է այդ պահանջը. «Թշուառական մատնիչ, պոռացեր է եղեր ատոր վրայ Ճիուսթինիանի, չեմ գիտեր ո՛վ կ'արգիլէ զիս որ հոս տեղնուտեղը քեզ սուրովս սպան-

նեմ»: Այս դէպքը արգելք չեղաւ որ երկու մարդիկը մինչեւ վերջը իրենց պարտականութիւնը կատարեն: Հակառակ ամէն ըսուածի, բոլորովին անհաւանական է որ այդ անարգանքէն ետքը մեծ դուքսը թուլութիւն ցուցուցած ըլլայ պաշարման վերջին օրերուն: Անուրանալի է սակայն թէ Յոյները իրենց էին նշանաւոր մարդոցմէն մէկուն եղած այդ անարգանքէն խորապէս նուաստացած կը զգային ինքզինքնին, ինչ որ խուլ հակառակութիւնները արծարծեց։

Իսկ Վենետիկցիք եւ Ճենովացիք իրարմէ կը նախանձէին երկար ատենէ ի վեր արդէն: Վենետիկցիները չէին կրնար մարսել Կալաթայի գրեթէ անկախ քաղաքին մէջ Ճենովացիներուն տիրապետող կացութիւնը, այս վերջիններն ալ չէին կրնար տանիլ Վենետիկցիներու կարեւոր դիրքը նոյն իսկ Պոլսոյ քաղաքին մէջ։ Կասկած չկայ որ Ճենովացիներուն ընթացքը անհունօրէն կասկածելի եւ աղտոտ էր եղած քանի քանի անգամներ. օրինակ Ռումէլի-Հիսարի բերդին շինութեան պահուն, զոր եթէ չկրնային ալ բոլորովին արգիլել, գոնէ մեծապէս կրնային վնասել, յետոյ Թուրքական նաւատորմին Բերայի ըլուրէն փոխադրութեան պահուն: Յոյն պատմիչներուն ըսածին նայելով, Ճենովացիները իբր թէ պարծեցեր են որ եթէ Սուլթանին բարեկամ չըլլային, շատ դիւրաւ կրնային այրել այդ նաւերը: Բայց մենք ջանանք արդար ըլլալ. իրենց կացութիւնը յունական սալին եւ իսլամ մուրճին մէջ՝ ճշմարտապէս շատ փափուկ էր: Յոյներուն համար էր իրենց բոլոր համակրութիւնը, բայց ստիպուած էին աղէկ երթալ Թուրքերուն հետ. եւ յետոյ՝ արդէն իսկ այնքա՜ն ծառայութիւններ մատուցած էին... «Նախ, կ՚ըսէ Պ. Բիրս, պէտք չէ մոռնալ երբեք որ պաշարման գլխաւոր հերոսը, Ժան Ճիուսթինիանի, Ճենովացի էր։ Այս կատարեալ պատերազմիկին եւ իր Ճենովացի զինուորներուն ուղղամտութիւնը, քաջութիւնը, գիշեր ցորեկ ամէնէն անհաւատալի յոգնութիւնները, ամէնէն զարհուրելի վտանգները կրելու անխոնջ եռանդնին՝ ամէն կասկածէ վեր է։ Դուկաս ինքն իսկ, որ օտարականները բնաւ չսիրեր, կ՚ըսէ թէ շատ մը Կալաթացի Ճենովացիներ Ճիուսթինիանին

դրօշին տակ քաջաբար կը կռուէին. կ՚ըսէ նաեւ թէ անոնցմէ շատեր ի նպաստ Յոյներուն սքանչելի լրտեսութիւն մը կ՚ընէին, իբր թէ Թրքական բանակին մէջ բան ծախելու համար պտըտելով եւ քաղած լուրերնին բերելով: Կալաթայի Բօտէսթան Պօլսոյ պաշարումէն քիչ ետքը կը գրէր թէ Բերայի ամբողջ բնակչութիւնը վերջին պահուն Ոսկեղջիւրը անցեր էր պաշտպանութեան նպաստելու համար:»

Գալով Յոյներուն այն ամբաստանութեան թէ Ճենովացիները գաղտնաբար լուր տուեր էին Թուրքերուն թէ փորձ մը պիտի ըլլար իրենց նաւատորմը այրելու, եթէ այդ տեսակ բան մը եղաւ իսկ, յայտնի է որ մէկ կամ մէկ քանի Ճենովացիներու մատնութիւնն էր ատիկա, եւ ոչ թէ ազգին կողմէ պաշտօնական մատնութիւն մը: «Ճենովացիներուն քաղաքականութիւնը բարձրաթռիչ քաղաքականութիւն մը չէր անշուշտ, կ՚ըսէ Պ. Բիրս: Ջերմօրէն կը փափաքէին որ Պոլիս Թուրքերուն ձեռքը չիյնայ, բայց նոյնքան ջերմօրէն կը բաղձային որ Կալաթան ողջ առողջ իրենց ձեռքը մնայ: Ուստի եւ կը խարխափէին»:

Իսկ Յոյներու դէմ եղած ամբաստանութիւններուն գալով, որոնց իբր թէ Հռոմի եկեղեցւոյն հետ միացման պատճառաւ հայրենասիրական եռանդը թուլցեր է եղեր, անոնք ալ չափազանցութիւն են: Իրաւ է որ Լէօնար, որ Յոյները կ՚ատէր, կ՚ըսէ թէ շատ մը Յոյներ հազար ու մէկ տեսակ պատրուակներ կը գտնէին պատնէշ չվազելու եւ մահը չի դիմագրաւելու համար, օրինակ՝ թէ իրենց ներկայութիւնը անհրաժեշտ էր տունը՝ ընտանիքին անդամները պաշտպանելու համար, անոնց օրապահիկը շահելու համար եւլն: Բայց անգամ մըն ալ կ՚ըսեմ որ բոլոր այս չափազանցուած իրողութիւնները մեծ ազդեցութիւն մը չունեցան:

Վնասը չափազանց մեծ էր մանաւանդ Լիկոսի հովիտին մէջ, ուր պարիսպը շարունակ ռմբակոծուած էր չորս ռըմբաձիգներէ, որոնցմէ մէկը ամէնէն մեծն էր: Պ. Բիրս կ՚ըսէ թէ տակաւին այսօր պարիսպը ճիշդ այդ տեղերուն վրայ գրեթէ բոլորովին անհետացած է, մինչ անոնց քովերը քիլօմէթրներով ամբողջովին կը կենայ: Լիկոսի հովիտին մէջ,

Օրպանի մեծ ումբաձիգին դրուած տեղին դէմը, պարիսպին վրայ, հազար երկու հարիւր ոտք երկայնութեամբ խրամ մը կար եւ կայ ալ տակաւին, Սուլթանին տաղաւարին ճիշդ դիմացը: «Պարիսպը հոս ամբողջովին քանդուած էր», կ՚ըսէ որոշ կերպով Կրիտոպուլոս: Ճիուսթինիանիի եւ իր երկու հազար զինուորներուն հիանալի պաշտպանութիւնը այդ անխուսափելի հետեւանքին չէր կրցած արգելք ըլլալ: Պոլիսն ա՛լ պաշտպանուած չէր: Վերջնական սարսափելի հաւանականութիւնը շատ մօտալուտ էր:

Արդէն պատմեցինք թէ ինչպէս պաշարեալները հիանալի ճարտարութեամբ ու ջանքերով՝ վիրգերէն կործանած պարիսպին տեղ ըստ բաղդի նոր պարիսպ մը շիներ էին ծառի ճիւղերով, որթետունկի կոճղերով, հողով եւ բոլոր ձեռքերնին ինկած նիւթերով: Այդ յանկարծ շինուած պատնէշին ետին, որ չորս հարիւր մէթր երկայնութիւն ունէր, ժողվուած էին քրիստոնեայ բանակին ընտրեալ, ծաղիկ մասը, հրամանատարութեամբ Ժան Ճիուսթինիանի հերոսին, պաշտպանութեան գործին ամէնէն կարկառուն դէմքին որու հիանալի արժէքը եւ զինուորական գերագոյն տաղանդը ամէնուն հիացումը կը գրաւէր, նոյն իսկ Սուլթանին, նոյն իսկ Վենետիկցի Պարպարօին, որ Ճենովացիները այնքան կ՚ատէր: Այդ անբաղդատելի պետը որու վրայ դրուած էր քաղաքին մէջ ամէնուն էն մեծ յոյսը, իր զինուորներուն գլուխը անցած այդ ափյափոյ շինուած պատնէշին պաշտպանութիւնը կը վարէր: Անոր քով էր կայսրը ինք անձամբ: Երկու բանակներուն մէջ ալ ամէն մարդ որոշ կերպով գիտէր թէ ժամէ ժամ վերջնական եւ մահացու կռիւը հոս տեղի պիտի ունենար, եւ եթէ ո՛չ միակ, գոնէ գլխաւոր թատրը պիտի հանդիսանար գերագոյն պատերազմին:

Այն կատարեալ զինուորական պետը որ Սուլթանն էր, Ապրիլի վերջէն ի վեր վայրկեան մը իսկ զանց առած չէր

մանրամասնաբար կազմակերպել այդ վիթխարի պարիսպին հսկայական եւ վերջնական յարձակումի գործողութիւնը: Ո՛ եւ է կանխապատրաստութիւն չէր մոռցուած: Անհուն մթերք մը նիւթեղէններու հաւաքուած էր արդէն, պատնէշն ի վեր շուլլուելու համար սանդուղներ, պարիսպին քարերուն կառչելու եւ զանոնք վար քաշելու համար կեռի ձեւով սարսափելի գործիքներ, յարձակողներու ոտքերուն տակ փոսերը լեցնելու համար խոտի ահագին խուրձեր :

Մայիս 26էն 27 լուսնալիք գիշերը Թուրք բանակը նախորդ գիշերուան պէս հազարաւոր մեծ լոյսեր վառեց, որոնք ամբողջ հորիզոնը լուսաւորելով՝ կը սարսափեցնէին պաշարուած բնակչութիւնը: Մինչեւ արեւուն ծագիլը Սուլթանին զինուորները յաղթութեան ահարկու աղաղակներ արձակեցին որոնք մինչեւ ասիական եզերքը կը լսուէին եւ ամէնքը սարսափնուն կը սառեցնէին: Ո՛չ ոք քնացաւ դըժբաղդ քաղաքին մէջ։ 27ին ամբողջ օրը ռմբակոծութիւնը շարունակուեցաւ՝ նորէն փլցնելով պարիսպ ու աշտարակ: Իրիկունը Սուլթանին հրամանով նոյն անհամար կրակները վառուեցան.թրքական բանակին մէջ: Հազարաւոր ջահեր կը լուսաւորէին այդ պատերազմիկ խուժանին վայրագ դէմքերը եւ սարսափ կը տարածէին քաղաքին մէջ ուր այն գիշերն ալ ո՛չ ոք քնացաւ:

Ֆրանցէս, այդ օրերը Պոլիսը իբր թէ լուսաւորող եւ պաշարեալները սարսափեցնող խորհրդաւոր լոյսին առթիւ կը պատմէ թէ պաշարման ամենավերջին օրերուն լուր տարածուած էր թէ ո՛չ միայն իտալական օգնական նաւատորմ մը Տարտանէլի կը մտնենար արդէն, այլ թէ հունգարական մեծ բանակ մը օգնութեան կուգար հերոս Ժան Հինեատի, «սարսափելի սպիտակ ասպետին, Վօյվօտ Եանքօ»ի ինչպէս կ'ըսէին Թուրքերը, հրամատարութեամբ: Ըստ ոմանց, այս քրիստոնեայ օգնական ոյժը արդէն անցած էր Դունուբը եւ արագօրէն կը քալէր Ս.-Պոլսոյ վրայ: Ֆրանցէս, ապահովաբար չափազանցութեամբ կ'ըսէ թէ Սուլթանը եւ ամբողջ թրքական բանակը, արդէն իսկ յուսահատ բոլորովին անօգուտ անցնող կռիւի այդ երկար շաբաթներէն, սարսափե-

ցան մնացին այդ լուրէն, արդէն իսկ պաշարումը վերցնելու տրամադրուած կարծելով ինքզինքնին: Աւա՜ղ, ասոնք ամէնը պարապ խօսքեր էին. ո՛չ մէկ նաւատորմ, ո՛չ մէկ քրիստոնեայ նաւ հորիզոնին վրայ չերեւցաւ: Ընդհակառակն թէ Ժօռժ Պրանքովիչ Սերպիոյ դեսպանը եւ թէ Վլատիսլաւ Հունգարիոյ նոր թագաւորը Մէհմէտ Բ.ի տղայական դեսպաններ ղրկեցին որ զինքը ապահովցնէ իրենց նպատակներուն մասին:

Գալով Հունգարացիներուն, անոնց պետը՝ Հունիատ, փափաքելով օգնութեան գալ Յոյներուն, պատգամաւորներ ղրկած էր Սուլթանին եւ խնդրած էր որ ջնջուած նկատէ տասնեւութ ամիս առաջ իրարու հետ երեք տարուան համար կնքած խաղաղութեան դաշինքնին: Բայց բնականաբար, Մէհմէտ, նախ երկար ատեն գործը ձգձգելէ յետոյ, մերժած էր. այս առաջարկը այս կ'ր պոլ Սերպերու եւ Հունգարացիներու բոլոր այս "բանակցութիւնները ո եւ է ազդեցութիւն չէին ունեցած կռուին վերջնական արդիւնքին վրայ:

Գահ բարձրացած Վլատիսլաւ թագաւորին կողմէ, իր գահակալութիւնը ծանուցանող նոր դեսպանութիւն մը 26 Մայիսին հասաւ Սուլթանին բանակատեղին: Այս վերջինը հանդիսաւոր ունկնդրութեան ընդունեց պատգամաւորը իր վրանին մէջ: Այս վերջինը յետոյ տեսակցութիւն մըն ալ ունեցաւ մեծ վեզիրին հետ, որուն կ'ընկերանային ամենաբարձր աստիճանով երկու փաշաներ: Դեսպանը, իր տիրոջ անունով, աղերսագին խնդրեց Սուլթանէն որ վերցնէ պաշարումը, եւ աւելցուց թէ հակառակ պարագային Հունգարիա պիտի ստիպուէր Յոյներու կողմը բռնել· Այնպէս կ'երեւայ թէ այս դեսպանութեան եւ մանաւանդ պատգամաւորին՝ արեւմտեան նաւատորմի մը գալուն շշուկին մասին մեծ վեզիրին խօսելուն վրայ է որ այդ օրերուն բոլոր թուրք բանակատեղիին մէջ շատ մը յոռետես լուրեր ծայր տուին:

Բոլոր այս անօգուտ բանակցութիւններէն, հոս միայն հետեւեալ մասնադէպը կ'ուզենք յիշատակել, որ եթէ ճիշդ է, շատ շահեկան լոյս մը կը սփռէ Յոյներուն հանդէպ, Հունգարացւոց տածած ճշմարիտ զգացումներուն վրայ:

Պատգամաւորը․ երբ պաշտօնական արտօնութեամբ մը, ներկայ կը գտնուէր ռմբակոծութեան, յանկած խնդալ սկսաւ Թուրք Թնդանօթներու պատճառած դոյզն վնասը տեսնելով: Յետոյ ինք անձամբ ապուշ կրթած Թնդանօթաձիգներուն բացատրեց Թէ՝ ի՛նչպէս նախ առաջին հարուած մը արձակելու էր, յետոյ նոյն գիծին վրայ եւ առաջին կէտէն ոչ շատ հեռու երկրորդ հարուած մը, իսկ վերջապէս երկրորդ հարուած մը, ճիշդ եռանկիւն մը կազմելու ձեւով: Առաջին փորձով իսկ վճռական արդիւնք մը տուաւ այս կերպը եւ պատը՝ յաջորդաբար այդ երեք մաթեմաթիքական կէտերուն վրայ երեք հարուածները ընդունելով, մեծաշառաչ փլաւ հետը մէկտեղ տանելով նաեւ Սէն-Րօմէնի դռան ամենամօտիկ աշտարակը: Այնքան խոշոր խրամատ մը բացուեցաւ որ պաշարող ու պաշարեալ երես երեսի կը տեսնէին իրար:

Ըսել է, իրաւ անհաւատալի, բայց ստոյգ պարագայ, նոյնիսկ պաշարման այս վերջին օրերուն, մինչ մեծատարած քաղաքը հոգեվարքի հռնդիւններուն մէջ կը հեւար, Սուլթանը եւ իր խորհրդականները ո եւ է ճիշտ տեղեկութիւններ չունէին բնաւ եւ իրարմէ այնքան տարբեր երկու ընտրութիւններու մէջ լրջօրէն կը վարանէին՝ այսինքն կամ կատարել վերջնական յարձակումը կամ վերջնականապէս վերցնել մեծ քաղաքին պաշարումը: Սա ալ ստոյգ կ՚երեւայ որ պաշարող բանակին մէջէն, շատեր, ըլլայ պետերէն, ըլլայ զինուորներէն, շաբաթներ տեւող ապարդիւն կռիւներէն յետոյ կորսնցուցեր էին իրենց քաջութիւնն ու յոյսը: Թուրք բանակին մէջ, սովորական դարձած էր կրկնել Թէ բնաւ կարելի պիտի չըլլար գլուխ ելլել այնքան քաջաբար պաշտպանուած այս անհուն պատնէշին հետ: Հաւատացած էին նաեւ Թէ Արեւմուտքի քրիստոնեայ իշխանները մեծ մայրաքաղաքին օգնութեան Թռչելու համար պատրաստութիւններ տեսնելու վրայ էին եւ երբեք Թոյլ պիտի չտային որ անիկա մահիկին լուծին տակ իյնար: Մէկ խօսքով բոլոր այն խելայեղ տարաձայնութիւնները որոնք Պոլսոյ փողոցներուն մէջ ամէնուն բերանն էին, Թէ հունգարական օգ-

նական բանակ մը ճամբայ ելած էր արդէն, թէ Պապը քրիստոնեայ տորմիղ մը ղրկած էր, որուն առաջին մասը արդէն Քիոս էր հասած եւայլն եւայլն, Թուրք բանակին մէջ ալ տարածուած էին։ Սուլթանը անգամ չափազանց ազդուած էր այս լուրերէն, եւ պաշարման այս վերջին օրերուն բարոյական խիստ ծանր ինքնալքումի մը ենթակայ էր եղած։ Նոյն իսկ աստուածային միջամտութեան մը այն նշանները որոնք նախ Յոյներուն սարսափ իսկ, Թուրքերուն մեծ յոյս ներշնչած էին, հիմա ընդհակառակն այս վերջիններուն կ'երեւային իբրեւ աստուածային պաշտպանութեան մը նշանները ի նպաստ Յոյներուն։

Եւ ինչպէս միշտ, այս անգամ ալ, Խալիլ փաշա, քրիստոնեաներու պաշտպանը, իր բարձր ազդեցութեան օգնութիւնը կը բերէր այս աննպաստ շշուկներուն։

Կարճ խօսելով, գործերը այն հազիւ հաւատալի աստիճանին հասան որ Մէհմէտ, տէրն ու իշխանը այս անհուն բանակին, որուն դէմ Յոյն կայսրը հազիւ քանի մը հազար յոգնաբեկ պատերազմիկներ կրնար հանել, այս հզօր թնդանօթներուն որոնք արդէն կիսովի կործանած էին հոյակապ պարիսպը, մայիսի այս վերջին մէկ երկու օրերուն, չի վարանեցաւ գերագոյն փորձ մը ընելու որպէսզի առանց կռիւի Պոլիսը յանձնուի իրեն։ Մայիս 23ին, Թուրք ձիաւորներ, դրօշակներ ծածանելով եւ թմբուկ զարնելով Սէն-Ռօմէնի դրան մօտեցան եւ արտօնութիւն ուզեցին որ Սուլթանին կողմէ յատուկ ղրկուած պատգամաւոր մը, որ իր տիրոջ մէկ նամակը ուղղակի կայսեր ձեռքը պիտի յանձնէր, ներս մտնէ։ Արտօնութիւնը տրուեցաւ։ Թուրք պատգամաւորը, Իսմայիլ Համզա Իսֆէնտիարօղլու, Սինոպի եւ Գասթամպօլուի էմիրը, եւ որդին հանգուցեալ Իսֆէնտիար-Խանի, իր ամուսնութեամբը, իր վեհապետին, Սուլթանին դաշնակիցը եղած էր։ Այս Իսֆէնտիար-Խաները երկար սերունդներէ ի վեր ամենաբարեկամական յարաբերութիւններ կը մշակէին կայսրերուն հետ եւ այդ է պատճառը որ Կոստանդիանոս կայսրը հին բարեկամի մը պէս ընդունեց զինքը։ Պատգամաւորը Կայսեր բացատրեց Սուլթանին իրեն

յանձնած պաշտօնը, այսինքն թէ քանի որ Կոստանդնուպոլսոյ բախտը անյոյս էր, Սուլթանը կը փափաքէր յարձակմամբ գրաւումէ մը յառաջ գալիք սարսափներուն առաջքը առնել, եւ կ'առաջարկէր Կայսեր որ ազատ համարձակ թողու Պոլիսը եւ իր ազնուականներով, իր արքունիքով եւ բոլոր իր գանձերով երթայ ուր որ ուզէ: Նոյնպէս Պոլսոյ բոլոր այն բնակիչներն ալ որոնք իրենց հարստութիւններով միասին պիտի փափաքէին հեռանալ քաղաքէն, պիտի կըրնային ազատօրէն մեկնիլ: Իսկ քաղաքը մնացողներուն ինչքերուն եւ ապահովութեան մասին ալ Սուլթանը երաշխաւոր կ'ըլլար: Ասոնցմէ զատ Սուլթանը Կայսեր Պելոպոնէսի վեհապետութիւնն ալ կը շնորհէր իր գերիշխանութեամբ: Իսկ եթէ Կայսրը մերժէր այս գերագոյն առաջարկները, ա'լ բռնի գրաւման եւ ընդհանուր կողոպուտի մը սարսափներուն միայն կը մնար իրեն սպասել: Բոլոր էրիկմարդիկը պիտի խողխողուէին եւ կիները, նորատի աղջիկներն ու տղաքը իբր գերի պիտի ծախուէին:

Իսմայիլ պաղատեցաւ Կայսեր որ ընդունի այս պայմանները, մանաւորապէս պնդեց Պոլսոյ յուսահատական պարագային վրայ, պատնէշը քանդուած կէս մը, պաշտպանները չափազանց քիչ ու սպառած, ժողովուրդը յուսահատ, եւ համոզուած թէ բոլոր այս թշուառութիւնները Միութեան հաստատմամբ Աստուծոյ դէմ թշուառական մեղանչողներուն երեսէն կը քաշէին:

Պոլսոյ մէջ շատ հաւատ չէին ընծայեր Սուլթանին այս առաջարկներուն, այլ ընդհակառակն անոր կողմէ կեղծ դիմում մը կը նկատէին եղածը, Յոյներուն ճշմարիտ զգացումները հասկնալու համար: Եւ յետոյ սա ալ ստոյգ է որ Սուլթանը այնպիսի պայմաններ կ'առաջարկէր, որոնց մասին արդէն վստահ էր թէ չպիտի ընդունէին: Ամէն պարագայի մէջ Իսմայիլի դեսպանութիւնը բոլորովին ձախողեցաւ եւ Կայսրը բարձրօրէն մերժեց Սուլթանին առաջարկները: Այս ազնիւ հոգիով օժտուած վեհապետը իր արժանապատուութեան եւ իր պարտականութիւններուն մասին շատ բարձր ըմբռնում մը ունէր, եւ Թուրք դեսպանութեան

*քացատրեց թէ ինչ շատ մեկին պատճառներով չէր կարող այսչափ նուաստացուցիչ ու անարդար պայմաններ ընդունիլ: «Ոչ իմ կարողութեանս, ոչ ալ հոս ոեւէ մէկուն կարողութեանը մէջ է, ըսաւ, այս քաղաքը յանձնելը: Ամէնքս ալ պատրաստ ենք մեռնելու եւ առանց ցաւելու պիտի ձգենք այս աշխարհը:»*

*Կոստանդնուպոլսոյ անձնատուր ըլլալու մասին ամէն յոյս կորսնցուցեր էր Սուլթանը եւ վճռած էր ամէն գինով վերջացնել գործը: Մայիս 27 կիրակի կամ նոյն իսկ 26 շաբաթ օրը, Մէհմէտի ներկայութեամբ բանակին մէջ պատերազմական մեծ ժողով մը գումարուեցաւ: Երկու հակառակ կարծիքներ պաշտպանուեցան: Մին մեծ վէզիր Խալիլ փաշայի կողմէ ճարպիկ ու կորովի, բայց միեւնոյն ատեն անպատմելի նենգամիտ անձնաւորութիւն մը, որ Սուլթանէն յետոյ առաջին կարգը կը գրաւէր ժողովին մէջ, իսկ միւսը Զական փաշայի կողմէն, որ մեծ վէզիրին կատաղի հակառակորդն էր: Ծանօթ է մեզի թէ թշնամութիւններու սկիզբէն իսկ, Խալիլ փաշա, յառաջացեալ տարիքով մարդ, շարունակ հակառակ երեւցած էր պաշարման, արեւմտեան միջամտութենէ մը վախնալով: Ասկէ զատ քրիստոնեաներուն գաղտնօրէն բարեկամ մարդու համբաւ մըն ալ ունէր, այնպէս որ, թէեւ անիրաւ տեղը, կ'ամբաստանէին զինքը թէ կը դաւաճանէր իր տիրոջ: Շատ պատմագիրներ ստոյգ կը նկատեն ասիկա: Ասկէ զատ, Մէհմէտ բնաւ չէր սիրեր զայն, որովհետեւ ան էր որ իր հօրը՝ Սուլթան Մուրատին խորհուրդ տուած էր զինքը Մաղնիսա աքսորելու: Թէեւ դիմադրութեան բացարձակապէս հոգեվարք վիճակի մէջ գտնուելուն պատճառաւ անհաւատալի կ'երեւայ մեզ այս բանը, սակայն Խալիլ, այս պահուն իսկ, որոշակի արտայայտուեցաւ պաշարումը վերցնելու իմաստով: Երկայն ճառով մը յիշեց թէ սկիզբէն ի վեր եւ շարունակ ինք դէմ կեցած էր այս զինուորական մեծ գործողութեան, եւ թէ երկար ատենէ ի վեր անոր ցաւալի վախճանը գուշակած էր:*

Իր կարծիքով շատ ուժեղ կերպով պաշտպանուած էր Պոլիսը եւ Յոյներու ու Լատիններու սերտ միութիւնը յաջողութեան ամէն յոյս կը չքացնէր: Եւ նոյն իսկ եթէ կարելի ըլլար գրաւել քաղաքը, Արեւմուտքի ժողովուրդներն ու վեհապետները բնաւ չպիտի մարսէին այս տեսակ նախատինք մը: Ամէնքն ալ իրարու ետեւէ պիտի հասնէին, ու ամէնէն առաջ հունգարական բանակը ու վենետիկեան տորմիղը: Նոյն իսկ Ճենովացիները, հակառակ չէզոք մնալու իրենց այժմեան ճիգերուն, ճակատագրականօրէն կռուին պիտի խառնուէին եթէ պատերազմը երկարէր: Խալիլ վերջացուց իր ճառը, խրատելով իր տէրը որ, քանի ժամանակ է դեռ ապահով կերպով ընելու այդ բանը, վերցնէ պաշարումը եւ հեռանայ (*): Վերջապէս ի՞նչ պէտք կար խանձելու ժամանակէն առաջ ծառէն վար առնելու համար այս հոյակապ պտուղը, որ հասունցածին պէս, արդէն ստոյգ որս մը պիտի ըլլար Սուլթանին:

Ալպանացին Զականփաշա, որ Սուլթանէն ու Խալիլ փաշայէն անմիջապէս յետոյ երրորդ տեղը կը գրաւէր Թուրք կայսրութեան մէջ, տարիքով աւելի պզտիկ էր վէզիրէն: Երկուքն ալ զարհուրելի մախանքով լեցուած էին իրարու հանդէպ: Եւ ի հեճուկս Խալիլ փաշայի, Զական ամենաքուռն հակառակորդ էր քրիստոնեաներուն: Խօսք առաւ իր կարգին եւ ուժգին ճառով մը պահանջեց իր բաւական յուսահատած վեհապետէն որ նոր ամենակորովի թափով յարձակողականի վերսկսի:

Աղեքսանդրի օրինակը յիշեց որ շատ աւելի քիչւոր քանակով մը Ասիան աշխարհակալեց եւ Արեւմուտքէն գալիք ո եւ է օգնութիւն անկարելի գտաւ, քրիստոնեայ վեհապետները իրարմէ բաժնող տեւական անհամաձայնութիւնները յառաջ բերելով: Երկարօրէն կանգ առաւ այս վէճերուն վրայ, մանաւանդ իտալական իշխանութիւններու իրա-

---

(*) Թէթալտի կ'ըսէ թէ՝ Թուրք բանակին մէջ գտնուող քրիստոնեաները նետերու ծայրը թուղթեր կը կապէին ու քաղաք կը նետէին ժամէ ժամ ժողովին մէջ խօսուածները իմացնելով անոնց:

րու հետ մղած փուճ վիճաբանութիւններուն, եւ ըսաւ թէ անոնք երբեք չպիտի յաջողէին ո եւ է օգնութեան տորմիղ հասցնելու Կայսեր. նոյն իսկ այդ պարագային, պատերազմիկներու շատ աւելի խոշոր զանգուած մը անոնց դէմ կը հանենք, աւելցուց:

Ամէն բան արդէն Պոլսոյ մօտալուտ անկումը կը գուշակէր, հետեւաբար պէտք էր քաջ սիրտ ու յանդգնութիւն ունենալ, ամենաբուռն յարձակողականը եւ ամենաանգութ ումբակոծութիւնը շարունակել, խրամատներու թիւը կըրկնապատկել, եւ բացարձակապէս լքել եւ դառնալու ո եւ է կամէութիւն:

Բանակին բոլոր ամէնէն երիտասարդ պետերը, ընդ որս եւ ծերուկ Թուրախան փաշա, Թրակիոյ զօրաբաժիններու, այսինքն Պաշը-պոզուքներու հրամանատարը, Ներքինապետ Շէյխ Աք-Շէմսէտտին էֆէնտի որ պետութեան գլխաւոր անձնաւորութիւններէն մէկն էր, գիտնական Իւլէմա Ահմէտ Քուրանի ծափահարեցին այս բոցաշունչ ճառախօսութիւնը: Սուլթանը՝ այս միաձայնութենէն վերացած, ու Զական փաշայի ճառէն գերագրգռուած, բոլորովին փոխուեցաւ. «Իմ նախորդներէս ո՞վ, գոչեց, երբեք իմ զօրութիւնս ունեցած է»: Ու հրամայեց Զական փաշայի որ նոյն գիշերն իսկ զինուորներու տեսակ մը ընդհանուր հարցապնդումով բանակին կարծիքն ալ իմանայ: Զոկան փութկոտութեամբ կատարեց այդ հրամանը: Ամբողջ բանակը շրջեցաւ եւ ամէն տեղ բոլոր զօրաբաժինները ցնծագին հաւաքուած գտաւ, որոնք ալ ամէն ինչ վերջացնել կ'ուզէին, եւ անմիջական յարձակում կը պահանջէին:Զական փաշա իր քննութիւնը աւարտելով Սուլթանին քով գնաց եւ հաւաստեց անոր թէ այս աստիճան հրաշալի զինուորներ իր կատարեալ վստահութեան արժանի էին եւ անպատճառ պիտի տանէին վերջնական յաղթանակը:

Արդ, Զական փաշայի բոցաշունչ տեղեկաբերութիւնը Սուլթանին վերջին վարանումներուն ալ յաղթեց, եւ այս վերջինը յայտարարեց թէ անմիջապէս պիտի սկսուի վերջին յարձակումը: Այս վայրկեանէն, Մէհմէտ՝ միշտ հաւատարիմ կրօնքի եւ անմիջական գործունէութեան իր սովորութեանց

ուրիշ նպատակակէտ չունեցաւ ալ եւ իր ժամանակին իւրաքանչիւր վայրկեանը սարսափելի գործողութեան իրականացումին յատկացուց:

«Ամէն բան իր փափաքին համաձայն գտաւ, կ'ըսէ Կրիտոպուլոս, եւ տեսաւ թէ ո եւ է արգելք չիկար վերջնական յարձակումը սկսելու: Որովհետեւ թէ ներքին եւ թէ արտաքին Պարիսպին մինչեւ հիմերը քանդուած էին, փոսը լեցուած էր եւ Ոսկեղջիւրը եւ իր պատնէշները այն աստիճանին հասեր էին որ անոնց վրայ յարձակումը կարելի էր ալ, որ հիմա պատնէշին ամբողջ շրջապատին վրայ պիտի կատարուէր: Սանդուղները, փայտէ դղեակները եւ բոլոր մագլցելու յատուկ գործիքները սքանչելիօրէն կազմ ու պատրաստուած էին:» Ցիսուն օրէ ի վեր կը տեւէր պաշարումը. եւ սա, կեղծ կամ ճշմարիտ, եւ կամ դիտմամբ տարածուած տարաձայնութիւնն ալ հասած էր Սուլթանին ականջին թէ քրիստոնեայ օգնական տորմիղ մը հասած էր Քիոս: Հետեւաբար օր մը իսկ յետաձգել կարելի չէր յարձակումը:

## ԳԼՈՒԽ Է.

*Երկու կողմի գերագոյն պատրաստութիւնները.— Սուլթանին եւ Կայսեր ճառերը.— Մայիս 28ի գիշերային հսկումը.— Այա-Սոֆիայի մեծաշուք արարողութիւնը. Կայսեր վերջին ծիարշաւըՄեծՊարիսպին երկայնութեամբ:*

Մայիս 27ի այդ Կիրակի օրը պաշարման վերջընթեր օրը պիտի ըլլար: Սուլթանը կանուխ ելեր էր, գերագոյն պատրաստութիւններուն հսկելու: Նախորդ օրը, այս յաջորդ օրուան համար ամբողջ բանակին ընդհանուր ծոմապահութիւն յանձնարարած էր: Նոյնպէս հրովարտակ հանած էր որ իւրաքանչիւր պատերազմիկ կատարէ անպատճառ կանոնական եօթը լոգանքները. ասկէ զատ, երեք օր շարունակ հանդիսաւոր աղօթքներ պիտի ըսուէին ամբողջ բանակին մէջ յարձակման յաջողութեան համար: Նոյն առտուն իսկ հրամայեց իր հրետանիներու պետերուն որ խոշոր ռմբաձիգներու ամբողջ կրակը կեդրոնացնեն Լիկոսի ձորին պարիսպին խրամատը պաշտպանող նոր շինուած պատին վրայ: Ասկէ զատ իր պահապան զօրքին զօրաբաժինները որոշ, երբեմն հազար հոգի պարունակող, գունդերու բաժնեց եւ ամէնուն ալ վերջնական յարձակման մասնակցելու համար յառաջ խաղալու ժամեր որոշեց: Այս բաժիններէն ամէն մէկը ժամանակ մը կռուելէ յետոյ ետ պիտի քաշուէր եւ՝ իր տեղը թարմ ու նոր զօրաբաժնի մը պիտի ձգէր: Բնական է որ այնքան քիչւոր պաշտպանները չպիտի կրնային միշտ նորոգւող այս թարմ խումբերու նմանօրինակ յաջորդութեան մը դիմադրել:

Սուլթանը, առանց ո եւ է կէտ մը զանց առնելու, անձամբ այցելեց այս անհուն շրջանակը: Ոսկեղջիւրէն մինչեւ Մարմարա, այս զարհուրելի բանակատեղիին ամբողջ երկայնութեամբը, ամէն մէկուն քաջալերիչ խօսքեր շռայլեց, հրա-

մանները անձամբ տեսաւ պետերուն, ու մանրամասնօրէն աչքէ անցուց ամէնէն նուրբերը կատարուած կարգադրութիւնները: Միեւնոյն ատեն, պատգամաւորներ ղրկեց Գալաթայի ձենովացիներուն որ չըլլայ թէ ո եւ է, նոյն իսկ գաղտնի օգնութիւն հասցնեն պաշարեալներուն: Իր մունետիկները, ամբողջ բանակին մէջ, ամէն կողմ կանչեցին թէ զօրքերը, յաղթութենէն յետոյ երեք օր կողոպտելու իրաւունք ունէին: Ցաւիտենական Աստուծոյ, Մուհամմէտի, եւ չորս հազար մարգարէներուն անունով, իր հօրը Սուլթան Մուրատի հոգիին եւ իր զաւակներուն գլխուն, իր սուրին վրայ Սուլթանը հանդիսաւոր երդում կուտար թէ վերջնական յաղթութենէն յետոյ, անհուն քաղաքին ամբողջ բնակչութիւնը՝ էրիկ մարդ, կին ու մանուկ, բոլոր գանձերը եւ անոնց պարունակած բոլոր հարստութիւնները, վերջապէս բոլոր ինչ որ գտնէին հոն, զինուորներուն բաժին պիտի ըլլար:

Այս այնքան վայրագ նկարագրով յայտարարութիւնը Թուրք ամբողջ բանակին կողմէ անհուն եւ ոչ նուազ վայրագ յափշտակութեամբ ընդունուեցաւ: Աղմկալից, խելայեղ ծափահարութիւններ ողջունեցին ամենազօր վեհապետին իր բանակին տուած կողոպուտի եւ գերութեան այս ահաւոր խոստումը, որ մահուան ղօղանջը կը հնչեցնէր շքեղ եւ դարերու փառքով պարծենցող մայրաքաղաքին: «Ա՛հ, եթէ դուք ալ մեզի պէս իմանայիք մինչեւ երկինք բարձրացող անոնց տեւական գոռում գոչումը՝ «Լա իլահ իլ ալլահ, Մուհամմէտ րէսուլ ուլլահ», (Միակ Աստուած մը կայ եւ Մուհամմէտ անոր մարգարէն է), դուք ալ պիտի սաշէիք,» կը գոչէ Լէօնար արքեպիսկոպոսը։

Այդ կիրակի օրը մինչեւ իրիկուն, մինչ Թուրք բանակին մէջ ամէն մէկ զինուոր մահուան սպառնալիքի տակ կ'երթար իր տեղը կը գրաւէր յարձակման համար գերագոյն պատրաստութիւնները տեսնելու, ռմբաձիգները վայրկեան մը չի դադրեցան գոռալէ, ինչպէս գոռացեր էին նախորդ օրերը, եւ ինչպէս պիտի գոռային տակաւին յաջորդ օրն ալ: Մեծ Թնդանօթը Լիկոսի ձորին նորոգուած պարիսպին

*վրայ երեք հարուած արձակեց, որոնց երրորդը ցած գլորեց քրիստոնեաներու այս վերջին ապաւէնին կարեւոր մէկ մասը:*

*Բոլոր ժամանակագիրներէն Մոսկովեանը միայն այս առիթով կը պատմէ թէ այդ պահուն Ժան Ճիուսթինիանի առաջին անգամ ըլլալով վիրգի բեկորէ մը այնքան ծանր կերպով վիրաւորուեցաւ որ ստիպուեցան քաղաք տանիլ զինքը, բայց հետեւեալ առտու կրցաւ բժշկուիլ եւ նորէն պարիսպ դառնալով անձամբ հսկեց նորոգութեան գործին:*

*Իրիկունը, արեւին մարը մտնելէն յետոյ, նախորդ գիշերուան պէս, Թուրք բանակին մէջ նորէն վառեցին կրակներն ու ջահերը եւ զարհուրելի լուսավառութիւնը նորին շրջապատեց ամբողջ վշտագին քաղաքը: Օսմանեան հազարաւոր զինուորները, որոնք մինչեւ իրիկուն փոսը լեցնելու համար ամենազգի նիւթեր՝ հող, մացառ, որթի ճիւղ եւլն էին հաւաքեր, յարձակման սանդուղներ շիներ, ու բոլոր պէտք եղած մեքենաները կազմ ու պատրաստ վիճակի մէջ դրեր էին, այս հրաշալի բոցավառութենէն եւ այնքան մերձաւոր յարձակման յոյսովը գերագրգռուած, վերսկսան արձակելու այն սոսկալի գոչումները, այն զարհուրելի ռռնոցները որոնք այնքան կը դողացնէին Կոստանդնուպոլսոյ թըշուառ կիները, եւ իրենց ամենօրեայ ծոմապահութենէն կազդուրուելու եւ կռիւին առեն կայտառ գտնուելու համար անհուն խնջոյքներ սարքեցին:*

*Այս անհուն լուսավառութեան մէջ, բոլոր այս շեփորներու, սրասրինգներու եւ կիթառներու, այս մեծ ու փոքր թմբուկներու եւ հարիւր ուրիշ գործիներու սարսափելի ժխորը, այս ռռնոցներուն խառնուելով անգամ մըն ալ պաշարեալ բնակչութիւնը պատնէշին վրայ վազել տուաւ, որ ի տես այս անհուն բոցին, պահ մը կարծեց թէ Թուրքերուն վրանները եւ ռազմամթերքը հրոյ ճարակ կ՚ըլլային: «Բայց», կ՚ըսէ Դուկաս, երբ հասկցան թէ ո եւ է տակնուվրայութիւն չկար թշնամի բանակին մէջ, այլ ընդհակառակն, չի կրցան ուրիշ ոչինչ ընել եթէ ոչ պաղատագին խնդրել Աստուծմէ որ այս աստիճան գարշելի կորուստէ մը փրկէ զի-*

ջրենք:» Լուսավառութիւնը մինչեւ կէս գիշեր տեւեց. ճիշդ այդ վայրկեանին, իրենց վառուելէն աւելի յանկարծակիօրէն, այս հազարաւոր կրակները մարեցան եւ Թուրք բանակատեղին ամենակատարեալ մութի մէջ ինկաւ: «Կրօնական այս աստիճան մոլեռանդութեան առջեւ զարհուրած, կը գոչէ Լէօնար, աղօթելէ եւ արտասուելէ, եւ ամէնքս մէկ՝ կին, էրիկ մարդ ու տղայ հանդիսաւոր թափորով Սուրբ Պատկերները քաղաքին մէջ պտտցնելէ, եւ Աստուծմէ մեզի օգնութիւն գալու համար պաղատելէ ուրիշ բան չէինք կարող ընել:»

«Այդ նոյն երկուշաբթի օրը, կը պատմէ Պարպարօ, մեր խեղճ պարիսպին ամբակոծութիւնը այն աստիճանին հասաւ որ անդրաշխարհային բան էր կարծես: Մենք, քրիստոնեաներս, ցամաքային պարիսպին որմածակերէն կախելու համար եօթը սայլակ կրկնոցակ շինեցինք: Եւ պարիսպին տակը տարինք, հոն մեր Տիար Բայլը Յոյներուն հրամայեց որ շուտով պարիսպին վրայ հանեն զանոնք: Բայց անոնք այն աստիճան յամառութեամբ դրամ ուզեցին այդ փոխադրութիւնը կատարելու համար որ մենք՝ Վենետիկցիներս ստիպուեցանք մեր քսակէն վճարել զանոնք: Այդ պատճառով կրկնոցակները գիշերը հազիւ հասան պարիսպին վրան, եւ չի կրցանք զանոնք զետեղել որմածակերուն առաջքը, եւ հետեւաբար զրկուեցանք անոնց տալիք օգուտէն Յոյներու ընչաքաղցութեան պատճառով:

«Այդ միեւնոյն օրը տակաւին, կէսօրին, Տիար Բայլը հրաման ըրաւ բոլոր Վենետիկցիներուս. որ ի սէր Աստուծոյ եւ ի փրկութիւն քաղաքին եւ քրիստոնէութեան, ամէնքս ալ ցամաքային պարիսպին վրայ երթանք, հոն բարի կամեցողութեամբ մնանք եւ եթէ պէտք ըլլայ մեռնինք մեր տեղերը: Եւ ամէնքս ալ յօժարակամ հնազանդեցանք Տիար Բայլին, եւ միանգամայն նաւահանգիստին մէջի մեր բոլոր նաւերը եւ մանաւանդ Շղթան կռուի պատրաստ վիճակի մէջ դրինք: Միշտ միեւնոյն օրը, երկուշաբթի առտուն, Թուրք Սուլթանը, տասը հազար ձիաւորներով արշաւեց գնաց մինչեւ Երկու-Սիւները, ուր իր նաւատորմը կը գըտ-

նուէր եւ կարգադրութիւններ ըրաւ վերջնական յարձակումին ատեն անոր բերելիք օժանդակութեան մասին:»

Անբաղդ Պալթաօղլուի յաջորդ ընդհանուր ծովակալ Համուզա հրաման ստացաւ իր նաւերը շարելու Մարմարայի ծովեզրին երկայնութեամբը, Սուրբ-Եւգինէոսի դռնէն մինչեւ Սամաթիոյ Թաղին դիմացովը: Ասկէ զատ սանդուղներ ալ պիտի պատրաստէր, որպէսզի ամէն գինով փորձէր իր նաւերուն կամուրջներուն բարձունքէն պարիսպին այդ մասին վրայ մագլցին: Գոնէ, եթէ ատոր չի յաջողէր ալ, իր տենդոտ պատրաստութիւններով եւ իր կեղծ յարձակումներով պիտի ջանար որ պաշարեալները կարելի եղածին չափ աւելի մարդ քաշէին ցամաքային պարիսպին վրայէն եւ յատկացնէին իր դէմի պարիսպին պաշտպանութեան:

Սուլթանը իր հրամանները տալէ ետքը, կէս օրէն յետոյ դարձաւ իր բանակատեղին: Նոյն օրը, Թերեւս վերադարձին ճամբուն վրայ իսկ, Բերայի ճենովական բնակչութեան գլխաւորները ժողովի կանչեց եւ խստօրէն հրամայեց որ ո եւ է պատրուակով ո եւ է օգնութիւն չի հասցնեն Յոյներուն: «Աս ալ ընելէն յետոյ կը շարունակէ Պարպարօ, Թուրք իշխանը իր ցամաքի եւ ծովու բարձրաստիճան պետերուն հետ խնջոյքի նստաւ, եւ իրենց սովորութեան համեմատ ամէնքն ալ գինովցան: Խնջոյքը մինչեւ արեւուն մարը մըտնելը շարունակեց, ուրկէ յետոյ Սուլթանը դարձաւ իր բանակատեղին:»

«Պարպարօ ամէն բան չըսէր, կ'ըսէ Բիրս. իրականութեան մէջ, Սուլթանը Բերայի Ճենովացիները ընդունելէ յետոյ, Ոսկեղջիւրի ծայրէն անցաւ եւ անգամ մըն ալ ձիով ընդհանուր քննութենէ մը անցուց պարիսպին ամբողջ անհուն երկայնութիւնը, Ոսկեղջիւրի ծայրէն մինչեւ Մարմարա, եւ իր անթիւ անհամար զօրագունդերը, բոլորովին վստահ ըլլալու համար թէ անհրաժեշտ բոլոր պատրաստութիւնները աւարտած են: Անցաւ իր բանակին երեք մեծ զօրաբաժիններու ճակատէն՝ Եւրոպական գունդերը Խարաճայի հրամանատարութեամբ, Միրիանտրիօնի եւ Մէզօթէյիոնի դէմը բանակած տասներկու հազար Եէնիչէրիներու ընտրեալ



ՊՈԼՍՈՅ ՄԷՋ ՊԱՀՈՒԱԾ՝ ՇՂԹԱՅԻ ՀԱՏՈՒԱԾ ՄԸ, ՈՐ ԵՐԿԱՐ ԱՏԵՆ 1453ԻՆ ՈՍԿԵՂՋԻՒՐԻ ՄՈՒՏՔԸ ՓԱԿՈՂ ՇՂԹԱՆ ԿԱՐԾՈՒԱԾ Է

(Այսօր աւելի կը կարծուի որ այս շղթան Հռոդոսի նաւահանգիստին շղթան է, զոր Թուրքերը այդ կղզին գրաւելէ ետքը Պոլիս բերին)

գունդերը, եւ Թօփ-Գաբուէն մինչեւ ծովը վրան զարկած ասիական գունդերը: Այս զօրաբաժիններէն ամէն մէկը յիսուն հազար զինուոր կը պարունակէր ։ Կատարելապէս պատրաստ էր ամէն ինչ:»

«Իր նաւատորմին ու իր բանակին այս գերագոյն քննութենէն յետոյ, կ'ըսէ Կրիտոբուլոս,Սուլթանը իր տաղաւարին առջեւ հաւաքեց կայսրութեան բոլոր մեծերը, որոնք միշտ զինքը կը շրջապատէին,սատրապները ու գլխաւոր զօրավարները, գումարտակներու հրամանատարները, զօրաբաժիններու հրամանատարները, գունդերու, ջոկատներու եւ դասակներու պետերը եւ ստորին սպաները, բոլոր պահապան զօրքը եւ Եէնիչէրիները, նաեւ նաւերու հրամանատարներն ու տեղակալները եւ նաւատորմին միւս մեծերը, եւ այդ հաւաքոյթին առջեւ գրեթէ սա խօսքերը խօսեցաւ:

Այդ ճառը ամփոփելէ առաջ, անմիջապէս ըսենք որ Կրիտոբուլոսի Սուլթանին բերանը դրած այդ խօսքերը. իրենց վայրագ անկեղծութեան մէջ ճշմարտութեան մեծ շունչ մը ունին եւ վայրկեանին հանդիսաւոր պարագաները կը նկարեն ճշգրտօրէն ։ Սուլթանը տուած էր իր գերագոյն որոշումը. հիմա պէտք էր հետեւաբար որ իր հաւատարիմ տեղակալներուն բացատրէր իր յատակագիծը եւ այդ յատակագիծէն յառաջ գալիք հրամանները, եւ մանաւանդ բոցավառ խօսքերով անոնց առջեւ թուեր բոլոր այն պատճառները, որոնց համար պէտք էր ամենախօլ քաջութեամբ եւ յանդգնութեամբ պատերազմիլ:

Սուլթանին այս ճառը շատ երկար է, հոս անոր էական մասերը միայն կը համառօտեմ. «Ձեզ հոս չհաւաքեցի, ըսաւ իր տեղակալներուն, ձեր քաջութիւնը արծարծելու համար: Տեւականօրէն ունեցաք դուք այդ քաջութիւնը արդէն եւ ձեր զինուորներուն ալ կրցաք զայն հաղորդել: Իմ միակ նպատակս է ձեզի ցուցնել այն անթիւ անհամար հրաշալի վարձատրութիւնները որոնց պիտի արժանանաք յաղթական յարձակումէն ետքը: Նախ եւ առաջ. այս հրաշալի քաղաքը լեփլեցուն է ամէն տեսակ անսահման հարստութիւններով որոնք կայսեր պալատը ինչպէս

նաեւ ազնուականներուն եւ ուրիշ անճատներուն պալատները կը լեցնեն: Աւելի հրաշալիները լեցուած են եկեղեցիներուն մէջ որոնք լեցուն են ոսկիէ եւ արծաթէ մասնատուփերով որոնց վրայ անգին մարգարիտներ եւ թանկագին քարեր ագուցուած են: Ամէն տեղ թանկագին կարասիներ պիտի գտնէք, ոսկիէ եւ արծաթէ ամաններ եւ անոնց երջանիկ տէրերը պիտի ըլլաք: Յետոյ շատ մը բարձր մարդոց տէրը պիտի ըլլաք որոնց մէկ մասը իբր գերի պիտի գործածէք եւ մնացեալներն ալ պիտի ծախէք շատ սուղ: Յետոյ ամէնէն գեղեցիկ մարմինները ունեցող շատ մը հրաշալի կիներ, ազնուական ընտանիքներու պատկանող դեռահաս աղջիկներ որոնց տակաւին մարդու աչք չէ նայած ձեր իրաւունքը պիտի ըլլան: Ուզածնիդ իբր կին կամ իբր գերի պիտի գործածէք: Մնացեալները պիտի ծախէք: Ուրեմն մէկ անգամէն թէ հեշտանք, թէ ծառայութիւն եւ թէ հարստութիւն պիտի շահիք: Նաեւ պիտի տիրանաք Բիւզանդիոնի ամէնէն ազնուական ընտանիքներուն պատկանող շատ մը աղուորիկ մանչերու:»

Յետոյ Սուլթանը իր խանդավառ ունկնդիրներուն նըկարագրեց Պոլսոյ պալատներուն եւ պարտէզներուն գեղեցկութիւնները: Յետոյ կողոպուտին հրապոյրներով անգամ մըն ալ անոնց աչքը շլացնելէ յետոյ՝ խօսեցաւ այդ տեսակ պատմական մեծ ու կարեւոր քաղաքի մը տիրանապետութեան վրայ: Մասնաւորապէս շեշտեց թէ ա՛լ ո՛ եւ է դժուարութիւն չէ մնացած զայն գրաւելուն մէջ քանի որ իր պարիսպները արդէն այն աստիճան փլած էին երեք տեղի վրայ որ նոյն իսկ ամէնէն մեծ ձիաւորներու խումբը կրնար անցնիլ անկէ: «Արդէն ներսէն փախչողները ինծի ըսին թէ հազիւ երկու երեք մարդ կայ իւրաքանչիւր աշտարակի պաշտպանութեան համար եւ այդքան մըն ալ մէջտեղի միջոցներուն համար:»

Յետոյ այդ յարձակման միջոցին իր գործադրելիք մէքոտին վրայ խօսեցաւ. «Որոշեցի, ըսաւ, շարունակաբար եւ անդադար կերպով նոր թարմ ոյժեր ղրկել սպառած եւ յոգնած թշնամիին վրայ որ չպիտի կրնայ դիմադրել այդ

շարունակ վերանորոգուող յարձակումին: Գերագոյն կռիւը չպիտի դադրեցնեմ մինչեւ որ անոնք ամէնքն ալ իյնան... Յաղթանակը ապահով է մեզի համար: Նոյնիսկ եթէ սկիզբները ուժգնօրէն դիմադրեն՝ իրենց փոքր թիւը պատճառ պիտի ըլլայ որ չկարենան փայլուն դիմադրութիւն մը ընել երկար ատեն... Իմ մասիս, վերջացուց ճառը, կ'երդնում որ ձեր գլուխը անցած ես անձամբ պիտի կռուիմ եւ իմ աչքովս պիտի տեսնեմ ձենէ իւրաքանչիւրին ընթացքը»:

Ստորին կարգերու սպաները այս ճառէն ետքը մեկնեցան. միմիայն զօրապետները մնացին որոնց իւրաքանչիւրին իր մասնաւոր եւ վերջնական հրահանգները տուաւ Սուլթանը:

Համուտ կամ Ճամուզա ծովակալին հրամայեց որ ծովին կողմէ պարիսպը պաշարէ իր նաւերով, որոնք այնքան պէտք էր մօտենային պարիսպին որ կարելի ըլլար պաշտպանները նետահար ընել: Այդ միջոցին նաւաստիներուն մնացեալ մասը պիտի ջանար պարիսպին մօտենալ եւ պատերն ի վեր մագլցելու համար զրահապատ մարդոց խումբեր ղրկել սանդուղներով:

Զիա փաշա հրաման առացաւ իր բոլոր զինուորներովը անցնիլ Ոսկեղջիւրի ծայրի կամուրջէն եւ ուժգնութեամբ յարձակիլ այդ կողմի պարիսպներուն վրայ յենլով նաւատորմին այն մասին վրայ որ Ապրիլ 21ի գործողութենէն ի վեր հոն կը գտնուէր:

Գարաճա փաշայի կ'իյնար ամենակարեւոր պաշտօնը՝ յարձակման նշանը տրուելուն պէս իր բոլոր զինուորները նետելու փոսին մէջ այն կէտին վրայ ուր կը գտնուէր գլխաւոր խրամներէն մին, հաւանաբար Թէքֆուր-Սէրայի եւ Ս.-Պոլսոյ դրան միջեւ:

Իսաք փաշա եւ Մահմուտ փաշա որոնք Ասիական գունդերուն կը հրամայէին՝ պարտաւոր էին իւրաքանչիւրը իր բանակին գլուխը անցած՝ ճիշդ իրենց դիրքերուն դէմը յարձակում գործել, երրորդ զինուորական դրանը մօտ: Մինչդեռ իրենց զինուորներէն մէկ մասը պիտի ջանային սանդուղներով պատերն ի վեր ելլել՝ միւսները աղեղներով,

խաղաղեղներով եւ հրացաններով զինուած՝ պաշտպանուողները պիտի ծածկէին իրենց նետած զանազան նիւթերով.—վերջապէս սատրազամ Խալիլ փաշա եւ Գարաճա փաշա ինչպէս ըսինք, Սուլթանին վրանին շուրջ գտնուող պահակազօրքին հրամայելով՝ խրամներուն ամէնէն կարեւորին յարձակումը պիտի գործէին, Սէն-Ռօմէնի դրան յարձակումը, հոն ուր կը կռուէին Ժան Ճիուսթինիանիի Իտալացիներուն թանկարժէք փաղանգը: Սուլթանը ինք անձամբ կռիւի պիտի առաջնորդէր իր բանակին այդ ընտրեալ մասը:

Պարպարօ կը պատմէ Մայիս 28ին կատարուած վերջնական պատրաստութիւնները: Այդ օրը Սուլթանին հրամանով ամէն մէկ զինուոր իր գործին գլուխը գնաց «առտուընէ մինչեւ գիշեր Թուրքերը շարունակ սանդուղներ բերին եւ զանոնք պատերուն մօտ դրին, ընդամէնը երկու հազար հատ, յետոյ մանաւանդ վահաններ բերին որոնք դուռի ձեւ ունէին, որպէս զի սանդուղները պարիսպին դէմ տնկած ատեննին՝ անոնցմով ծածկուին, վերջապէս նետերու ճշմարիտ լեռներ դիզեցին: Յետոյ հողի կոյտեր, որթատունկի ուռեր եւ ուրիշ տեսակ տեսակ նիւթեր բերին փոսը լեցնելու եւ յարձակողներուն ճամբայ բանալու համար»:

Բոլոր այդ օրը տարբեր պատրաստութիւններ կատարուեցան Պոլսոյ մէջ: Պաշարեալները շուտով լուր առին թէ անմիջական եւ ընդհանուր գերագոյն յարձակումը որոշուեր էր: Ի՜նչ սարսափելի եւ խեղդեցնող լուր, ի՜նչ գերագոյն մահազանգ այդ դժբաղդ անհուն բնակչութեան համար որ այնչափ շաբաթներէ ի վեր կքած էր թրքական թուրքին սարսափներուն տակ, եւ որ հիմայ կ'իմանար թէ վերջնական ջարդի ժամը եկած էր ալ: «Ամբողջ այդ օրը,՝ կ'ըսէ Պարպարօ, ամբողջ քաղաքին մէջ հնչեց «մուրճի զանգակը» որպէս զի ամէն մարդ իր գործին անցնի: Կիներն ու տղաքը կրցածնուն չափ քար կրեցին պարիսպին մօտ, զանոնք որմածակերուն մօտ դիզելու եւ հոնկէ Թուրքերուն վրայ նետելու համար: Ամէն մարդ իր որոշ գործը եւ տեղը ու-

նէր: Ամէնքն ալ քաղաքին մէջ կը պտըտէին Թուրքերուն սարսափէն լալով:

«Պոլսոյ վենետիկեան գաղթականութեան Պայլը կոչ մը ուղղեց իր հայրենակիցներուն անոնց աղաչելով որ պաշտպանութեան գործին նուիրուին իրենց ամբողջ ուժովը եւ կորովովը, խնդրելով որ քաջութեամբ կռուին եւ պատրաստ ըլլան մեռնելու Աստուծոյ սիրոյն, հայրենիքին պաշտպանութեան եւ ամբողջ քրիստոնէութեան պատւոյն համար»:

Այդ 28ի օրուան թրքական բանակին անհուն լռութիւնը պարիսպին ամբողջ երկայնքին վրայ, աւելի տպաւորիչ եղաւ քան նախորդ օրերու խառնիճաղանճ աղմուկը: Թուրքերը ամբողջ օրը ծոմ պահեր էին: Հաւանական է որ այդ օրը կէսօրէն ետքը զինուորներուն արտօներ էին քնանալ որպէս զի աւելի առոյգ ըլլան հետեւեալ օրը յարձակման ատեն:

Այդ տարօրինակ հանդարտութիւնը թրքական բանակին՝ նոյն իսկ Պոլսեցիներէն ոմանց կարծել տուաւ թէ պաշարումը վերցնելու կը պատրաստուէին անոնք, մինչդեռ ուրիշներ կը զգային որ ատիկա պարզապէս գերագոյն յարձակման նախապատրաստութիւններն էին: Յուսահատած, այդ խեղճերը դառն իրականութիւնը կ'ապացուցանէին ինքզինքնուն. յետոյ իւրաքանչիւրը գնաց իր տեղը բռնել պատնէշին վրայ՝ հետեւեալ օրուան եղերական պարագաներուն պատրաստուելով տխրութեամբ:

Կաթոլիկները բոլոր այդ դժբաղդութիւնները Աստուծոյ բարկութեան կը վերագրէին հռովմէական եկեղեցիին հետ անկեղծօրէն միացած չըլլալնուն համար, օրթոտոքսները այդ բարկութեան պատճառը քաղաքին պաշտպան սուրբերուն պէտք եղած պատիւը չտրուելուն կը վերագրէին: Փուսկուլոս որ Պոլսոյ այդ հանդիսաւոր վերջին օրուան մէջ շատերուն քաջութիւնը կը գովէ, շատ մը վատերու խօսքն ալ կ'ընէ, որոնք կը վազէին պահուըտիլ իրենց թաքստոցներուն մէջ եւ կամ կը ջանային Կալաթա կամ նաւահանգիստը գտնուող նաւերուն վրայ ապաստանիլ:

Այդ հանդիսաւոր ժամուն որ պատմութեան էն մեծ ժամերէն մէկն է, այն պահուն երբ Թագուհի քաղաքը, Աստուծապահ քաղաքը, Քրիստոնեայ Արեւելքի հնադարեան մայրաքաղաքը հազար տարիէ աւելի ժամանակէ մը ի վեր բոլոր կռապաշտ ժողովուրդներուն եւ Մուհամմէտի զաւակներուն դէմ Քրիստոնէութեան պատնէշը վերջնապէս պիտի ընկճուէր, բոլոր այդ բարեպաշտ եւ աւելորդապաշտ Ցոյները անհատնում աղօթքներ եւ անվերջ լաց ու կոծեր կ'ուղղէին երկինք իրենց մեղքերուն համար, որոնց պատճառաւ այդ պատիժը գլխունուն եկեր էր:

Կայսեր հրամանով՝ Կաթոլիկ թէ Օրթոտոքս, քահանայ, արքեպիսկոպոս ու վանական, կին, տղայ, վերջապէս ամէն մարդ անհուն թափորով մը քաղաքին գլխաւոր փողոցները անցան լալով, պոռալով, հեկեկալով, թեւերնին զալարելով, մազերնին փետտելով, բարձրաձայն խոստովանելով, աղաչելով Աստուծոյ որ իրենց մեղքերուն համար զիրենք այդ սատանաներուն ձեռքը չձգէ: Բոլոր այդ անհուն բազմութիւնը անձկութեամբ լեցուն «Տէր Ողորմեա» կ'երգէին: Քահանաները Սուրբ Պատկերները եւ սուրբ մասունքները ձեռքերնին, բարձր եւ հանդիսաւոր ձայնով, շարականներ կ'երգէին, որոնց կ'ընկերանային հաւատացեալներուն յուսահատ աղաչանքները: Ամբոխին մէջ ամէնքը իրար կը քաջալերէին յարձակողներուն քաջաբար դիմադրել եւ մահը անպատուութենէն նախընտրել: Սուրբ Պատկերները մինչեւ պարիսպը տարին, բոլոր այն տեղերը, ուր խրամները ահազին էին, զանոնք հանդիսաւոր թափօրով պտըտցուցին հոն, այն յոյսով, ոմանց համար այն բացարձակ հաւատքով թէ անոնց միջամտութիւնը պիտի հեռացնէ այդ զարհուրելի վտանգը: Միջին դարու այդ պարզ ու միամիտ հոգիներուն՝ ոչինչ կրնար աւելի վստահութիւնը ներշնչել քան այդ տեսարանները: Պատերազմիկ թէ ո'չ, ամէնքն ալ այդ հանդէսներէն վերադարձան քաջալերուած եւ կորովի:

Երբ այդ հանդիսաւոր թափորին անհամար օղակները իրենց շրջանը աւարտեցին, կայսրը, ինք ալ, Սուլթանին պէս, ճառ մը խօսեցաւ իր շուրջը հաւաքուած ծերա-

Կոյտի անդամներուն, ազնուականներուն եւ Յոյն թէ Իտալացի զինուորական պետերուն: Այդ եղերգական պարագաներուն մէջ. այդ ճառը անհունապէս վեհաշուք բան մը ունեցաւ իր մէջ. բոլոր այդ քաջերը որոնք ալ հիմա ապահով էին մեռնելնուն, որոնք պատրաստ էին ամէնէն նուիրական խնդրին համար իրենց կեանքը տալու, երկիւղածօրէն մտիկ կ'ընէին բոցավառ խօսքերը իրենց ամենասիրելի կայսեր որ իրենց դժխեմ ճակատագիրը պիտի բաժնէր: Իր ճառը մեզի հասած է երկու պատմագիրներու շնորհիւ. այդ մեռնելու մօտ եղող Կայսրը ամէնէն գեղեցիկ, ամէնէն մաքուր լեզուն կը խօսի. վերջին ջանք մը կ'ընէ քաջութիւնը վերականգնեցնելու. իր պատերազմիկներէն կը խնդրէ որ ամէնքն ալ ազնուօրէն իրենց կեանքը զոհեն քաղաքին պաշտպանութեան համար: «Յիսունը եօթը օր է որ Սուլթանը մեզ գիշերով ցորեկով փակած է հոս իր բոլոր ուժերովը եւ մեքենաներովը։ Եւ շնորհիւ Քրիստոսի պաշտպանութեանը քանի՛ անգամ արդէն ամօթալի կերպով ետ մղուեցաւ մեր պարիսպներէն: Ուստի եւ, եղբայրներ, այս անգամ ալ անձնատուր մի ըլլաք վախին, կ'աղաչեմ ձեզի. թէեւ թշնամի մեքենաները ասդին անդին մեր պարիսպները քանդած են, բայց մենք զանոնք անմիջապէս նորոգեցինք: Թուրքերը իրենց հրետանին ունին, իրենց ձիաւորները եւ իրենց զինուորներուն մեծ թիւը: Բայց մենք Աստուած եւ Փրկիչը ունինք մեր հետ:

Այս ճառը շատ երկար է. աւելորդ է հոս ամբողջովին դնել զայն: Բոլոր ինչ որ զինուորական պետ մը կրնայ ըսել իր զինուորներուն քաջութիւնը եւ կորովը վերականգնելու համար, կայսրը ատոնք ըսաւ պերճախօսութեամբ: Անցած ժամանակներու մեծ յիշատակները յիշեց. յիշեց թէ իրենք Աթէնքի եւ Հռոմի մեծ հերոսներուն սերունդէն կ'իջնէյին: Իր մասին՝ ըսաւ թէ պատրաստ է իր ժողովուրդին համար եւ անոր հետ մեռնելու: Վենետիկցիներուն եւ Ճենովացիներուն ալ յուզիչ, եղբայրական եւ սրտագին կոչ մը ուղղեց որ այս անգամ ալ չթերանան քաղաքին պաշտպանութեան գործին մէջ:»

Այս հիանալի ճառը հիանալի ալ վերջաւորութիւն մը ունեցաւ. բոլոր այս մարդիկը որոնց սիրտը կը բաբախէր իրենց կայսեր սիրտին հետ միասին, բոլոր այս նշանաւոր եւ աննշան անձերը որոնք քանի մը վայրկեանէն իրենց կեանքը պիտի զոհէին՝ արտասուել սկսան, եւ իրարու խոստովանիլ իրենց մեղքերը, իրարմէ ներողութիւն խնդրելով իրենց յանցանքներուն համար: «Ուրիշ բանի չէին մտածեր ալ եթէ ոչ իրենց հայրենիքին համար մեռնելու», կ՚ըսէ Ֆրանցէս:

Այնատեն պատմութեան ամէնէն եղերական տեսարաններէն մին տեղի ունեցաւ: Անհուն բազմութիւն մը յանկարծ լեցուց վեհաշուք շրջափակը Այա-Սօֆիային, Արեւելքի քրիստոնեայ եկեղեցիներուն թագուհիին, որ դեկտեմբեր 12ի համբաւաւոր եւ տխուր օրէն ի վեր լքուած էր: Այդ ճակատագրական օրուան իրիկունն էր, Արեւելքի քրիստոնեաներուն պատմութեան ամէնէն տխուրը: Կայսրը, ամբողջ աւագանին, ամբողջ պալատականները, ամբողջ Յոյն եւ Լատին կրօնաւորները, բոլոր Յոյն եւ Իտալացի զօրապետները, քաղաքացիներու անհագին բազմութիւնը վերջին անգամ մըն ալ ծունգի եկան մայիսի այդ սքանչելի իրիկունը «ա ճիօռնօ» լուսավառուած այդ վեհաշուք կամարներուն տակ: Վերջին քրիստոնէական արարողութիւնն էր որ տեղի կ՚ունենար Այա-Սօֆիայի մէջ: Ամէնքն ալ իրենց աղօթքները իրար խառնեցին ջերմեռանդութեան անսահման պոռթկումի մը մէջ: Աշխարհիս տաճարներուն ամէնէն գեղեցիկին, այդ հրաշալի եկեղեցիին մէջ այդ հին ու համբաւաւոր կայսրութեան հոգեվարքի այս վայրկեանները այնքան մեծ գեղեցկութիւն մը ունին որ Հելլէն ազգը յաւիտենապէս կրնայ պարծիլ անոնցմով: Աղաչանքի եւ վստահութեան այդ վերջին բարեպաշտ ու երկիւղած երգերը, զորս կ՚երգէին բոլոր այդ մարդիկը, որոնց մօտալուտ արշալոյսը մահ պիտի բերէր, յաւիտենապէս պիտի հնչեն ամէն Հելլէնի հոգիին մէջ:

Երբ Յոյն ու Իտալացի, ամէն մարդ իր կռուի տեղը գնաց արտաքին պարիսպին անհուն երկայնութեան վրայ, ներքին պարիսպը իրենց ետին ձգելով, բոլոր դուռները

որոնք արտաքին գիծէն դէպի քաղաքին ներսը կը տանէին՝ խնամքով գոցուեցան եւ փականքով կղպուեցան որպէսզի Թշնամիին առջեւէն փախչելու ամէն յոյս եւ փափաք միանգամայն դադրի իրենց մէջ։ Միակ այս տխուր մանրամասնութիւնը կը բաւէ ցուցնելու այդ մարդոց պաղարիւն քաջութիւնը, որոնք այնքան պարզութեամբ որոշած էին յաղթել կամ մեռնիլ։

Գիշերուան մնացեալ ժամերուն այդ քաջ պաշտպանները պարիսպին ամբողջ երկայնութեանը վրայ լսեցին յարձակումին վերջին պատրաստութիւնները տեսնող Թրքական բանակին անսահման աղմուկը։ Կայսրը, Այա-Սօֆիայի մէջ լալով եւ աղօթելով Ս. Հաղորդութիւն առնելէ ետքը՝ ձի հեծաւ եւ Պլաքէռններու պալատը գնաց. հոն քանի մը վայրկեան մնաց եւ այդ կարճ միջոցէն օգուտ քաղեց անգամ մըն ալ ներողութիւն խնդրելու ներկաներէն անոնցմէ զորս ո եւ է առիթով մը կրցած էր վշտացնել։ «Ո՞վ կրնար տակնուվրայ չըլլալ այսքան յուզիչ տեսարանէ մը, կ՚ըսէ Ֆրանցէս։ Ո՞ր քարէ սիրտը կրնար իր արցունքները զսպել»։

«Յետոյ դարձեալ ձի նստանք, կը շարունակէ անիկա, — մայիսի 29ին այդ վերջին օրուան առտուան ժամը մէկին առեններն էր — եւ պալատէն դուրս ելլելով պարիսպին երկայնքը պտտեցանք ջանալով քաջութիւնը վերականգնել ամէնուն մէջ։ Ամէնքն ալ, առանց բացառութեան, իրենց պաշտօնին գլուխն էին պարիսպին կամ աշտարակներուն վրայ, բոլոր դուռները խնամքով գոցուած եւ պահպանուած էին։ Մարդ չէր կրնար քաղաքին շուրջը պատող միջնորմէն դուրս ելլել կամ ներս մտնել, Աքաղաղին առաջին կոչին Քալիկարիա դուռը հասանք։ Մեր ձիերէն իջանք եւ աշտարակի մը գագաթը ելանք։ Այդ տեղէն անհուն անսահման խժլտուք մը, անթիւ անհամար ձայներու աղմուկ մը լսեցինք։ Պահնորդները մեզի ըսին թէ ամբողջ գիշերը այդպէս էր եղած։ Թշնամին էր որ խոր մթութեան մէջ փոսին մօտ կը փոխադրէր յարձակումի իր հսկայական գործիքները։ Նոյնպէս ծովու կողմէն ալ ամէն բան պատերազ-

մական եռուզեռի մը մէջ էր: Թշնամի նաւերը պարիսպին կը մօտենային թէ Մարմարայի կողմէն եւ թէ Ոսկեղջիւրի կողմէն: Տոցին խորը՝ շարժուն կամուրջներ կը նետէին յարձակող գունդերուն անցքին համար:»

Անհունօրէն թախծալից ինչ ցաւագին պատկեր մըն էր ասիկա: Ինչ էին արդեօք քաջարի այդ կայսեր տխրագին խորհուրդները այն պահուն երբ արշալոյսը իրեն համար վերջին անգամ ըլլալով պիտի ծագէր. ինչ մթագին եւ ահռելի մտածումներ էին իրենց մտածումները՝ այն պահուն երբ կայսրը ու իր հաւատարիմ սպասաւորը, Ֆրանցէս, առանձին կը պտտէին անձկութեամբ լեցուն քուն մը քնացող անհուն քաղաքին եւ աղմկալից թրքական բանակին մէջտեղը, ուստանին վերջին յոյսը եղող այդ կիսովին կործանած պատնէշին երկայնքը, որու ետեւ այնքան քաջարի սիրտեր կը բաբախէին: Ինչ հակադրութիւն այդ տեղուանքը այնքան հանդարտ ու քաղցր եղող մայիսի գիշերուան եւ կայսերական այդ վերջին պտոյտին միջեւ: Առտուան ժամը մէկէն երկուքին միջեւ կայսրը եւ Ֆրանցէս իրարմէ բաժնուեցան եւ ըստ ամենայն հաւանականութեան՝ ա՛լ իրար չի տեսան բնաւ:

Պարպարոյի պատմութիւնը նոյնքան յուզիչ է:

«Ամբողջ օրը, կ՚ըսէ, քաղաքին մէջ հնչեր էին զանգակները: Առտուընէ մինչեւ իրիկուն կիներն ու տղաքները պարիսպին վրայ քար կրեր էին եւ որմածակերու բացուածքներուն վրայ շարեր էին յարձակողներուն վրայ թափելու համար: Ամէնքն ալ քաղաքին մէջէն կ՚երթային, Թուրքերէն իրենց զգացած սարսափէն արցունքի հեղեղներ թափելով. գիշերուան ժամը մէկին, Թուրքերը նախորդ երկու գիշերներէն աւելի հսկայական իրենց սարսափելի կրակները վառեցին նորէն, ու անանկ զարհուրելի գոռում գոչումներ սկսան արձակել, որ ականջներնուս ծակը կը պատռուէր: Միեւնոյն ժամանակ ռմբաձիգներ ու անոնցմէ շատ աւելի հրացանակներ կ՚արձակէին ու այն սատիճան մեծ քանակութեամբ վիրգեր կ՚արձակէին վրանիս որ իրաւ կարծես դժոխքին մէջ կը գտնուէինք: Այս զարհուրելի ցնծութիւն-

ները մինչեւ կէս գիշեր տեւեցին, այն ատեն հեթանոսները մարեցին իրենց կրակները, բայց մինչեւ առտու աղաղակեցին իրենց Մարգարէին որ Պոլիսը իրենց ձեռքը յանձնէ. իսկ մենք քրիստոնեաներս, մինչեւ իրիկուն եւ գիշերը մինչեւ լոյս, խիստ ջերմեռանդութեամբ եւ լալով պաղատեցանք Աստուծոյ եւ իր մօր Ամենասուրբ մօր կոյս Մարիամի եւ Արքայութեան բոլոր սուրբերուն եւ սրբուհիներուն որ մեզ ազատեն այս չար հեթանոսներուն ձեռքէն: Եւ երկու կողմէն ալ, անոնք իրենց Աստուծոյ, մենք ալ մեր Աստուծոյ աղաչելնէս յետոյ որ յաղթութիւնը իրեն տայ, Բարձրեալը եւ իր երկնաքնակ Մայրը որոշեցին որ անոնք ըլլան վաղը ըլլալիք դաժան կռիւին մէջ յաղթողները:»

«Սլավօնական ժամանակագրութեան» նայելով 28 մայիսի իրիկունը օդը խիստ մթնցաւ, եւ քանի գիշերը կը յառաջանար, հետզհետէ խոշոր ամպեր քաղաքին վերեւը կը կուտակուէին: Սուլթան Մէհմէտ որ այդ գիշերը չէր կարող քնանալ, զարհուրեցաւ այս նոր ազդանշանին առջեւ, եւ իր ամէնէն գիտուն իւլէմաներէն մին քովը կանչել տուաւ. այս վերջինը ամէն կերպերով հաւաստեց զինքը թէ ընդհակառակն քաղաքին վրայ դիզուած այդ ամպերը անոր մօտալուտ անկումը կը ցուցնէին: Ճիշդ այդ պահուն, քանի մը անձրեւի աճագին կաթիլներ. «ցուլի աչքերու նման խոշոր» գետին ինկան: Կէս գիշերուն, թուրք վերջին կրակներն ալ մարեցան, եւ անհուն լռութիւն մը, երբեմն երբեմն պահապաններու կանոնաւոր եւ ծանր քայլերէն ընդմիջուած, համատարած տիրեց անքաղդ քաղաքին շուրջանակի տարածուող երեք հարիւր հազար պատերազմիկներուն վրայ:

Ամէնէն ճշգրտապատում վկայութիւններուն նայելով, Կոստանդնուպոլսոյ գերագոյն յարձակումը սկսաւ առտուան ժամը մէկէն երկուքին երեքշաբթի 29 մայիս 1453 լուսնալու գիշերը: Նախորդ օրը Սուլթանին տուած հրամանները կէտ առ կէտ գործադրուած էին. Եւ ազդարար նշանէն անմիջապէս յետոյ անհուն քաղաքին վրայ ամենաբուռն յարձակումը երեք կէտերու վրայ միանգամայն սկսաւ: «Թշնամի խումբերու թիւը այնքան շատ էր, կ'ըսէ Ֆրան-

ցէս, որ քաղաքին մէկ ծայրէն միւսը գօտիի մը պէս կը սեղմէր։»

Ինչպէս գիտենք, տրուած հրամանի մը համեմատ, Ոսկեղջիւրի մէջ եւ Մարմարայի ծովեզրին վրայ, ծովու կողմէն, Թուրք նաւերը լուսնալուն մօտերը յառաջ եկեր էին իրենց նշանակուած դիրքերը գրաւելու։ Իսկ ցամաքի կողմէն, անհուն պատնէշին երկայնութեամբը, շատ մը կէտերու վրայ միանգամայն յարձակում ի գործ դրուեցաւ, բայց գըլխաւոր յարձակման տեղին, ինչպէս գիտենք, եղաւ Լիկոսի հովիտը։ Յանկարծ, այս ճակատագրական մարզին մէջ ուր բազում օրերէ ի վեր արդէն իրար կը խողխողէին, յիսուն հազար կուրծքերէ պոռթկացող անհուն պատերազմական աղաղակը օդը դղրդեց։ Ալլահ, Ալլահ, Լա իլ Ալլահի գոռումներով յիսուն հազար մարտիկներ, երկու հազար սանդուղներով, խոյացան պատնէշին վրայ։ Պաշտպանները անձկութեամբ լեցուն հսկնգիստի քանի մը վայրկեաններէ յետոյ «Քիրիէ էլէիսոն»ի աղաղակներով առին զէնքերը ձեռքերնին եւ սկսաւ գերագոյն կռիւը։

«Ամէն բանէ առաջ, կ'ըսէ Կրիտոբուլոս Սուլթանին հրամանով Թմբուկներու եւ ուրիշ գործիներու՝ խոշոր ստինգներ, ծնծղայ, հովուասրինգ, միջոցաւ յարձակման նշանը տրուեցաւ։ Բոլոր այս բանակներուն անհամար գործիներուն ձայնը այնքան հզօր ու այնքան զարհուրելի հնչականութեամբ մը լեցուց օդը, որ անոնց կրկնապատիկ արձագանգներով մթնոլորտը դղրդաց։ Ասոր վրայ, Սուլթանին մեծ դրօշը բացին ու տնկեցին որպէս զի ամէնքն ալ տեսնեն զայն։»

Բիրս կ'ըսէ թէ գլխաւոր յարձակումը Լիկոսի հովտին մէջ վերջերս եւ ափ յափոյ բարձրացած պատնէշին դէմ կատարուեցաւ, ճիշդ այն տեղը, ուր Թեթալդիի ըսելով առնուազն հազար երկու հարիւր ոտք երկայնութեան մը վրայ պարիսպը կործանած էր Թուրք Թնդանօթներէն։ Պարիսպին այս մասին վրայ ամենազօրեղ աշտարակներէն չորսը փլած էին եւ այս կէտին վրայ արտաքին պատը այն աստիճան քանդուած էր որ պաշտպանող ու պաշտպանեալ անոր

մէջէն դիւրաւ կը տեսնէին իրար: Եւ Կրիտոբուլոսի ըսելով թուրք թնդանօթները անանկ աւերներ պատճառած էին հոս որ կարելի է ըսել թէ արտաքին պարիսպ գոյութիւն չունէր ալ, այլ անոր տեղ կար միայն աճապարանոք՝ փայտէ գերաններով, ոստախուրձերով, թուփերով, ուրիշ ամենազգի նիւթերով եւ հողով լեցուն կողովներով շինուած ցցապատնէշ մը:

«Պաշտպանները, կը շարունակէ Բիրս, այս ափյափոյ շինուած ցցաթումբին եւ ներքին պարիսպին միջեւ, այնպիսի կերպով մը կեցած էին, որ իրենց ընելիքուրիշ բան չէր մնար ալ, եթէ ոչ երես երեսի յաղթել թշնամիին կամ սպաննուիլ: Սուլթանին նպատակն էր, բոլոր իր տրամադրելի ուժերով իրարու վրայ յաջորդական յարձակումներ գործել եւ պատնէշին ուրիշ կէտերուն վրայ բաւական ուժով յարձակումներ կեղծել, որպէս զի պաշտպանները հոն մնան եւ նոյն իսկ ի պահանջել հարկին ամենալուրջ սպառնալիքի տակ գըտնուող այս մարզէն ալ պաշտպաններ փոխ առնեն, եւ իր բոլոր ուժը կեդրոնացնել մի միայն այս կէտին եւ պարիսպին Ադրիանուպոլսոյ դրան ու Թէքֆուր-Սարայի միջեւ երկարող մասին վրայ:»

## Գ Լ Ո Ւ Խ Ը.

Կ. Պոլսոյ յարձակումը Լիկոսի հովտին մէջ եւ իր երեք յաջորդական սարսափելի փուլերը.— Բէրքոբորթայի միջադէպը.—Ժան Ճիուսթինիանիի աղէտալի վէրքը.— Գերագոյն կռիւը.— Թուրքերու վերջնական յաղթանակը — Սէն-Ռօմէնի դրան տակի վերջին կռիւը.— Կոստանդիանոս Տրակազէսի եւ իր գլխաւոր տեղակալներուն հերոսական մահը. — Յաղթական Թուրք բանակին Կոստանդնուպոլիս մուտքը.— Պոլսոյ ուրիշ կէտերուն վրայ յարձակման պարագաները.

Կ. Պոլսոյ վերջին յարձակման վրայ գրուած ժամանակակից պատմութիւններէն, որոնք մեր ձեռքը հասած են, ամէնէն վաւերականը նորէն Պարպարօն կ'երեւայ, եւ ինքն է որ ամէնէն ապրուած նկարագրութիւնը կ'ընէ այս դէպքերուն :

«Մայիս ամսուն քսան եւ իններորդ օրը, որ պատերազմին վերջին օրը եղաւ, Բարձրեալը Յոյներուն դէմ խիստ վճիռ մը տուաւ. այն է թէ ուզեց որ այդ օրը Կոստանդնուպոլիս քաղաքը իյնայ Մէհմէտի, Թուրք Մուրատի որդւոյն ձեռքը, ու այս վճիռը տուաւ որպէս զի կատարուէին մարգարէութիւնները, մանաւանդ Սրբոյն Կոստանդիանոսի էն առաջ ըրած մարգարէութիւնը, որու ձիաւոր արձանը Այա-Սօֆիա եկեղեցիին քովը սիւնի մը վրայ կեցած է: Սուրբը հոն մատը բարձրացնելով՝ մարգարէացած ու ըսած է. «Այդ կողմէն պիտի գայ ինծի յաղթողը», այսինքն Անատօլուէն, Թուրքիայէն։

«Տիար Թուրքը, իր զունդերը երեք մասի բաժնեց, իւրաքանչիւրը յիսուն հազար մարդով: Այս բաժիններէն մին կը կազմէին Քրիստոնեաները, որոնք մեծ բազմութեամբ կը գտնուէին իր բանակին մէջ. երկրորդը կազմուած էր անկարեւոր, այսինքն գիւղացի եւ ուրիշ նմանօրինակ մար-

դոցմէ, իսկ երրորդը կը բաղկանար բոլոր ճերմակ փէսաւոր Եէնիչէրիներէն, որոնք ամէնքն ալ Սուլթանին ծառայութեան մէջ են, ու ամէն օրուան համար օրական կ'առնեն, եւ որոնց ամէնքն ալ ընտրեալ մարդիկ են, իրենց արժէքին համար բանակը առնուած. եւ այս Եէնիչէրիներուն ետեւէն կուգային բոլոր ենթա-փաշաները, իսկ ասոնց ալ ետեւէն, Սուլթանը ինքը:»

«Իրականին մէջ, կ'ըսէ Բիւս, Պարպարօյի նկարագրած այս առաջին բաժինը Պաշը-Պօզուքներէ կը բաղկանար եւ Մէհմէտի բանակին ամէնէն տկար մասն էր, եւ մինչեւ հիմա ցամաքային պարիսպին ամէնէն հիւսիսային մասին դիմացը բանակ զարկած էր: Այս անկանոն պատերազմիկներէն շատերը մահմէտական էին, բայց իրենց մէջ այնքան կաթոլիկներ եւ օտարականներ կը գտնուէին, որ ինչպէս տեսանք, Պարպարօ զանոնք ամէնքն ալ քրիստոնեայ կը համարէ։ Բազմաթիւ Գերմանացի, Հունգարացի, Ցոյն, Լատին եւ շատ մը ուրիշ ազգերէ օտարականներ կային անոնց մէջ: Էն, առաջ այս բաժինը ղրկելով կռիւի, Սուլթանը որոշ նպատակ ունէր ասոնցմով սպառելու պաշարեալներու ուժերն ու ռազմամթերքը: Այս էր արդէն իր սովորական մէթոտը իր թուական ջախջախիչ առաւելութիւնը լաւագոյնս գործածելու համար: Պարպարօ, իբր բարի Վենետիկցի, Սուլթանին այս կերպ վարմունքին ուրիշ բացատրութիւն մըն ալ կուտայ, այսինքն թէ Սուլթանը կը նախընտրէր էն առաջ իր քրիստոնեայ զինուորները ջարդել տալ քան մահմէտականները։

Արդ, առաջին բազուկը յարձակման յառաջացաւ նախ մինչեւ նետի հասողութեամբ, հետը տանելով բազմաթիւ մագլցելու սանդուղներ: Այս առաջին ալիքը խիստ ընդարձակ ճակատի մը վրայ կը յառաջանար, որ հաւանաբար Թէքֆուր Սարայէն մինչեւ Նորաշէն ցցապատնէշը եւ անկէ ալ անդին մինչեւ Թօփ-Գաբու, Սէն-Ռօմէնի դուռը կը տարածուէր: «Դանդաղօրէն, կը յառաջանային, կ'ըսէ Կրիտոբուլոս, որչափ ցեղ կար այնքան այլազան տեսակ զէնքերով զինուած՝ աղեղ, պարսատիկ, պզտիկ հրացանակ

եւայլն. շատերը եաթաղան կամ պզտիկ վահաններ ունէին միայն: Երբ նետի հասողութեան չափ մօտեցան, կանգ առին ու սկսան կռիւի: Ինչպէս կը տեսնուի, հակառակ երկու կողմին ալ կատաղութեան, կռիւը նախ հեռուէ հեռու եղաւ ու նետերով եւ պարսատիկի գնդակներով սկսաւ: Ուսի կամ պատրուգաւոր հրացաններէ արձակուած կապարէ գնդակներով ումբակոծեցին, ամենատեսակ նիզակներու տէգերով ծակծկեցին իրար:» Միմիայն պաշարեալներու մէջ շըփոթութիւն ձգելու յատկացուած այս առաջին արձակումներէն յետոյ, այս անհամար զինուորները, այս նկարագեղ Պաշը-Պօզուքները, վայրենի եւ անկարգ ոստնումներով, նետերու անձրեւին տակ, լայն փոսին մէջէն, խոյացան առաջ արտաքին պատէն եւ մանաւանդ նորաշէն պատնէշէն վեր մագլցիլ փորձելով: Ի քթթել ական հարիւրաւոր սանդուղներ տնկեցին պարիսպն ի վեր, եւ հեւալով, խմբովին աշխատեցան զանոնք այդպէս տնկուած բռնելու, եւ իրարու կռնակին վրայէն կատաղօրէն մագլցելով ջանացին վեր ելլել անոնց աստիճաններէն ամենաահռելի գոռում գոչումներու միջեւ: «Բայց մերինները, կ'ըսէ իր կարգին Պարպարօ, յանկարծ գետին կը տապալէին այս սանդուղները եւ անոնց հետ միասին զանոնք տնկողներն ալ, եւ բոլոր ասոնք կը սպաննուէին մերիններուն կողմէ, որոնք ասկէ զատ որմածակերու բացուածքներէն բարձրէն խոշոր քարեր կը նետէին անոնց վրայ, այնպէս որ անոնցմէ քիչեր միայն կ'ազատէին մեռնելէ: Որքան եկան պատերուն տակ, այնքան ջարդուեցան, եւ երբ սանդուղներ տնկողները տեսան այս մեռելները, ետ քաշուիլ ուզեցին, որպէս զի չի ջախջախուին վերէն թափող ժայռի կտորներուն տակ, բայց երբ անոնց ետին գտնուող միւս Թուրքերը անոնց փախչիլ ուզելը տեսան, եաթաղաններով ջարդեցին զանոնք եւ ստիպեցին զանոնք որ նորէն պատնէշ դառնան, այնպէս որ սա ստոյգ գիտէին թէ ետ ալ դառնային կամ յառաջ ալ երթային, սպաննուէին պիտի:»

Երեւակայեցէք տակաւին սեւի սեւ գիշերը, հարիւրաւոր մէթր տեղ բռնող այս անհուն կռիւին դժոխային աղ-



ՊՈԼՍՈՅ ՄԵԾ ՊԱՐԻՍՊԸ — ՄԱՐՄԱՐԻՈՆԷ ԱՇՏԱՐԱԿԸ (Ներքին տեսարան)

մուկը, եւ ծորին խորը կիսաքանդ պատնէշին վրայ խռյա-ցող յիսուն հազար պատերազմիկներու սարսափելի տակն ու վրայնութիւնը: Յարձակման յանդգնութիւնը կը հաւասարէր պաշտպանութեան անլուր կատաղութեան: Յարձակման Թուրք բազուկը իր դէմը ունէր՝ Կայսեր պզտիկ բանակին լաւագոյն զինուորները, եւ Ճիուսթինիանի հերոսին, այս անման հրամանատարին, այս անվախ ու անթերի պատերազմիկին առաջնորդութեան տակ գտնուող երկու հազարի չափ Իտալացիներն ու Յոյները:

Ջրահապատ պաշտպանները, որմածակերէն վար ծռած, առանց վայրկեան մը հանգիստ առնելու, կը զարնէին առջեւնին հանդիպածին իրենց սուրերուն թէ ծայրովը թէ սուր կողմովը, եւ յարձակողները այնչափ շատ ու քով քովի սեղմուած էին որ իրաւ միս ծեծելու պէս կը զարնէին անոնց մէջ. իրենց թեւերուն ուժով վար կը տապալէին այդ կատաղի պատերազմիկներով համրիչներու պէս բեռնաւոր-ուած սանդուղները, կ՚արձակէին իրենց հրացաններն ու պզտիկ թնդանօթները, մեծաքանակ վար կը թափէին խոշոր քարեր ու ժայռի հատորներ որոնք քով քովի սեղմուած անհամար Թուրքերուն մէջ ահռելի աւերներ կը գործէին։

Վերջ ի վերջոյ այսքան կատաղի դիմադրութիւնը յոգնեցուց առաջին յարձակողները, բայց իրենց պետերը զանոնք միշտ նորէն կռիւին տեղը կը ղրկէին, որովհետեւ ինչպէս գիտէք, անոնց նպատակը այս կրկին յարձակումներով պարզապէս յոգնեցնել լմնցնել էր պաշտպանները: Թուրքերուն ամէնէն յանդուգները, իրարու կառչելով, երբեմն կը յաջողէին մինչեւ պատնէշին գագաթը բարձրանալ, բայց անխուսափելիօրէն ամէնքն ալ կը սպաննուէին հոն: Ինչպէս ըսինք, ողջ մնացողները փախչիլ ուզեցին, բայց Թուրք «չավուշ»-ները, տեսակ մը ժանտարմաներ, որոնք Սուլթանին կողմէ յատկապէս ատոր համար հոն դրուած էին, խոշոր երկաթ գաւազաններով ու մտրակներով ստիպեցին զիրենք կռիւի դաշտը դառնալ։ Այդ չավուշներուն ալ ետին արդէն ենիչէրիներու կարգ մը պատրաստ կեցած էր առաջիններուն ձեռքէն փախչողները Թուրի հարուածներով ջարդելու: Հե-

տեւաբար, առաջին զօրաբաժինին այս զինուորները կամ յաղթելու կամ մեռնելու էին։«Գթալ չիկար բնաւ, կ'ըսէ Կրիտոբուլոս, կը զարնէին, կը զարնուէին կատաղիօրէն։ Մեծ ճիչեր ու ահաւոր հայհոյութիւններ ու սպառնալիքներ կը լսուէին։»

Այս նախնական զարհուրելի կռիւը մէկ երկու ժամէ ի վեր կը տեւէր արդէն եւ հակառակ քաջութեան հրաշալիքներու. հակառակ իրենց թիւին ու արժէքին, Թուրք պատերազմիկներու մեծ մասը ջարդուած կամ ո եւ է կերպով կռուելու անկարող վիճակի մէջ դրուած էին, երբ Սուլթանը վերջապէս հրաման տուաւ ետ քաշուելու։ Հակառակ ամէն բանի այս յարձակողները իրենց պաշտօնը լիուլի կատարեր էին, եւ իրենց բազմաթիւ անգամներ կրկնուած խիզախ յարձակումներն ու սարսափելի կռիւը բոլորովին սպառեր էին արդէն այնքան քիչ պաշտպաններու բոլոր ուժերը։ Որչա՛փ շաբաթներէ ի վեր հազիւ քանի մը ժամ հանգիստ առած էին։ Ու երբ տեսան առաջիններու ետ քաշուիլը, յուսացին որ գոնէ մինչեւ արշալոյս հանգիստ են ալ. շատերը նոյն իսկ, կ'ըսէ Բիրս, այնպէս կարծեցին թէ այս առաջին յարձակումը զիրենք յանկարծակիի բերելու փորձ մըն էր միայն եւ ոչ թէ գերագոյն յարձակման մը առաջին փուլը։ Աւա՜ղ, շուտով պիտի հասկնային սխալնին։

«Յարձակող բանակին երկրորդ բաժնին զինուորները, այսինքն Անատօլուի թուրք զօրաբաժինը, կ'ըսէ Պարպարօ, իրենց կարգին կատղած առիւծներու նման խոյացան Սէն-Րօմէնի դրան շրջականներու պատնէշին յարձակման, եւ երբ այս սարսափը տեսանք, յանկարծ ամբողջ քաղաքին մէջ, եւ բոլոր պարսպադուռներուն վրայ զանգակները հնչուեցան եւ ամէնքս գթառատ Տէրը մեր օգնութեան կանչեցինք այս Թուրքերուն դէմ, այնպիսի կերպով մը որ ամէնքն ալ վազեցին այս հեթանոսներու դէմը, որոնք դուրսը, որմածակերէն անդին, երեւնալու սկսեր էին։»

Մարդոց այս նոր հեղեղը, որ գիշերուան խոր մթութիւնը լուսաւորող արշալոյսին առաջին ժամերուն այսպէս յարձակման կը խոյանար, մարզուած, խիստ ուժեղ եւ զրա-

հապատ կանոնաւոր մարդիկներէ կը բաղկանար, կ՚ըսէ Պարպարօ: Ճշմարիտ ընդհանուր յարձակումն էր որ արշալոյսը ծագելուն կը սկսէր: «Այս երկրորդ զօրաբաժնի մարդիկը սոսկալի աշխատութիւն տուին մեզ ու անհունօրէն յոգնեցուցին, կը շարունակէ Պարպարօ: Ասոնք ալ ջանացին սանդուղները պատնէշն ի վեր տնկելու, բայց քաջ պաշտպանները գետին տապալեցին զանոնք եւ բաւական մարդ սպաննեցին: Միւս կողմէ մեր բալիսդրներն ու ռմբաձիգները շարունակ կ՚արձակէինք անոնց վրայ, այնպէս որ ճշմարտապէս անհաւատալի ջարդ մը տուինք անոնց:»

Պատերազմին այս երկրորդ փուլին վրայ Կրիտոբուլոս ալ գրեթէ միեւնոյն մանրամասնութիւնները կուտայ: «Սուլթանը, կ՚ըսէ, վահան եւ զրահ կրողներ եւ քանի մը ուրիշ գնդմարտակներ կանչեց եւ ըսաւ անոնց. «Յառա՛ջ, բարեկամներս ու զաւակներս, ձեր քաջութիւնը ցուցնելու ժամանակը եկաւ:» Անմիջապէս զարհուրելի ոռնումներ արձակելով, անոնք անցան փոսէն եւ յարձակեցան կիսաքանդ արտաքին պատին, եւ անկէ ալ անոր ետեւը բարձրացող նոր շինուած ցցապատնէշին վրայ: Հոս զարհուրելի գիրկ գիրկի կռիւ մը սկսաւ: Թուրքերը, զրահներ հագած ու վահաններով պաշտպանուած, բոլոր ուժովնին կ՚աշխատէին այս ցցապատնէշն ի վեր մագլցելու, իսկ Յոյներն ու Իտալացիներն ալ փոխադարձաբար կը ջանային զանոնք ետ մղելու եւ ամուր պահելու այս գերագոյն պատուարը: Ճշմարտապէս մահու պայքար էր այս: Պաշարեալները իրենց եւ բոլոր իրենցներուն կեանքին փրկութեան համար կը կռուէին: Ով կը սպաննէր, կը մեռնէր: Ամէն վայրկեան, յաղթանակը մէկ կողմէն միւս կողմին կը դառնար: Սուլթանը, հեռուէն, հեւացող ուշադրութեամբ կը դիտէր իր հրաշալի զինուորները, որոնք անդադար կատաղի ոստումներով յարձակման վայրը կը դառնային, եւ ձայնով ու շարժմամբ կը քաջալերէր զանոնք: Առանց կենալու թմբուկները, սրինգներն ու փողերը կը հնչէին անդադար եւ կարելի եղածին չափ ուժով յարձակողներուն ի քաջալերութիւն:» Պատերազմիկներու պոռչտուքները իրարու արձագանգ կուտային: Վիրա-

ւորեալներու աղաղակներն ու անէծքները, զանգակներու խելայեղ ձայնին, Թնդանօթներու եւ սանդարներու (morter) գոռումին, այս հսկայական կռուին հազարաւոր աղմուկներուն կը խառնուէին: Նորէն ու նորէն, հերոսական զինուորները պատնէշին ստորոտը կը խռնուէին, ու նոր սանդուղներ կը տնկէին: Նորէն ու նորէն ալ ուրիշ խումբեր, որմածակերուն վերեւէն գետին կը տապալէին այս սանդուղները իրարու կառչած մարդերով լեցուն, որոնք խօլ ճիգերով պարիսպին գագաթին հասնելու կը ջանային ու յանկարծ դէզ դէզ կը գլտորէին կ'իյնային գետին, ուր կը ջախջախուէին :

Պէտք եղաւ յարձակողներու այս երկրորդ խումբն ալ ետ քաշել եւ նորէն Թնդանօթին միջամտութեան դիմել: Կրիտոբուլոս կ'ըսէ թէ Սուլթանը հրետաձիգներուն հրամայեց կրակ տալ ռմբաձիգներուն, որոնք նորէն մեծաքանակ վիրգ արձակեցին ու բազմաթիւ պաշտպաններ, եւ անոնց խառնուած բազմաթիւ յարձակողներ ալսպաննեցին: Մասնաւորապէս հրէշ Թնդանօթը, որ գիշերը կարելի եղածին չափ պարիսպին մօտ բերուած էր, որոտաց նորէն: Արշալոյսէն ժամ մը առաջ, սարսափելի գործիքին արձակած մասնաւորապէս յաջող մէկ հարուածը զարկաւ նորաշէն ցցապատնէշին եւ նորէն անոր մէկ մասը կործանեց: Պարիսպին հող ու քարերուն, եւ հողով լեցուն տակառներուն վար գլտորէն յառաջ եկած Թանձր մուխի ու փոշիի ամպէն եւ մանաւանդ պայթումին յառաջ բերած Թանձր մուխ ու ծուխէն պաշտպանուած, խումբ մը Թուրքեր նորէն խոյացան պարիսպին վրայ, ու արգիլելու ժամանակ չեղած դեռ, անոնցմէ երեք հարիւր հոգի, կատաղութենէ փրփրալով՝ բացուած ճեղքէն ներս, ուղղակի քաղաքին շրջապատին մէջ Թափանցեցին վայրենի կենդանիներու նման, իրար հրելով: Բայց ասոնք ալ գտան իրենց պատիժը: Յոյներն ու Իտալացիները ամենակատաղի դիմադրութիւն մը ըրին: Իրարու փաթթուած, գիրկ գիրկի կռիւ մը սկսաւ ու շատերը տեղն ի տեղը սպաննուեցան, եւ միւսները դուրս հալածուեցան: Մեծ մասը կորաւ: «Այս անգամ, այս գեղեցիկ

կռիւը մղելէ յետոյ, Յոյները կարծեցին թէ ալ պիտի կրնային յաղթական ելլել այս չար հեթանոսներուն դէմ, եւ ամէնքս ալ մեծ մխիթարութիւն մը ունէինք։» Աւա՜ղ, շատ քիչ տեւեց ասիկա։ Կռուողներուն մէջ, միշտ կռիւին էն բուռն տեղը կը գտնուէր Կայսրը, իր քաջալերութիւններով զինուորները կը գրգռէր եւ իր օրինակովը կը սրտապնդէր զանոնք։

Յարձակման այս երկրորդ շրջանը աւելի կարգաւորեալ կերպով, բայց միեւնոյն ժամանակ աւելի բուռն եւ նախորդէն շատ աւելի յուսահատական եղաւ։ Այս կանոնաւոր զինուորները պէտք չունէին որ ետեւնին ուրիշներ կենան իրենց փախուստը արգիլելու կամ յառաջ մղելու համար զիրենք։ Իրենց մարտական աղաղակը՝ Ալլա՜հ, Ալլա՜հհ, արձակելով մութին մէջ յառաջ կը խոյանային. անանկ մարդոց պէս որոնք եթէ մահը չեն փնտռեր, չեն ալ վախնար բնաւ անկէ, անանկ պատերազմիկներու պէս որոնք իրենց Աստուծուն համար կը կռուին, բոլորովին վստահ թէ եթէ մեռնին, քաջերուն խոստացուած երանութիւններով լեցուն դրախտ մը կը սպասէ իրենց։

Սակայն հակառակ այսչափ կարգապահութեան, այսչափ յանդգնութեան, մոլեռանդութեան եւ աստուածային խոստումներուն վրայ վստահութեան, անատոլեան զօրաբաժինին յարձակումն ալ այնչափ կատարելապէս ձախողեցաւ որքան Պաշի-պօզուքներունը։ Յամառ, գրեթէ հրաշալի քաջութիւնը Յոյն ու Իտալացի հերոսներու, որոնք այնչափ աճապարանքով, այնչափ թեթեւօրէն շինուած ցցապատնէշի մը, այս հազար եւ աւելի տարիներէ ի վեր շինուած հին ու կիսաքանդ պատի մը ետին ամրացած կը կռուէին, այս անգամ ալ այս հոյակապ ճիգին վրայ յաղթանակը տարաւ։

«Այսպէս, այս զարհուրելի կռիւներով սահեցաւ այս սոսկալի գիշերուան մեծագոյն մասը։ Յոյները գրեթէ յաղթական ելան եւ ճշմարտապէս առաւելութիւնը իրենց մնաց։» Ճիուսթինիանի եւ իր դիւցազն զինուորները, հակառակ յարձակող բանակին թուական անհուն գերակշռութեան, գերագոյն յարձակման այս երկու առաջին շրջաննե-

րուն, լաւ դիմադրութիւն ըրած ու նորաշէն պարիսպին ամբողջ երկայնութեամբը ետ մղած էին Թուրքերը:

Անհուն շրջապատին միւս կէտերուն վրայ ալ աւելի յաջողութիւն չէին ունեցած Օսմանցիները: Թուրք բանակին բոլոր միւս հրամանատարները, ինչպէս նաեւ նաւատորմին ընդհանուր ծովակալը, իրենց յանձնուած մասին մէջ կրակը բացեր էին: Ամէնքն ալ թէ ծովէն եւ թէ ցամաքէն իրենց զօրաբաժիններով հզօրապէս յարձակած էին պարիսպին վրայ, նետերու եւ վիրգերու տարափով մը ծածկելով պաշտպանները, ամենազգի մեքենաներու միջոցով փայտէ դղեակներուն կամ նաւերուն բարձունքէն ջանալով պատերն ի վեր տնկել իրենց սանդուղները, եւ աշխատելով կամուրջներ նետել մինչեւ պարիսպին գագաթը: Ամէնուն մէջ կը փայլէին Զականի փաշայի եւ Խարաճա փաշայի խումբերը: Մանաւանդ Զականի փաշայի խումբերը յուսահատ ճիգեր կը թափէին, սանդուղներ կը տնկէին, շարժուն կամուրջներ կը նետէին, եւ իրենց զրահապատ գումարտակները, որոնց պիտի օգնէին նաեւ նաւերու կամուրջներուն եւ կարելի եղածին չափ պատնէշին մօտիկը զետեղուած նաւակամուրջներուն վրայ դիրք բռնած նետաձիգները եւ հրացանակիրները յարձակման կը ղրկէին, եւ նետերու ու գնդակներու անընդհատական հեղեղի մը տակ կը ծածկէին Յոյները: Զուր ճիգեր: Զականի փաշայի բոլոր յարձակումները ետ մղուեցան Վենետիկցի յանդուգն հրամանատար Թրէվիզանի զինուորներու կողմէ: Ադրիանուպոլսոյ դրան հիւսիսային կողմը հաստատուած Խարաճա փաշա ինքն ալ իր գունդերը փոսէն անցուցեր էր եւ յուսահատօրէն կը ջանար գրաւել թնդանօթէն գրեթէ կործանած այս պարիսպը, որ այս դրունէն մինչեւ Թէքֆուր Սէրայ կ'երկննայ: Բայց, Կայսրը Միրիանտրիոնի այս բարձր մարզին պաշտպանութիւնը Իտալացի երեք եղբայրներուն, Պոքիարտիներուն յանձնած էր, որոնք Արեւմուտքէն իրենց ձեռքով բերած զինուորներուն բոլոր ծախքերը իրենք կ'ընէին, եւ այս երեք հերոսները փառքով պսակուեցան հոդ, առիւծներու պէս կռուելով: Իրենց ամէնէն մօտի ընկերներն ալ Թէքֆուր Սարայի եւ



ՊՈԼՍՈՅ ՄԵԾ ՊԱՐԻՍՊԸ

Քալիկարիայի հարաւային մասին առջեւ տարածուած, վենետիկեան Բայլ Մինօթթոյի հրամանատարութեամբ նուազ յաջողութիւն չունեցան: Հոն ալ, այս պատմական գիշերուան մէջ, բոլոր Թուրք յարձակումները յաղթականօրէն ետ մղուեցան: «Յոյները, կ'ըսէ Կրիտոբուլոս, փառօք ետ մղեցին Թուրքերը, անհուն քաջութեան եւ դիմադրութեան ոգի ի յայտ բերելով: Որովհետեւ ոչինչ, ոչ անօթութիւնը, ոչ հանգիստի բացարձակ պակասը, ոչ ճշմարտապէս անդադրում կռիւը, ոչ վիրգերը, ոչ իրենցներուն գլխուն վերեւը կախուած ջարդի սպառնալիքը, վերջապէս ոչ մէկ բան, ինչչափ ալ սարսափելի ըլլար, կրնար յաղթահարել իրենց: Ոչ մէկ բան իրենց եռանդը պակսեցուց կամ թուլացուց զիրենք: Մինչեւ վերջը այս հերոսները հաւատարիմ մնացին իրենց առաջին որոշումին, մինչեւ որ չար ու անակնկալ բաղդը մատնեց զիրենք:»

Իրաւ է որ այս գիշերուան եւ մայիս 29ի այս ողբերգական առաւօտեան երկու յարձակումները բոլորովին ձախողեր էին, բայց նրբամիտ Սուլթանը դիտեր էր որ այս աստիճանական յարձակումները, իրենց ուժգնութեամբն ու յաջորդականութեամբը միայն, պաշարեալներուն ուժն ու կորովը վերջին ծայր սպառեր էին:

Լիկոսի հովտին այս նորաշէն պարիսպին դիւցազն պաշտպանները տառացիօրէն վաստակաբեկ եղեր էին հըսկաներու այս կռիւէն: Այն ատեն է որ Սուլթանը որոշեց երրորդ եւ վերջին ճիգ մըն ալ փորձել եւ իր տակաւին թարմ ուժերը, մէկ խօսքով իր վերջին պահեստներն ալ յարձակման ղրկել:

«Այս առաջին փորձերու անյաջողութենէն կատղած, կ'ըսէ Կրիտոբուլոս, որոնք կատարելապէս անդամալուծուած էին Յոյներու եւ Իտալացիներու քաջութեան առջեւ, եւ ալ անկարող աւելի երկար տանելու այս նախատինքը, Սուլթանը անմիջապէս յառաջ քշեց իր բոլոր պահեստի գունդերը, այսինքն իր ամէնէն լաւ զինուած, ամէնէն քաջ, ամէնէն անյաղթելի մարտիկները որոնք իրենց ուժով ու կարգաւորութեամբ գերիվեր էին բոլոր իր միւս գունդերէն:

Ասոնք բանակին ընտրելագոյն մասը կը կազմէին՝ տէգերով ու վահաններով զինուած հետեւակներ, աղեղնաձիգներու բաժին մը, իր պահապան զօրքը մէկ խօսքով, եւ ասոնց մէջ ալ դեռ ամէնէն լաւ մարզուածները, ամէնէն աւելի վստահութեան արժանիները, համբաւաւոր Եէնիչէրիները, տասներկու հազարի չափ: Այս անգամ այս փայլուն պահեստի գունդերն էին որ նորաշէն պատնէշին վրայ պիտի խոյանային, իրենց ամէնէն հռչակաւոր պետերուն անմիջական հրամաններուն տակ, մինչդեռ բանակին մնացեալ մասը, շփոթութիւն ձգելու համար, միաժամանակ յարձակում պիտի գործէր ցամաքային պարիսպին միւս կէտերուն վրայ:

Մէհմէտ մանրակրկիտ խնամքով արագօրէն կազմակերպեց այս երրորդ եւ գերագոյն յարձակումը։ 1453 մայիս 29 երեքշաբթիի արշալոյսը բաւական լուսաւոր էր հիմա եւ Սուլթանը կրնար ալ աւելի մանրամասն յատակագիծ մը շինել: Այս անգամ յարձակումը վայրենի ու վայրագ յառաջխաղացութեան մը եւ կատաղի մագլցումի մը մէջ չէր պիտի պարփակուէր միայն: «Բարձրաձայն յորդորելէ յետոյ իր խումբերը որպէս զի քաջութեան մէջ ետ չի մնան իրենց ընկերներէն, կ՚ըսէ Կրիտոբուլոս, Սուլթանը անձամբ անցաւ անոնց գլուխը եւ մինչեւ փոսը առաջնորդեց զանոնք: Հոն աղեղով, պարսատիկով եւ հրացաններով զինուածներուն կանգ առնել տուաւ եւ հրամայեց անոնց որ շարունակաբար, առանց վայրկեան մը կենալու, իրենց զէնքերը արձակեն պաշտպաններուն վրայ, ըլլան Իտալացի, ըլլան Յոյն, այնպիսի եղանակով մը որ վայրկեան մը հանգիստ չի մնան անոնք, մանաւանդ այնպիսի եղանակով մը որ անոնցմէ գլուխը քիչ մը դուրս հանողն անգամ զարնուի իյնայ:

Մինչդեռ նետաձիգները, պարսաւորներն եւ միւսները մահուան այնպիսի սարսափ մը կ՚ազդէին պաշտպաններուն վրայ որ Լէօնար արքեպիսկոպոսի բացատրութեամբ, երկինքը կը խաւարէր, մինչդեռ այս սարսափելի եւ անընդհատ հեղեղը տեսակ մը շփոթութիւն կը ձգէր այնքան հերոսական պաշտպաններուն վրայ, Մէհմէտ իր «թարմ,

ուժեղ եւ անյաղթ Ենիչէրիներուն» յառաջ խաղալու հրաման տուաւ: Երրորդ գերագոյն յարձակումն էր այս: Իրենց կարգին այս հոյակապ զինուորներն ալ պատնէշ խոյացան: Քանի մը ոստումներով անցան փոսէն, եւ իրենց նախորդներու նման, աշխատեցան համբաւաւոր նորաշէն ցցապատնէշը գրաւել, այսինքն՝ գրաւել յարձակման ու միեւնոյն ժամանակ պաշտպանութեան ալ հոգին:»

«Այս երրորդ զօրաբաժինը, կ՚ըսէ Պարպարօ, այնչափ քաջ հակառակորդի մը հանդէպ իր զգացած սքանչացումը առանց ծածկելու, Ենիչէրիներու, որոնք թոշակաւոր զինուորներ են, եւ իր ենթա-փաշաներուն եւ ուրիշ մեծ հրամանատարներու զօրաբաժինն էր, ամէնքն ալ յանդուգն մարտիկներ: Պատերազմական սարսափելի աղաղակներ արձակելով, յառաջ խոյացան ոչ թէ պարզ Թուրքերու, այլ առիւծներու պէս, այս խեղճ քաղաքին պարիսպներուն վրայ: Այնչափ կ՚ոռնային եւ կը գոռային, այնչափ փող ու թմբուկ կը զարնէին որ ձայներնին մինչեւ Անատօլու կ՚իմացուէր:»

«Այս տասը հազարի չափ Ենիչէրիները, կ՚ըսէ իր կողմէն Կրիտոբուլոս, դիւահար կ՚երեւային: Երիտասարդ, ուժեղ, եռանդուն մարտիկներ էին ասոնք, որոնք Սուլթանին աչքերուն տակ կը պատերազմէին, ասոր համար է որ կարծես մրցում կ՚ընէին թէ իրենցմէ ո՛վ աւելի քաջութիւն պիտի ցուցնէ, եւ պատին ստորոտը հասնելէ յետոյ քաջաբար կռուեցան առանց մահը հոգ ընելու, ամէն մէկը իր հասկցած կերպովը:»

«Այս երրորդ զօրաբաժինը կ՚ըսէ Պարպարօ, որ ամէնէն քաջ Թուրքերուն զօրաբաժինն է, պաշտպանները արդէն իսկ ծայր աստիճան յոգնած գտաւ նախորդ երկու զօրաբաժիններուն դէմ մղած կռիւներէն, մինչ իրենք, հեթանոսները եռանդով լեցուն էին եւ կռիւի պատրաստ: զարհուրելի աղաղակները, թմբուկներու ձայնը արդէն սարսափեցուցած էր ամբողջ քաղաքը եւ ամէնուն քաջութիւնը չլատած: Մուրճի-զանգակները կը հնչէին բոլոր եկեղեցիներուն մէջ, պատնէշին բոլոր դուռներուն վրայ: Ամէնքն

ալ բարձրաձայն կը պոռային. «Տէր ողորմիա, Տէր ողորմիա, Թագաւոր երկնաւոր, օգնութիւն ղրկէ մեզի Կոստանդիանոսի այս կայսրութեան համար որպէս զի հեթանոս ազգերը չիշխեն կայսրութեան վրայ»: Եւ ամբողջ քաղաքին մէջ բոլոր կիները ծունգի եկած էին ինչպէս նաեւ էրիկ մարդիկը, ամէնքն ալ դառնօրէն կուլային, ամենայն երկիւղածութեամբ աղօթելով Ամենազօր Տիրոջ, Սրբուհի Մարիամին եւ երկնային թագաւորութեան բոլոր Սուրբերուն եւ սրբուհիներուն որպէս զի յաղթանակը շնորհեն մեզի հեթանոսներուն դէմ:

«Մինչդեռ այսպէս Աստուծոյ աղաչելու վրայ էինք, Թուրքերը կատաղօրէն կը կռուէին Սէն-Ռոմէնի դրան կողմը ուր կը գտնուէր Ամենապայծառ Կայսեր դրօշը իր ամբողջ ազնուականներուն եւ գլխաւոր ասպետներուն եւ իր քաջարի մարտիկներուն հետ որոնք ամէնքն ալ անդադար եւ կորովի կերպով կը կռուէին իր քովը:

«Սակայն Սէն-Ռոմէնի կողմէն քաղաքը մտնելու աշխատող այս Թուրքերը, մեծ քանակութեամբ վիրգեր կը նետէին հազա՛ր երկու հարիւր լիպրա ծանրութեամբ քարերով, նաեւ հրացանի հարուածներ եւ անթիւ անհամար նետեր: Այնքան ահարկու կռնային՝ որ կարծես թէ երկինքը կը պատռէր: Նետերը այնքան շատ էին որ որմածակերուն եւ փոսերուն մէջ հարիւր ուղտի բեռ նետ կարելի էր հաւաքել»:

Պարպարոյի պատմութիւնը այսպէս է: Ուրիշ ժամանակակից պատմագիրներ քանի մը մանրամասնութիւններ եւս կուտան: Թուրքերուն կատաղութիւնը ծայրայեղ էր: «Անոնք կը յամառէին, կ'ըսէ Կրիտոբուլոս, պատնէշը քանդել, կոտրտել կամ վար նետել հողով լեցուն խոշոր ամանները որ անոնց գագաթը կը գտնուէին եւ պաշարողները կը պաշտպանէին: Կը ջանային խլել հանել գերանները պատնէշին մէջէն ճամբայ մը բանալու համար, կ'աշխատէին նաեւ պատն ի վեր մագլցիլ իրենց սանդուղներուն միջոցաւ: Հազիւ թէ սանդուղ մը կը տնկուէր պատին դէմ՝ անմիջապէս յարձակողներու բազմութեան մը տակ կը ծած—

*կուէր որոնք կը ջանային վեր նլել:» Սարսափ եւ զարհուրելի խառնիճաղանճ մը կը տիրէր ամէն կողմ: Ենկիչէրիներուն սարսափելի աղաղակները, անոնց ոռնումները, Ալլահին ուղղած կոչերը, պատերազմի թմբուկներու, ծնծղաներու, սրածայն սրինգներու խլացուցիչ աղմուկը, թնդանօթներու որոտումը պաշարեալներուն մէջ սարսափը կը տարածէին մինչեւ Վոսփորէն ալ անդին: Թէ Պարպարօ եւ թէ Կրիտոբուլոս կը ծանրանան այս երրորդ յարձակման սկսած պահուն թէ յոյն եւ թէ իտալացի քրիստոնեայ պատերազմիկներուն արտակարգ յոգնութեան եւ անլուր ըսպառման վրայ: Հող ու քար շարժտկելէն, առանց վայրկեան մը դադարի երեք ժամ շարունակ կռուելէն, ամբողջ ուժովին քարեր նետելէն, զինուորներով ծանրաբեռնուած սանդուղները գետին նետելէն ալ հիմա ուժասպառ եղած էին, անկարող դասձեր էին իրենցմէ տասնապատիկ աւելի շատ եղող թարմ ուժերու այս նոր հեղեղին դէմ կռուելու: Այդ դժբաղդ քաղաքին մէջ գտնուող ամէն մարդու պէս իրենք ալ գիտնալով թէ գերագոյն ժամը հնչած էր՝ անոնք պատրաստուեցան կռուիլ ու մեռնիլ կատարեալ քաջութեամբ:*

*Զանգակները կը հնչէին ուժգնօրէն: Մուրճի-զանգակները խլացուցիչ աղմուկ մը կը հանէին: Քաղաքին մէջ ամէն կողմէ կը պոռային «Օգնութի՛ւն, դէպի պատնէշ»: Վանականներուն, մայրապետներուն, կիներուն եւ տղոցը մէջէն անոնք որ խորաններուն առջեւ ծունգի չոքած չէին՝ պաշտպաններուն ռազմամթերք կը հասցնէին շարունակ: Ճիուսթինիանի եւ իր հերոսներու պզտիկ խումբը, նիզակներով, կացիններով, սրածայր երկար ցօղերով եւ տապարներով զինուած՝ ամէնէն յիմար քաջութեամբ կը կռուէին, սպաննելով կամ կացինով ջարդելով յարձակողները ամէն անգամ որ անոնք յառաջանային: Քիչ մը ատեն ալ այս զարհուրելի գիրկընդխառնումը շարունակուեցաւ առանց յայտնի ըլլալու թէ ո՞վ է յաղթողը: «Երկու կողմէն ալ, կ'ըսէ Կրիտոբուլոս, ահագին աղաղակներ եւ հայհոյութիւններ, սպառնալիքներ կը լսուէին, կը զարնէին, կը զարնուէին, կ'ըս-*

պաննէին, կը սպաննուէին, վերջապէս զարհուրելի կատաղութեամբ եւ մոլեգնութեամբ լեցուն տեսարան մըն էր: Այդ պատուական պատերազմիկներուն մէջ ոմանք կ'աշխատէին առաջին անգամ իրենք ելլել պատնէշն ի վեր, տիրանալ գերիներուն, կիներուն եւ ամէնէն հարուստ կողոպուտին: Ուրիշներ ազնուօրէն կը ջանային զանոնք ետ մղել, իրենց ընտանիքներն ու ինչքերը պաշտպանել: Աւա՛ղ, ասոնք չկրցան մինչեւ վերջը յաղթող հանդիսանալ: Գրուած էր որ գերի պիտի դառնային»:

Այն պահուն ուր այս ահարկու երրորդ կռիւը տեղի կ'ունենար Լիկոսի այդ եղերական հովիտին մէջ՝ ամենակարեւոր դէպք մը կը պատահէր պատնէշին վրայ կէս մղոն հեռուն տեղ մը, դէպք մը զոր միմիայն Դուկասի շնորհիւ ծանօթ է մեզի: Թնդանօթին շնորհիւ պարիսպին մէջ բացուած երեք ճամբաներէն մին Ս. Պօլսոյ դրան հիւսիսային կողմը կը գտնուէր: Ս. Պօլսոյ դռնէն չորս հարիւր մէթր հեռաւորութեան մը վրայ՝ Թէոդոսեան երկրորդ պարիսպը յանկարծ դադրած էր այդ կէտին վրայ՝ միայն ուղղանկիւնաւոր կարճ պատ մը երկու պարիսպներուն մէջ հիւսուած ըլլալով՝ իրարու կը միացնէր զանոնք: Ներքին ու արտաքին երկու պարիսպները իրար միացնող այդ փոքր պատին վրայ՝ գաղտնի դուռ մը բացուած էր որ քաղաքը կը միացնէր երկու պարիսպներուն մէջ գտնուող ներքին շրջանակին, իսկ արտաքին պարիսպին այն մասը որ այդ կէտէն անդին կը շարունակուէր՝ պարտաւոր ըլլալով միս մինակը թէ ներքին եւ թէ արտաքին պարիսպի գործ տեսնել քանի որ ետին այլեւս ներքին երկրորդ պարիսպ մը չիկար՝ չափազանց ամուր եւ հաստ շինուած էր: Ուրիշ պզտիկ գաղտնի դուռ մըն ալ, որ մասամբ հողին մակերեսէն վար էր բացուած՝ Կոստանդիանոսի պալատին ճիշդ ծայրին տակը՝ ուղղակի յարաբերութեան մէջ կը դնէր քաղաքը արտաքին շրջափակին հետ: Ատիկա «Քէրքօբօռթան» էր կամ «կրկէսի դուռը» որուն անունը այնքան նշանաւոր պիտի հանդիսանար: Ժամանակին այդ դուռնէն կ'անցնէին Մամասի թաղը երթալու համար: Վերջը, հրեշտականը

ման Իսահակի իշխանութեան օրով, 1204ին Խաչակիրներուն պաշարման առենը՝ մէջը պատ հիւսեր էին եւ անկէ ի վեր տարիներով գրեթէ բոլորովին մոռցուեր էր: Բայց երբ ներկայ պաշարման սկիզբը ուզեցին դիւրին անցք մը ունենալ քաղաքէն արտաքին շրջափակը տանող՝ քանի մը ծերեր յիշեցին այդ դրան գոյութիւնը, եւ զայն դարձեալ բացին. բնականաբար այնքան ծածուկ էր, դուրսէն այնքան քիչ տեսանելի որ կարելի է ընդունիլ թէ գիշերուան մէկ մասը զայն անպաշտպան կը թողուին, այնքան ապահով էին որ թշնամին չպիտի տեսնէ զայն:

Ա.-Պոլսոյ դրան եւ այդ «կրկէսի դրան» մէջ գտնուող արտաքին պարիսպը գիտենք արդէն թէ չափազանց վնասուած էր թրքական ռմբակոծումէն որ անոր մէջ խրամ մը բացած էր: Այդ խրամը յարձակմամբ գրաւեր էին Թուրքերը, որոնք թէ այդ կէտին վրայ եւ թէ Սէն-Ռոմէնի դրան մօտ յաջողեր էին փոսէն անցնիլ եւ արտաքին պարիսպին տէր դառնալ: Արեւը ծագելու վրայ ըլլալով՝ յարձակող Թուրքերէն ոմանք տեսան որ «կրկէսին դուռը» բաց մնացած էր եւ թէ բոլոր անոր պաշտպանները հեռացեր էին աւելի կարեւոր տեղեր երթալ կռուելու համար: Ըստ Դուկասի, յիսունի չափ Եէնիչէրիներ այդ ճամբէն ներս խուժեցին գիշատիչ թռչուններու պէս: Ակնթարթի մը մէջ իրենց ընկերներէն շատեր ալ ընկերանալով իրենց՝ այդ երջանիկ ու աղետալի գաղտնի դռնէն, ինչպէս նաեւ հազիւ երեսուն մէթր անդին գտնուող ուղղանկիւն կազմող կարճ պատին վրայի դռնէն ներս խուժեցին: Այսպէսով յանկարծ ներքին շրջափակին մէջ մտնելով՝ յանկարծակի ինկան վերջին պաշտպաններուն կողին վրայ, որոնք այդ պահուն Քարիզիոսի դրան վրայ Գարաճայի գունդերուն զարհուրելի յարձակման դէմ դնել կ'աշխատէին: Ամէն վայրկեան այդ նոր եկողներուն թիւը կը շատնար, որովհետեւ նոր նոր խումբեր ներս կը խուժէին այդ երկու գաղտնի դուռներէն, որոնց միջոցաւ ազատօրէն կարելի էր արտաքին պարիսպին ետին անցնիլ: Խեղճ պաշտպանները սարսափահար եւ այդ շարունակ աճող ուժերէն ընկճուած, եւ «Ֆէրքօբօրթա»ի իրենց ետին ճամբանին կտրուած ըլլալէն

գրաւմամբ շուարած, փախուստ տուին, կեանքերնին ազատելու համար վազելով պարիսպին հետեւող ճամբուն երկայնքը, Էտիրնէի դրան ուղղութեան վրայ, եւ իրար ճզմելով։ Արտաքին շրջափակին մէջ իբր մուկի ականատի մէջ բռնուելով այդ դժբաղդները գրեթէ ամբողջովին ջարդուեցան կամ պարիսպէն վար նետուեցան զիրենք ընդունելու համար տնկուած նիզակներուն եւ սուրերուն վրայ։ Արդէն իսկ քանի մը Թուրքեր ուղղակի քաղաքին մէջ կը մտնէին բռնաբարելով այնքան երկար ատեն սուրբ մնացած այդ հողը, մինչ ուրիշներ, պատնէշին աշտարակներն ի վեր մագլցելով, փոսին մէջ կը նետէին կայսերական դրօշը եւ վենետիկեանը եւ անոր տեղ կը տնկէին Մուհամմէտի յաղթական դրօշը։

Ֆրանցէս եւ ուրիշներ ալ կը պատմեն թէ մինչ Նիկոսի հովտին մէջ պատերազմը կը կատաղօրէն շարունակուէր պաշարեալները որոշ պահու մը յուսահատ սարսափով մը տեսան՝ օդերուն մէջ՝ Էտիրնէի դրան հիւսիսային կողմը՝ պատնէշին աշտարակներուն վրայ՝ Թրքական դրօշներուն ծածանիլը, ա՛յն միջոցին երբ պարիսպը ուրիշ ո եւ է կէտի վրայ բռնադատուած չէր տակաւին։ Զարհուրելի եւ խեղճուկ աղաղակը՝ «Քաղաքը առնուեցաւ» ամէն կողմէ թնդաց անմիջապէս։ Դուկաս սա կարեւոր դիտողութիւնը կ՚ընէ թէ կայսրը եւ իր հրամաններուն տակ գտնուողները «Քէրքօբօրթայ»ի առումը չէին գիտեր իսկ, որովհետեւ այդ կէտէն շատ հեռու էին եւ շատ զբաղած էին Սէն-Ռօմէնի դրան մօտ ափյափոյ կազմուած պատնէշին խրամը պաշտպանելու։ «Մինչ այս հերոսները այդ կէտին վրայ կը դիմադրէին, կ՚ըսէ անիկա, Աստուած ուզեց որ թշնամին քաղաքին մէջ մտնէ այդ միւս ճամբէն»։ Լէօնար կ՚ըսէ թէ մէկ կէտէն միւսը լրատուութիւնը շատ թերի էր։ Շատ հաւանական է սակայն, կ՚ըսէ Պ. Բիրս, որ կայսրը վերջապէս իմացաւ Թուրքերուն «Քէրքօբօրթայ»ի դռնէն մտնելը եւ պարիսպին գոնէ մէկ մասին գրաւուիլը այդ դրան եւ Ադրիանապոլսոյ դրան միջեւ, ու այն կողմ վազեց անճապարանօք՝ նոյն իսկ Ճիուսթինիանի հրամանին տակ գտնուող իր փոք-

րեկ բանակը տակաւին չիմացած թէ Թրքական դրօշները տնկուած էին Ադրիանուպոլսոյ դրան մօտ գտնուող աշտարակներուն մէկ քանիին վրայ:

Այն քանի մը Թուրքերը որոնք յաջողեր էին քաղաքին մէջ մտնել այդ կէտէն, կը շարունակէ Պ. Բիրս, Թալանին վրայ միայն խորհելով՝ էն առաջ վազեցին դէպի Քօրայի եւ Ս. Յովհաննէսի հարուստ վանքերը, եւ Պլաքէռններու կայսերական պալատը, բայց կը Թուի Թէ Իտալացի երեք հերոս եղբայրները, Պօքիառտիները եւ իրենց զինուորները յաջողեցան զանոնք ետ մղել, նոյն իսկ դարձեալ տիրանալ պարիսպին եւ նոյն իսկ քանի մը վայրկեանի համար Թուրքերուն մեծ Թիւով դարձեալ «Քէրքօբօռթա»էն ներս մտնելը արգիլել։ Նոյն իսկ կարելի է որ յաջողեցան գոցել այդ դուռը: Նշանակելի է որ Կրիտոբուլոս ոչ մէկ վայրկեան յարձակողներուն այդ դռնէն ներս մտնելը չի յիշատակեր: Եւ աւնկա մեզի կարծեցնել կուտայ Թէ, եԹէ նոյն իսկ այս հեղինակը այդ պարագան իմացաւ իսկ, զայն իբր ոչինչ կարեւորուԹիւն ունեցող միջադէպ մը նկատեց միշտ:

Սակայն այդ միջոցին գիրկընդխառն կռիւը անխնայ եւ կատաղի կը շարունակուէր շրջափակին մէջ, Լիկոսի հովիտին ամբողջ մարզին մէջ, վերջին պաշտպաններուն եւ Թըրքական յարձակման բանակին միջեւ: Պ. Բիրս կ՚ըսէ Թէ այդ Յոյն եւ Իտալացի հերոսներու փոքրիկ խումբին յամառ դիմադրուԹիւնը քիչ մը ատեն ալ կ՚երեւի որ հրաշք գործեր է: Եէնիչէրիներուն եւ նոյն իսկ ՍուլԹանին անձնապահ գունդին միացեալ ամբողջ մասին կատաղի յարձակումը մինչեւ այն ատեն անյաջող անցած էր եւ նոյն իսկ կարծես Թէ Թուլնալ կը սկսէր: Կայսրը իր կռուի ընկերներուն գոչեր էր. «Թշնամին կ՚ընկրկի կոր, քիչ մըն ալ քաջուԹիւն եւ Թերեւս այս անգամ ալ կ՚ազատինք»: Ճիշդ այդ վայրկեանին է որ պատահեցաւ այն դժբաղդ արկածներէն մին որոնք ազգերու ճակատագիրը կը վճռեն: Ժան Ճիուսթինիանի որ կայսեր անմիջապէս քովը կը հրամայէր իբր պետ՝ ամենասարսափելի վէրք մը ստացաւ: Առատ արիւնահոսուԹիւն մը սկսաւ եւ ստիպուեցաւ զրեԹէ անմիջապէս պատնէշը

Թողուլ եւ բժիշկներուն յանձնել ինքզինքը: Այս վէրքը իրականօրէն այնքան լուրջ էր որ քիչ օրէն պիտի մեռնէր անոր պատճառաւ, բայց զինքը շրջապատողները անոր ծանրութիւնը չհասկցան. նոյն իսկ իր ժամանակակիցներէն շատեր անիրաւ տեղը կ'ըսեն թէ այդ վէրքը զինքը չէր պարտաւորեր բնաւ ձգել երթալու: Սակայն Կրիտոբուլոս կ'ըսէ թէ ստիպուեցան ձեռքի վրայ զինքը փոխադրել կռիւէն հեռու տեղ մը: Լէօնառ եւ Ֆրանցէս կ'ըսեն նաեւ թէ Կայսրը իմանալուն պէս որ Ճիուսթինիանի որոշեր է պատերազմին դաշտէն հեռանալ՝ պաղատեցաւ անոր որ իր տեղը կենայ, ջանալով անոր ապացուցանել թէ իր վէրքը թեթեւ էր, ծանրանալով սա կէտին վրայ թէ իր մեկնումը պիտի ջլատէր բոլոր Յոյն ու Իտալացի այդ քաջերը, կրկնելով ամենամեծ յուզումով թէ քաղաքին ճակատագիրը իր տալիք որոշումէն կախուած էր: Աւա՜ղ, ամէն բան անօգուտ եղաւ: Ճիուսթինիանի պնդեց իր վիճակին ծանրութեան, իր վէրքին վտանգաւոր հանգամանքին վրայ որմէ այնքան կը տառապէր· Պահանջեց որ քաղաքը տանող դուռին բանալին յանձնուի իր մարդոց եւ դարձեալ պնդեց անմիջապէս երկու պարիսպներուն մէջ գտնուող շրջափակը ձգել երթալու պէտքին վրայ, խոստանալով որ բժիշկները զինքը դարմանելնուն պէս վերադառնայ: Բանալիները բերուեցան եւ քաղաք մտաւ:

Կրիստոբուլոս կ'ըսէ թէ Իտալացի հերոսին հետեւեցան «իր բոլոր զինուորները»: Այս վկայութիւնը ապահովաբար սխալ է: Չորս հարիւր պատերազմիկներէն շատերը մնացին պատնէշին վրայ ուր քաջաբար սպաննել տուին ինքզինքնին: Այդ բաց գաղտնադուռը իրաւցնէ փորձութիւն մըն էր գերմարդկային կռիւի մը մէջ ժամերէ ի վեր պարտասած կռուողներու համար, որոնց հոգեւարքի մօտ հրամանատարը արդէն տարած էին այդ դուռնէն:

Ճենովացի հերոսը փոխադրուեցաւ Ոսկեղջիւրի շղթային ետեւ կապուած իր նաւուն վրայ եւ անկէ յաջողեցաւ Քիոս կղզին անցնիլ, բայց հոն զրեթէ անմիջապէս մեռաւ: Թերեւս ալ ճամբան ալ մեռաւ: Իր դամբարանը կը կենայ

տակաւին Քիոսի Ս. Տօմինիք եկեղեցւոյն մէջ հետեւեալ լատիներէն տապանագիրով. «Աստ հանգչի Ժան Ճիուսթինիանի, նշանաւոր մարդ, Ճենովացի պատրիկ, Քիոսի Մաօնականներէն, որ Մէհմէտ Թուրքին դէմ մղուած Կ. Պոլսոյ պատերազմին մէջ Արեւելքի քրիստոնեաններու վերջին կայսեր Ամենապայծառ Կոստանդիանոսի քաջարի հրամանատարը ըլլալով մահացու վէրք մը ստացաւ»:

Զանազան պատմագիրներ բոլորովին տարբեր կերպերով կը պատմեն Ճիուսթինիանի վիրաւորման պարագաները. իսկ վէրքին տեսակին ա՛լ աւելի անհամաձայն են: Ֆրանցէս որ Ճենովացի հերոսին համար շատ խիստ է եւ նոյն իսկ զայն իբր վատ կ'ամբաստանէ այնքան փաքր եղբը, կ'ըսէ թէ նետ մը զինքը վիրաւորեց աջ ոտքէն: Լէօնար կ'ըսէ թէ աճուկէն վիրաւորուեցաւ: Քալքոնտիլաս կ'ըսէ թէ գնդակ մը ձեռքին զարկաւ: Կրիտոբուլոս կ'ըսէ թէ գնդակը մեծ էր, եւ թէ ուժգնօրէն նետուած ըլլալով գործիքով մը՝ անցաւ զրահին մէջէն եւ կուրծքը ծակելով կռնակէն դուրս ելաւ: Ուրիշ երկրորդական հեղինակներ բոլորովին տարբեր բաներ կ'ըսեն: Գալով Պարպարոյի, Վենետիկցիի իր կոյր ատելութեան մէջ Ճենովացիին դէմ՝ ո եւ է վէրքի ակնարկութիւն իսկ չըներ եւ պարզապէս կ'ամբաստանէ զայն իբր փախուստ տուող: «Այս բանը տեսնելով,—կ'ըսէ,—թուական առաւելութիւնը, ընկճուած պաշարեալներուն յուսահատութիւնը պատմելէ ետքը,— Ճենովացի Ժան Ճիուսթինիանի իր տեղը ձգել փախչիլ որոշեց եւ դէպի իր նաւը վազեց որ Շղթային քով կապուած էր, եւ փախած ատենը, հակառակ ընդհանուր հրամանատարը ըլլալուն, կը պոռար. «Թուրքերը քաղաք մտան», եւ իր կոկորդովը կը ստէր քանի որ տակաւին մտած չէին անոնք:»

Բոլոր այս վերջին տողերը զարշելի ստեր են պարզապէս: Ճշմարտութիւնը այն է որ այդ քաջը իր նաւը տարուեցաւ իրեններուն կողմէ, առանց նոյն իսկ բառ մը կարենալ արտասանելու, այնքան կը տառապէր իր վէրքէն:

Իր նաւուն Քիոս հասած ատենը հաւանաբար արդէն իսկ մեռած էր:

Ճիուսթինիանի այս մեկնումը, սակայն, հակառակ ամէն բանի, մութ կը մնայ դարձեալ: Ժամը չափազանց զարհուրելիօրէն կրիտիկական էր, որպէսզի ոեւէ ժամանակակից վկայութիւն իբր բոլորովին անկողմնակալ կարենանք ընդունիլ: Լէօնաու արքեպիսկոպոսը, որ սակայն Ճենովացի էր ծննդեամբ եւ որ շարունակ Ճիուսթինիանիի մասին կը խօսի ամենամեծ հիացումով, շատ խիստ է անոր նկատմամբ իր 1453 օգոստոս 16ի համբաւաւոր նամակին մէջ այն տաբօրինակ ձեւին համար որով այն Թողուց կռուի դաշտը: Ըստ իրեն, որքան մինչեւ այն պահը քաջ եղած էր, այնքան վատ գտնուեցաւ: Արիւնին կորուստէն սարսափած, մահուան վախովը լեցուած, գաղտնօրէն իր կռուի վայրը Թողուց եւ գնաց բժիշկ մը փնտռելու: «Եթէ իր տեղը ուրիշ մը դնէր, կը գոչէ բարեպաշտ կրօնաւորը․ հայրենիքը Թերեւս չի կորսուէր. Իտալացի զինուորներուն կորովը ընկճուեցաւ իրենց պետին մեկնումով եւ անոնք սկսան խումբ խումբ ձգել փախչիլ»։ Բերայի Ճենովացիներուն պետն ալ զայն խստօրէն կը դատէ: Ան ալ կը պատմէ Թէ ինչպէս այնքան ատեն հերոսաբար կռուելէ ետքը՝ Ճիուսթինիանի Թողուց իրեն վստահուած գործը եւ ծովեզերք երԹալով փախաւ: Ֆրանցէս կ՚ըսէ Թէ ան ելաւ գնաց առանց խորհելու Թէ ի՛նչ պիտի ըլլային իր մարդիկը եւ առանց իրեն փոխանորդ մը դնելու: Աւա՜ղ, դժբաղդ մարդը ինքզինքը մահացու կերպով վիրաւորուած կը զգար: Բոլոր այս վկայութիւններէն յայտնի է Թէ այդ պահուն ընդհանուրին կարծիքը, սխալ տեղեկութիւններու վրայ հիմնուած էր: Այսօր մենք աւելի անկողմնակալ կերպով կը դատենք այդ քաջարի պետը որ փառքով ծանրաբեռնուեցաւ ամբողջ պաշարման միջոցին եւ միմիայն սարսափելի վէրքի մը հարուածին տակ գերագոյն պահուն ձգեց կռուի վայրը, այնքան ծանր վէրք մը որ քիչ օր ետքը անկէ պիտի մեռնէր: Ապահովաբար սաստիկ ֆիզիքական ցաւը եւ արիւնի կորուստը այդ քաջարի հերոսին կորովը ջլատեցին:

Բան մը կայ որ ապահով է սակայն, սա թէ այդ հրամանատարին մեկնումը, պաշտպանութեան գործին ամէնէն փայլուն պետին, այդքան դժբաղդներու գերագոյն յոյսին հեռանալը զարհուրելի աղէտ մը, անդարմանելի կորուստ մը եղաւ։ Ամբողջովին բարոյականնին աւրեց թէ իր Իտալացի զինուորներուն եւ թէ այդ զարհուրելի գիշերուան սկիզբէն ի վեր անոնց քովն ի վեր կռուող Յոյն պատերազմիկներու փոքրիկ խումբին։ Բոլոր պատմագիրներն ալ միաձայն կ՚ըսեն թէ երբ այդ Իտալացի քաջերը տեսան իրենց տիրոջ մահամերձ վիճակի մէջ տարուիլը՝ իրենք ալ սկսան փախչելու միջոցներուն վրայ խորհիլ, մանաւանդ որ գերմարդկային կռիւին երկար ժամերուն միջոցին սպառած էին բոլորովին։

Այն լուրը (թէ իրենց միակ յոյսը եղող այդ հրամանատարը ալ չիկար) քաղաքին մէջ ալ յուսահատութեան պատճառ եղաւ։ «Ժողովուրդը, կ՚ըսէ նենգօրէն Պարպարօ, լսելով որ Ճիուսթինիանի կը պոռայ թէ Թուրքերը քաղաքին մէջ մտած էին՝ հաւատացին անոր խօսքին, եւ ամէնքն ալ յանկարծ բաց գաղտնադուռէն սահելով ուրկէ հերոսը անցեր էր, սկսան փախչիլ, եւ յանկարծ ամէնքը միասին ձգեցին իրենց գործերը եւ խենդերու պէս դէպի ծովեզերք վազեցին ջանալու համար նաւերուն եւ ցռկանաւերուն մէջ ապաստանիլ, ամէնքն ալ Աստուծոյ գթութիւնը հայցելով եւ կիներու պէս հեկեկալով»։

Այդ վէրքէն յառաջ եկող այդ մեկնումը իրաւցնէ անդարմանելի կորուստ մը եղաւ։ Հակառակ քաղաքին պաշտպաններուն փոքրիկ թիւին, կ՚ըսէ Պ. Բիրս, ասոնք երբեք յոյսերնին վերջնականապէս չէին կորած, եւ Կալաթայի Ճենովացիներուն պետը, քաղաքին գրաւումէն մէկ ամիս վերջը կը գրէր թէ ինք եւ Ճենովացիները ջերմապէս փափաքող էին յարձակումին, որովհետեւ քրիստոնեաներուն յաղթանակը ապահով էր իրենց համար։ Միւս կողմէ՝ պատճառներ կան կարծելու թէ պաշարողները այնքան ալ վստահ չէին վերջնական յաղթանակին մասին որչափ կ՚ուզէին հաւատացնել։ Արդէն գիտենք որ Մէհմէտի

բանակին մէջ զօրաւոր կուսակցութիւն մը կար որ հաշտութեան կողմնակից էր եւ որուն գլուխն էր Մեծ Եպարքոս Խալիլ փաշա: Շարունակ տարածուող այն լուրը թէ Արեւմուտքէն նաւաբաժին մը արշիպեղագոս հասեր էր եւ դէպի Պոլիս կ'երթար, բոլորովին ճիշդ էր եւ գիտենք այսօր թէ Պապին կողմէ ղրկուած երեսուն նաւեր Քիոս հասեր էին եւ այդ նաւահանգիստին մէջ նպաստաւոր հովի մը կը սպասէին երբ Մէհմէտ Բ.ի վերջնական յաղթութեան լուրը ընտացան: Ամիս մը կար արդէն որ հակառակ հովերու պատճառաւ այդ նաւատորմիղը այդ նաւահանգիստին մէջ կը կենար՝ երբ քաղաքը ինկաւ:

Պաշարուած քաղաքին մէջ, ինչպէս նաեւ թրքական բանակին մէջ ուրիշ լուրեր ալ կը շրջէին. կ'ըսէին թէ հունգարական բանակ մը յառաջ կը քալէր պաշարողները կ'ըռնակնուն զարնելու համար: Կայսրը Սէլէմպրիա քաղաքը խոստացած էր հերոս Հունիատի իր օգնութեան ի փոխարէն։ Կրնայ ըլլալ որ այս համաձայնութեան մասին տարտամ լուրեր հասած ըլլային Սուլթանին. բայց այդ համաձայնութիւնը ինքնին շատ չյարմարիր քիչ առաջ մեր պատմած հունգարական դեսպանութեան մը Սուլթանին մօտ գալու խնդրին։ Տակաւին կը յիշուի Քաթալօնիոյ թագաւորը որ կայսեր հետ համաձայնած էր Լէմնոս կղզին փոխարէն անոր օգնութեան գալ: Բոլոր այս պատճառներով շատ հաւանական է որ Մէհմէտ Բ. գաղտնօրէն կը վախնար որ այս օգնութիւններէն մէկուն կամ միւսին պատճառաւ մի գուցէ պաշարումը վերցնել ստիպուի: Եթէ ուրեմն պաշարեալները յաջողէին վերջնականօրէն ետ մղել մեծ յարձակումը եւ գոնէ քանի մը օր ալ դիմադրել, թերեւս Սուլթանը ստիպուէր ետ քաշուիլ: Ճիուստինիանիի մեկնումը իրա՛ւ գերագոյն հարուածը, մահացու հարուածը եղաւ: Ալ հիմայ օգնութեան եկող նաւատորմը շատ ուշ պիտի մնա՛ր...:

Ճենովացի հրամանատարին մեկնումին այս ցաւալի միջադէպներուն առեն՝ դժբաղդ կայսրը, ափյափոյ շինուած պատնէշին ետին, կը շարունակէր ամէնէն հիանալի քաջու-

թիւնը ցուցընել, իր բոլոր կորովովը ջանալով իրարու քով բերել վերջին ուժասպառ պաշտպանները, ինք անձամբ կռուելով ամէնէն հիանալի ուժով: Անմիջապէս ինք ձեռք առաւ ձիուսթինիանիի տեղ կռւին ղեկավարութիւնը, պաղատելով փախչիլ ուզողներուն որ գերագոյն ճիգ մը ընեն, իր ձայնովը ու շարժումներովը իր քով հաւաքելով պարտականութեան հաւատարիմ մնացող Յոյներն ու Իտալացիները: Այս քանի մը քաջերուն գլուխը անցած վերջին անգամ մըն ալ խոյացաւ խառնակութեան ամէնէն սաստիկ տեղը՝ յուսահատութեան քաջ ուժովը պաշտպանելով ափյափոյ շինուած պատնէշին վերջին մնացորդները:

Սուլթանը որ փոսին դիմացի եզերքէն, սաստիկ յուզուած, ներկայ կը գտնուէր կռւին զանազան երեւոյթներուն՝ նշմարած էր բոլոր այս արագ եւ սարսափելի տռամը, ձիուսթինիանիի հեռացումովը յառաջ եկած յուսահատութիւնը, պաշտպաններու թիւին յանկարծ պակսիլը որոնք զաղտնի կը փախչէին կեանքերնին ազատելու համար, նաեւ գերմարդկային յոգնութիւնը անոնց որ տակաւին կը կռուէին պատնէշին մնացորդները պաշտպանելու համար: Ամենասաստիկ ուրախութիւնով մը բոլոր այս նշաններէն հասկնալով թէ հոգեբանական վայրկեանը վերջապէս եկեր էր, յառաջ խոյացաւ եւ իր Եէնիչէրիներուն պոռաց յաղթական ձայնով մը՝ «Քաղաքը ձեռքերնիս է, արդէն իսկ մեզի կը պատկանի. պաշտպանները արդէն իսկ կռնակնին դարձուցած են մեզի, ալ չեն համարձակիր կոր մեզի սպասելու հաստատօրէն: Պարիսպը լքուած է իր պաշտպաններէն: Քիչ մը եւս յոգնութիւն եւ Քաղաքը մերը պիտի ըլլայ: Մի թուլնաք ուրեմն, այլ դէպի գործ դիմեցէք քաջութեամբ եւ յաղթական պիտի ըլլաք, ես ալ նմանապէս»:

Այս խօսքերը ըսելով, կը շարունակէ Կրիտոբուլոս, Սուլթանը անոնց գլուխը անցաւ: Եւ Թուրքերը վազելով, ահռելի աղաղակներ արձակելով, հետեւեցան Սուլթանին եւ կարճ ու կատաղի կռիւէ մը ետքը պատնէշն ի վեր մագլցեցան եւ անոր տէր եղան վերջին պաշտպաններն ալ փախցնելէ ետքը: Անկէ՝ պաշարեալներուն մէկ մասը պա-

րիսպէն քովի խորունկ փոսին մէջ նետեցին ուրկէ դուրս ելլելը դժուար էր եւ ամէնքն ալ հոն ջարդեցին: Մէկ մասն ալ մղեցին եւ հալածեցին դէպի այն պզտիկ դուռը զոր Ճիուսթինիանի բանալ տուեր էր մեծ պարիսպին մէջ աւելի դիւրաւ կարենալ հաղորդակցելու համար ըստ բաղդի շինուած ցցապատնէշին հետ: Հոն ալ սարսափելի հրմշտուկ մը եւ ջարդ մը տեղի ունեցաւ, որովհետեւ փախստականները հոն վազեր էին յաղթականներուն ձայնը լսելնուն պէս»: Կրիտոբուլոս այս այնքան՝ կենդանի պատմութիւնը սա յիշատակելի բառերով կ'աւարտէ. «Հոն է որ ինկաւ Կոստանդիանոս կայսրն ալ, իր հաւատարիմներէն շրջապատուած՝ փառաւոր կերպով կռուելով»:

Բիւզանդիոնի վերջին վեհապետին այս եղերական մահը պատմելէ առաջ, քիչ մը ետ դառնանք եւ քանի մը տարբեր դէպքերն ալ նկարագրենք այս գերագոյն ու զարմանալի պատերազմին: Սուլթանը ամենամեծ վարձատրութիւններ խոստացած էր այն զինուորին որ ամէնէն առաջ պիտի կրնար պարիսպին գագաթը բարձրանալ: Ջական փաշայի զինուորներէն ենիչէրի մը, Հասան անունով, Պրուսայի Լոբատիոն քաղաքէն, այդ փառքը ստացաւ: Անիկա հսկայական հասակ մը ունէր. ձախ ձեռքով վահանը գլխուն վերեւ բռնած ու աջով սուրը սեղմած, առաջին անգամ ինք յաջողեցաւ կործանած պատնէշին գագաթը հասնիլ, երեսուն ուրիշ ենիչէրիներ ետեւէն ձգած: Յոյները տակաւին կատաղութեամբ կը դիմադրէին ու նետերով ու ժայռի խոշոր կտորներով կը հարուածէին յարձակողները: Այս գերագոյն գիրկընդխառն կռիւին մէջ տասնեւութ հոգի սպաննեցին, բայց Հասան յաջողեցաւ բաւական երկար ատեն դիմանալ պատնէշին վրայ եւ թոյլ տալ ողջ մնացողներուն իր քովը գալու եւ պատնէշէն անցնելու: Ասկէ առաջ եկաւ բուռն կռիւ մը այս այնքան անհաւասար թիւով կռուողներուն միջեւ: Հասան քարէ մը ծանրապէս վիրաւորուած, գետին սահեցաւ, ինկաւ, ուրիշ շատ մը քարի հարուածներ ալ ստացաւ, ու ծունգի վրայ երկար ատեն յուսահատօրէն պաշտպանեց ինքզինքը, մինչեւ որ վէրքերով

ծածկուած ու Յոյներու մեծ բազմութենէն վերջապէս յաղթահարուած, հազար նետերով ծակծկուած, հոգին տուաւ։

Սակայն կռիւը խիստ անհաւասար էր։ Թուրքերը հազիւ տէր դարձած պարիսպին բեկորներուն, նորաշէն պատին մնացած մասերուն վրայէն ալ անցան եւ յանկարծակի մեծ բազմութեամբ երեւցան ներսի կողմը։ Վախճանն էր այս, գերագոյն վախճանը։ Ցարձակողներու անհուն բազմութիւնը վերջապէս տարեր էր յաղթանակը եւ աւերիչ ալիքի մը նման սկսեր էր տարածուիլ անհուն քաղաքին մէջ։ Վէրքերով ծածկուած, յոգնութենէ ընկճուած, ու ժամերով տեւող այս սոսկալի կռիւէն անօթութենէ ու ծարաւէ մեռնելու աստիճանին հասած վերջին պաշտպանները ի զուր խօլ քաջութեամբ տակաւին կը կռուէին, գրեթէ վայրկեանապէս ճզմուեցան ամէն կողմերէ իրարու ետեւէ անդադար հասնող յարձակողներու բազմութեան տակ։ «Վայրենի աղաղակներ արձակելով ու իրար հրելով, կ'ըսէ Կրիտոբուլոս, Թուրքերը, Սուլթանին ետեւէն, անցան ցցապատնէշը եւ հոնկէ վանեցին Յոյները, որոնք մեծ պարիսպին եւ նորաշէն պատին միջեւ խորունկ փոսը ապաստանեցան եւ որովհետեւ փախչելու միջոց չկար, չի կրցան դուրս ելլել անկէ ու ամէնքն ալ սպաննուեցան այդ տեղ։ Շատերն ալ վազելով հասան մինչեւ ծառապատնէշը որուն Թուրքերը պաշարման սկիզբէն ի վեր առաջին անգամ ըլլալով տիրացեր էին ու հոն ջարդուեցան։» Հոգեվարքներու ողբերը, մորթուողներու ոռնումները կը խառնուէին Ենիչէրիներու յաղթութեան աղաղակներուն եւ սարսափելի այս պատերազմին հազար տեսակ աղմուկներուն։ Տասնադարեան կայսրութիւնը կը տապալէր այս նոխճիրին մէջ, ճշմարտապէս դժոխային տեսարան մը պարզելով։

Քանի մը Թուրք զինուորներ մեծ պարիսպն ի վեր խոյացան փախուստի ինկած վերջին պաշտպաններուն ետեւէն ու քարերով ծածկեցին զանոնք. հոս ալ կարճ ու սաստիկ կռիւ մը սկսաւ եւ շարունակեց Լիկոսի հովտին ափափոյ շինուած պատնէշին եւ Թերեւս Մէզօթէյխոնի ամբողջ պատին երկայնութեամբը։ Ցանկարծ, պատերազմին

այս վերջին վայրկեանին, պատնէշին առջեւէն ու ետեւէն՝ միանգամայն, ամբողջ քաղաքին մէջ, մինչեւ Ոսկեղջիւրի ուղղութեամբ, ահռելի աղմուկ մը հնչեց, կարծես սարսափահար ժողովուրդին վերջին հոնդիւնը ըլլար, ու վայրկեանապէս տարածուեցաւ. ամէն կողմերէն «Առնուեցաւ քաղաքը» զարհուրելի ճիչը կը բարձրանար որ մահուան զանգակի ղօղանջի նման արձագանգ կուտար ամէն մէկ քաղաքցիի սրտին մէջ: «Քաղաքը առնուեցաւ, կ'ոռնային փախչողները, թուրք դրօշակները աշտարակներու վրայ ծածանիլ սկսան»: Ինչպէս գիտենք, այս աղաղակներուն պատճառը «Քէրքօբօրթա»յէն ներս մտնող զինուորներն էին որոնք պարիսպին մեծ աշտարակներուն մէկ քանիին վրայ կայսերական դրօշը վար նետեր ու անոր տեղ Մէհմէտի դրօշը տնկեր էին։ Ու հիմա կայսերական պալատին եւ ութը դարէ ի վեր մահմետական ամէնէն կատաղի յարձակումները միշտ ետ վանող այս մեծ քաղաքին վրայ իսլամին մահիկը կը ծածանէր: Ու ամէն կողմերէ, նաւատորմին նաւերէն ու բոլոր պատերու որմածակերէն, պաշարող ու պաշարեալ, այս անլուր տեսարանը կը դիտէին:

«Անմիջապէս, կը շարունակէ Պարպարօ, Ենիչէրիները, բանակին մնացած մասը ետեւէն, հեղեղի նման քաղաքին մէջ խոյացան, մէկ քանին ծիուսթինիանի բանալ տուած պզտիկ դռնէն, ոմանք ալ Մեծ Պարիսպին պատռուածէն։ Իրարու վրայ ելլելով, իրար հրմշտկելով քաղաք մտան ու յաղթական տարածուեցան ամէն կողմ: Սուլթանը, լուսաճաճանչ դէմքով, ոտքի վրայ կեցած, այն պատնէշին առջեւ, որու վրայ իր մեծ դրօշակը տնկուած էր, այս տեսարանը կը դիտէր, որովհետեւ առաւօտը ճաճանչազեղ ծագեր էր:

Յայտնի է որ յարձակող բանակը շանթահարիչ արագութեամբ ներս մտաւ քաղաքէն, որովհետեւ ամէն մէկ զինուոր կը վազէր կողոպուտի յոյսով մոլեգնած: Սա ալ ստոյգ է որ շրջապատին շատ մը կէտերուն վրայէն եւ յաղթականներուն հետզհետէ բացած դուռներէն միանգամայն ներս մտան։ Վերջին քրիստոնեայ փախստականները այնպիսի ուժգնութեամբ մը կը խոյանային ծիութինիանի բա-

ցած դուռնէն ներս, որ շատերը ոտքի տակ կ'երթային եւ Թուրքերը, կատաղօրէն ետեւնուն ինկած, ոչ մէկուն կը խնայէին, ու կոտոր կոտոր կ'ընէին զանոնք։

«Որովհետեւ, կ'ըսէ Կրիտոբուլոս, Թուրք զինուորները, նախ երկար պաշարման տառապանքներէն, եւ յետոյ՝ պաշարման ատեն, քանի մը Յոյն զինուորներու որմածակերուն բարձունքէն արձակած ծաղրերէն ու նախատինքներէն չափազանց կատղած ու փրփրած կը յառաջանային։»

Ճիշդ այդ պահուն, Կայսրը՝ որ Լիկոսի հովիտին հիւսիսային ծայրը խոյացեր էր, մէկ քանի պատնէշներու բարձունքը յանկարծ Թուրք դրօշակներ ծածանելուն պատճառը հասկնալու եւ մանաւանդ «Քէրքօբօրթա»յէն ներս խուժող թշնամի գունդերուն դէմ դնելու համար, տեսնուեցաւ որ նորէն ետ կը դառնար իր արքական նժոյգը հեծած։ Անմիջապէս ափյափոյ շինուած պատին, ուր իրարու ետեւէ Թուրքերը մեծ բազմութեամբ կը հասնէին, տակի պատնէշին վրայ ցատքեց եւ վերջին անգամ մըն ալ աշխատեցաւ իր շուրջը հաւաքել աւա՜ղ, խիստ ցանցառ պաշտպանները։ Ու տեսնելով որ ալ լմնցեր է ամէն բան, իր հաւատարիմներուն պոռաց որ հետեւին իրեն, եւ ձիէն վար իջնելով հանեց վրայէն իր կայսերական զգեստները, մի միայն իր ոսկեզօծ երկգլխանի արծուենշան կարմիր կօշիկները պահելով, սուրը քաշեց, եւ վահանովը ծածկուած, խոյացաւ կռիւին ամէնէն տաք տեղը, վերջին անգամ մըն ալ հոյակապ ուժով ետ մղել ջանալով անհամար թշնամիները։

Ահաւասիկ Ֆրանցէսի սրտաշարժ նկարագրութիւնը. «Երբ իմ սիրեցեալ վեհապետս, անբաղդ կայսրը, այս տեսարանը տեսաւ, արտասուալից աչքերով պաղատեցաւ Աստուծոյ, եւ իրենները յորդորեց եռանդեամբ պատերազմելու։ Աւա՜ղ, յաղթելու ո եւ է յոյս չկար եւ ոչ իսկ օգնութեան։ Պարզ ձիաւոր զինուորի զգեստով, Սամսոնի նման, Կոստանդիանոս ամէնուն սքանչացումը շարժող հոյակապ քաջութեամբ խոյացաւ թշնամիին վրայ փրփրացող առիւծի մը պէս եւ սուրը ձեռքը, բազմաթիւ թշնամիներ սպաննեց։ Արիւնը կը լճանար ոտքերուն տակ։ Աջ կողմէ Ֆրանսուա

Իր մահուան վերջին պարագաներուն վրայ ժամանակակից վկայութիւնները իրարմէ խիստ կը տարբերին, որովհետեւ անոնցմէ ոչ մէկը ներկայ եղած է այդ եղելութեան։ Հաւատարիմ Ֆրանցէս, որ մինչեւ կէս գիշերէն անդին իր տիրոջը քովը կը գտնուէր եւ անոր հետ միասին պատնէշին ամբողջ երկայնութեամբը կատարած էր այն տրամաթիքական պտոյտը, որուն այնքան սրտայոյզ նկարագրութիւնը թողած է մեզի, որոշակի կ՚ըսէ թէ այդ ժամէն յետոյ ալ տեսած չէ իր սիրեցեալ վեհապետը, որովհետեւ պաշտպանութեան բաւական հեռու տեղի մը մէկ ուրիշ կէտը քննելու գացած էր պաշտօնով։ Կրիտոբուլոս, ինչպէս տեսանք, կ՚ըսէ թէ կայսրը զարնուեցաւ ծիւսթինիանիի անցած ջըրհորին մօտը։ Լէօնար Քիոսցի կ՚ըսէ թէ Ենիչէրիէ մը զարնուեցաւ, ոտքի ելաւ, ու նորէն այս անգամ, մահացու կերպով, զարնուեցաւ ինկաւ։ Իսկ Մոնթալտօ երկու տարածայնութիւններ կը յիշատակէ. մին թէ Կայսրը փախչողներու ոտքին տակ մնաց, միւսը թէ Թուրք մը կտրեց անոր գլուխը։ Փիլելֆ կը պատմէ թէ Կայսրը խոյացաւ թշնամիներու բազմութեան մէջ եւ աջ ու ձախ հարուածելով վերջապէս ինքն ալ զարնուեցաւ մեռաւ։ Փուսկուլոս կ՚ըսէ թէ Ենիչէրիներուն հետ հողաբլուրին մօտիկը կռուելով երեք հոգի սպաննեց, յետոյ ինքն ալ սպաննուեցաւ սուրի հարուածով մը։ Ջինքը ճանչցող Թուրք զինուոր մը գլուխը կտրեց եւ Սուլթանին տանելով խոստացուած վարձատրութիւնը ստացաւ։ Դուկաս կ՚ըսէ թէ երկու Թուրք զինուորներ իրարմէ կը խլէին զինքը սպաննած եւ գլուխը Սուլթանին տարած ըլլալու պատիւը. իր հաւատարիմներէն շատեր, ընդ որս մեծդուքս Նօթարաս, ճանչցան զայն. Թուրքերը Օկիւսթէյիոնի մէջ մարմարէ սիւնի մը վրայ ցուցադրեցին այդ գլուխը եւ յետոյ Սուլթանին հրամանով զմռսելով ղրկեցին Պարսկաստան, Արաբիա եւ Փոքր-Ասիա որպէս զի հրապարակաւ պտտցուի։ Մօնթալտօ կ՚աւելցնէ նոյն իսկ որ այս թափառական գլուխը Բաբելոնի փաշային ղրկուած ատեն անոր իբր գերի կ՚ընկերանային քառասուն պատանիներ եւ քառասուն մանկամարդ կոյսեր, տարօրինա՛կ թափօր՝ որ Մէհ-

մէտի կամքով դիտմամբ ղրկուեցաւ ամբողջ Ասիոյ մէջ տարածելու համար Մահիկին յաղթանակին լուրը:

Վերջապէս ահաւասիկ «Բոլոնեացի Եէնիչէրի»ի պատմութիւնը. «Կոստանդիանոս քաջաբար կռուեցաւ եւ Եէնիչէրիէ մը զարնուելով ինկաւ, որ անոր գլուխը կտրեց եւ տարաւ Սուլթանին ոտքերուն առջեւ նետեց՝ «Բարեբաղդ արքայ, ահաւասիկ ամենաաարսափելի թշնամիիդ գլուխը» գոչելով: Սուլթանը Անտրէ անուն բարձրաստիճան քանտարկեալի մը դառնալով հարցուց որ գիտէ՞ր թէ որու գլուխն էր ատիկա: «Մեր տիրոջ, կայսեր», պատասխանեց Յոյնը հեծկլտալով։ Ասոր վրայ Սուլթանը վարձատրեց Եէնիչէրին, որ Սաֆալէր կը կոչուէր եւ Այտընի կառավարութիւնը շնորհեց անոր:»

Իսկ ամէնէն հաւանականն այն է որ յաղթութենէն անմիջապէս յետոյ Սուլթանը հարցուց փնտռեց թէ ի՛նչ եղած էր Կայսրը եւ երկար փնտռտուքներէ յետոյ կօշիկներուն վրայ քանուած ոսկի արծիւներէն գտաւ անոր դիակը: Մէհմէտ անոր գլուխը կտրել ու լուալ տալէ յետոյ ներկայացուց գլխաւոր զօրիներուն, որոնք ամենաբուռն յուզումով ճանչցան զայն:

Թշնամին շրջապատին մէջ մտածին պէս, դեռ հոն գտնուող վերջին պաշտպանները որպէս ականատի մէջ բռնուեցան։ Քաղաք մտնելու իրենց միակ բաց ճամբան Ծիուսթինիանիի անցած պզտիկ ջրհորն էր, որովհետեւ Սէն-Ռոմէնի մեծ դուռը, այսինքն յարձակման դուռը, տակաւին գոց էր: Յոյն եւ Իտալացի դիակներու ահագին շեղջակոյտ մը սերտօրէն դիզուած էր անոր առջեւ եւ անկարելի կը դարձնէր ո եւ է փախուստ: Լէօնար կրօնաւորը կ՚ըսէ թէ գրեթէ ութ հարիւր հոգի, Յոյն կամ Լատին, սպաննուեցան այդ կէտին վրայ: Քաջարի խումբին այս վերջամնացներուն յետին ջարդը տուաւ ափյափոյ շինուած պատին վրայէն քաղաքորմին մէջ խուժող Եէնիչէրիներու խումբ մը: Ասոնք՝ փաղանգաման խմբուած աւլեցին սրբեցին ինչ որ գտան առջեւնին. շնորհիւ իրենց թուական անհուն առաւելութեան, ուզածնուն պէս ջարդեցին բոլոր տակաւին քաղաք

մտնալ չկրցողները: Մեծ պարիսպը, մասամբ կործանած, ու իր պաշտպաններէն լքուած, ա՛լ արգելք մը չէր: Ի վերջոյ Սէն-Ռօմէնի դուռն ալ խորտակուեցաւ ու կռնակի վրայ բացուեցաւ։ Քաղաք մտնելու ա՛լ ո և է արգելք չկար: Խումբ մը վազեց անմիջապէս Էտիրնէ-գաբուսի ու ներսէն բացաւ։ Այդ վայրկեանէն վերջնականապէս Պոլիսը ինկաւ Թուրքերու ձեռքը:

Մինչ արեւելքի յատուկ մայիսի ամսուն ճաճանչագեղ մէկ օրուան շողշողուն արեւը կը բարձրանար այս անհուն, մեծաշուք եւ գերեզմանական տեսարանին վրայ, Սուլթան Մէհմէտ յանկարծ զգաց թէ իր հանճարեղ պատանեկութեան հսկայական ճիգը իր վարձատրութիւնը գտեր էր: Ինչ որ ամբողջ երկու դարեր շարունակ աշխարհի բոլոր ժողովուրդներուն կատարած քսան պաշարումները չէին կրցեր յաջողիլ, ինք՝ շնորհիւ իր կորովին, իր յարատեւութեան, իր զինուորներու հոյակապ եռանդին եւ մանաւանդ իր հրաշալի հրետանիին, կրցեր էր գլուխ հանել: Հիմա իր ոտքերուն տակ կը ճզմէր այս հպարտ քաղաքը, Արեւելքի քրիստոնեայ քաղաքներուն այս թագուհին, որ սկիզբէն ի վեր Մարգարէին անհամար զաւակներուն անխոնջ տենչանքը առ ոչինչ կը գրէր: Ի՛նչ բառերով կարելի է նկարագրել այն խորունկ ուրախութիւնը որ սա պահուն այս փառայեղ միապետին, այս հազիւ քսաներկու տարեկան վեհապետին սիրտը կը սեղմէր, որ սոյն շրջանի ամէնէն հզօր բանակին միահեծան տէրն էր, եւ որ իր նմանը չունեցող պաշարումով մը վերջապէս գրաւէր էր իր կէսին հասած տասնեւհինգերորդ դարու ամէնէն մեծ ու ամէնէն հարուստ այս քաղաքը: Իր խոշոր դրօշին տակ, խալիֆայութեան պատուոյ նշաններէն շրջապատուած, Մէհմէտ, ձի հեծած, երկարօրէն, օրինաւոր հպարտութեամբ դիտեց իր փառաւոր ու նկարագեղ զինուորներուն քաղաք մտնելը, որոնք բոլոր պատռուածներէն ու բոլոր դուռներէն անսպառ հեղեղի նման պարտեալ քաղաքին մէջ կը հոսէին:

Թուրք հօճա Սաատէտտին, իր «Թաճ իւլ Թէվարիխ»ի, այսինքն «Պատմութեան Պսակը» գիրքին մէջ կը պատմէ թէ

*Սուլթանին զունդերը պարիսպին Էտիրնէ-գաբուսիէն Թօփ-գաբու երկարող մասին պատռուածներէն քաղաք մտնելու ճամբայ մը բանալէն յետոյ, պատնէշին դուրսի երեսին հետեւեցան ու անմիջապէս ներսէն բացին բոլոր դուռներն ալ, Ադրիանուպոլսոյ դռնէն սկսելով: Այն ատեն յաղթական Թուրք բանակը, կատարեալ կարգապահութեամբ, զօրաբաժին առ զօրաբաժին, զրաւեալ քաղաքին մէջ մուտք գործեց:*

*Մինչ գլխաւոր յարձակումը Սուլթանին աչքերուն առջեւ իսկ յառաջ կը տարուէր Լիկոսի հովտին մէջ, միանգամայն ուրիշ կողմերէ ալ ուրիշ յարձակումներ կը գործուէին դժբաղդ քաղաքին վրայ: Իրաւ է որ ասոնք աննշան կարեւորութիւն մը ունէին գլխաւոր յարձակումին բաղդատմամբ, բայց կ'արժէ որ քանի մը խօսք ընենք անոնց մասին:*

*Այս յարձակումներու երկու ամենակարեւորներէն մին կը վարէր Զական փաշա, յատկապէս ասոր համար շինուած եւ Ոսկեղջիւրի արեւմտեան ծայրը պատնէշին կարելի եղածին չափ մօտիկը զետեղուած մէկ կամ աւելի խոշոր նաւակամուրջներու օգնութեամբ. իսկ միւս յարձակումն ալ կը վարէր Խարաճա փաշա, որ իր զունդերով կը տարածուէր Էտիրնէ-գաբուէն մինչեւ Թէքֆուր-Սարայ, պատնէշին այն երեք կէտերէն մէկուն դիմաց ուր Մէհմէտ կը պարծենար թէ իր թնդանօթներով մէյ մէկ ճամբայ բացած է քաղաք մտնելու համար: Այս երկու յարձակումներն ալ բոլորովին ձախողեցան: Զական իր բոլոր խումբերը Այվան Սարայի փութանակի շինուած կամուրջին վրայէն դիմաց անցուցեր էր, եւ առտուան առաջին ժամերուն, իր զինուորները ծովուն եւ պատնէշին միջեւ գտնուող ցամաքէ նեղ մասին վրայ դիրք բռնած, առանց վայրկեան մը կենալու, յարձակեր էին պաշտպաններուն վրայ, մինչ իր աղեղնաձիգներն ու հրացանակիրներն ալ, նաւակամուրջին վրայէն նոյնպէս առանց կենալու կրակեր էին անոնց վրայ: Անկէ զատ, այս ճիգերուն ուժ կուտային նաեւ ժամանակով Բերայի բլուրէն Ոսկեղջիւր բերուած եօթանասուն նաւերու զինուորները. այդ նաւերը իրարմէ հաւասար հեռա-*

ւորութիւններով իրենց առջեւէն ու ետեւէն իրարու կապուած կը կենային հիմա, ծոցին մէջ նաւակամուրջներուն ու Ֆէնէրի միջեւ։ Պարպարօ սա վերջին մանրամասնութիւնը կ՚աւելցնէ հոս. «Նաւահանգիստը գտնուող եօթանասուն ֆուստերը, կ՚ըսէ, որոնք Բերայի բլուրին վրայէն փոխադրուած էին, եւ որոնց պետը Զականփաշան էր, ամէնքը միասին Ֆէնէրի վրայ յարձակեցան. իսկ պատնէշին այս մասը պաշտպանող քրիստոնեաները քաջաբար դիմադրեցին եւ շուտով փախցուցին զանոնք յունական հուրի հեղեղներ թափելով վրանին:» Վերջապէս Խարաճա փաշայի գունդերուն բոլոր յարձակումները քաջաբար եւ հզօրապէս ետ մղուեցան Վենետիկցի Գաբրիէլ Թրէվիզանի կողմէ, որ Ոսկեղջիւրի վրայ մինչեւ Ֆէնէր պարիսպը կը պաշտպանէր:

Տօլմա-Պաղչէ խարսխած Թուրք նաւատորմին յարձակումն ալ աւելի յաջողութիւն մը չունեցաւ: «Արեւուն ծագելէն ժամ մը առաջ, Սիւնեըը կոչուած տեղը խարսխած Թուրք տորմիղը խարիսխը վերցուց եւ եկաւ ներկայացաւ Նաւահանգիստի Շղթային առջեւ յարձակելու համար մեր վրայ: Բայց անոնց հրամանատարը տեսաւ թէ լաւ պահպանուած էր մեր նաւահանգիստը․ ինչպէս նաեւ մեր նաւերն ու յածանաւերը, մանաւանդ Շղթային ետին, ուր քով քովի շարուած էին իւրաքանչիւրը ութը հարիւր եւ աւելի թօնօնոց տասը խոշոր նաւեր: Եւ այս նաւապետը, մեր տորմիղէն վախնալով, առանց կռուելու թողուց կռիւի վայրը եւ գնաց հրէական թաղին կողմի պարիսպին դէմ կռուելու: Հոն Ճիւտէքայի ծովեզրին վրայ ցամաք հանեց իր նաւազներուն մէկ մասը, որպէս զի աւելի լաւ կողոպտէ հրեաներուն տուները, որոնք ամէն տեսակ հարստութիւններով, մանաւանդ թանկագին քարերով լեփ լեցուն էին: Ուրիշ աղբիւրներէ գիտենք թէ պատնէշին այս ծովային բաժնին պաշտպանները, քիչուոր բայց քաջասիրտ, եւ որոնց մէջ բազմաթիւ կրօնաւորներ եւ աբեղաներ կը գտնուէին, երկար ատեն Թուրք նաւազներու բոլոր ջանքերը ջլատեցին եւ յաղթականօրէն ետ մղեցին անոնց բոլոր յարձակումները: Միայն, երբ Սէն-Րօմէնի դռնէն Մարմարա իջնող

առաջին յաղթական գունդերը իրենց ետեւէն յարձակեցան վրանին, հասկցան իրենց խիզախ դիմադրութեան անօգուտութիւնը: Ու միայն այն ատեն, իրենցմէ մէկ քանին, յուսահատութենէ ինքզինքնին վար նետեցին պատնէշէն, մինչ ուրիշներ, կեանքերնին գոնէ ազատելու յոյսով անձնատուր եղան:

## ԳԼՈՒԽ Թ.

*Կռիւին վերջին միջադէպերը.— Թուրք բանակը Պոլսոյ մէջ. — Ջարդ եւ թալան.— Թուրքերը Այա-Սոֆիայի մէջ.— Սուլթանին մուտքը քաղաքին եւ Այա-Սոֆիայի մէջ. — Բազմաթիւ քրիստոնեաներու փախուստը. — Յաղթուածներուն էն նշանաւորներէն մէկ քանիին եղերական վախճանը։*

*Թրքական անհամար բանակը հիմա ամէն դռուռներէն յաղթուած քաղաքին վրայ կը թափէր։ Անհուն պարիսպին ամբողջ երկայնքին վրայ՝ վերջին պաշտպանները, այս սարսափելի լուրէն եւ այս զարհուրելի տեսարանէն ընկճուած, ալ միայն փախչիլ կը խորհէին ջարդէն ազատելու համար, խումբով կը ձգէին կը հեռանային պատնէշէն եւ գրեթէ ամէնքը միասին դէպի Նաւահանգիստը կը վազէին, արդէն իսկ իրենց ետին կարծես զգալով յաղթականներուն սուրը։ Զարհուրելի տեսարան մըն էր աս, պատմութեան էն սարսափելիներէն մէկը։ Այն պահն երբ վերջին պատերազմիկները քաղաք կը մտնէին պարիսպէն հեռանալով եւ վազելով քաղաքին կեդրոնին կը մօտենային, իրենք ալ կը խառնուէին այն անհուն բնակչութեան, որ խենթերու պէս դէպի Ոսկեղջիւր կը վազէր, հետզհետէ որ Թուրքերուն մուտքին զարհուրելի լուրը ամէնէն հեռաւոր թաղերուն մէջ ալ մեծ սարսափներ կ՚արթնցնէր։ Ամէն կողմ խղճալի փախստականներ կային միայն, ամէն սեռէ, ամէն տարիքէ, ամէն աստիճանէ։ Մարդկային հեղեղ մը դէպի Նաւահանգիստ կը վազէր ամէն փողոցներէն, ամէն հրապարակներէն։ Այս շուարած ամբոխէն յուսահատ անհուն աղաղակ մը կը բարձրանար անդադրում։*

*Թրքական նաւերէն ցամաք ելլող առաջին յարձակողներուն մէջ պէտք է հաւանաբար դնել անոնք որ Ծխուտէքայի*

ծովեզրը ելան (Պոլսոյ Հրեայ Թաղը), անմիջապէս որ այդ կէտին վրայ պատնէշին վերջին պաշտպանները ձգեցին փախան, հոն ուր այսօր Պոլսոյ մաքսատան շէնքը կառուցուած է, Վալիտէ Սուլթանի ձանօթ մզկիթէն ո՛չ հեռու:

Լէօնառ Արքեպիսկոպոսը եւ Ֆրանցէս կը յիշեն քաջարի պաշտպանութիւնը Բօլ, Անթուան եւ Թրոյիլօ Պօքիարտի եղբայրներուն, այն քաջարի Իտալացիները, որոնք Ս.-Պոլսոյ դրան մօտի պատնէշին պաշտպանութիւնը քիչ մը ատեն ալ շարունակեցին, մինչեւ որ նշմարեցին թէ Թուրքերը խուռներամ կը մտնէին քաղաքին մէջ, իրենց ձախ կողմը: Ձիերնուն վրայ նստած, իրենց զինուորներուն գլուխը անցած, կատաղիօէն պաշտպաներ էին ինքզինքնին, բազմաթիւ յարձակողներ ջարդելով: Վերջապէս տեսնելով որ ա՛լ անօգուտ է կռիւը երկարել՝ որոշեցին կեանքերնին ազատել. դէպի նաւահանգիստ քշեցին ձիերնին, ջանալով նաւերուն հասնիլ: Ճամբան պաշարուեցան թուրք զինուորներէ, բայց զէնքը ձեռքերնին, արիւնոտ վէրքերով ծածկուած, յաջողեցան ճամբայ մը բանալ յաղթականներուն մէջէն եւ Կալաթա հասան:

Երրորդ խումբը յարձակմամբ գրաւուեցաւ Սուլթանին հետեւորդներէն ալպանացի պետի մը, Էլիաս պէյի կողմէ, որ վերջէն Սուլթան Պայազիտ Բ.ի ախոռապետը կամ «Իմրախոր»ը եղաւ. Սուլթանը ի վարձ իր ծառայութեանց իրեն նուիրեց Սամաթիոյ թաղին մէջ գտնուող Ս. Յովհաննէսի համբաւաւոր վանքին հսկայ շէնքերը որոնք յետոյ իր անունով կոչուեցան «Իմրախոր ճամիսի»:

Ալ հիմա անհուն պարիսպին ամէն մէկ կէտին վրայ՝ կայսեր դրօշներուն տեղ կը ծածանէին Սուլթանին հսկայական դրօշակները: Յոյները ա՛լ փախեր էին: Իսկ թուրք նաւազները, դրօշակներուն այս փոփոխութիւնը տեսնելով, ուրախութենէ եւ թալանի ծարաւէ գինովցած, պատերն ի վեր կը մագլցէին քաղաք մտնելու համար: Թրքական նաւատորմը ամբողջովին պարպուեցաւ իր նաւազներէն որոնք թալանի կը վազէին: Քաղաքին բնակիչներէն անոնք որ չէին կրցած ճենովական նաւերը մտնել՝ խուժեր էին Այա-Սօֆիա-

ջի եկեղեցին որ խղդուելու չափ լեցուեցաւ. դրան մօտ եղողները դուռը ներսէն գոցեցին նիգերով: Ուրիշներ ալ քաղաքին մէջ աստին անդին կը վազէին՝ առանց գիտնալու թէ ուր պէտք է երթան: Հազարաւոր կիսամերկ կիներ ու տղաքներ յանկարծ լեցուեցան փողոցները, որպէս թէ երկրաշարժ մը զիրենք տուներնուն դուրս նետած ըլլար: Իրենց սարսափի աղաղակները խառնուելով Թուրքերուն յաղթական աղաղակներուն՝ մինչեւ երկինք կը բարձրանային:

Սուրբ Թէոդորոսի եկեղեցին այդ գիշերը հսկում կար եւ լեփ լեցուն էր երկու սեռէ եւ ամէն տարիքէ հաւատացեալներով: Արշալոյսին, հանդիսաւոր թափորով մը, մոմերը ձեռքերնին եւ արտասուալից՝ ելան եկեղեցիէն. յանկարծ, հաւանաբար այսօրուան Վէֆայի հրապարակը հասած ատեննին՝ առաջին անգամ քաղաքը մտնող Թուրքերու խումբ մը դէմերնին ելաւ. դժոխային տեսարան մը պարզուեցաւ հոդ, ամէնքն ալ, ծեր, կին, տղայ, վայրկենապէս խողխողուեցան. շատ հաւանաբար ատոնք առաջին զոհերը եղան քաղաքին առման յաջորդող ջարդին: Դիւրին է երեւակայել այդ սարսափի տեսարանը։ Եկեղեցին օրուան տօնին առթիւ՝ վարդերով զարդարուած էր. ատոր համար ալ անկէ ի վեր կոչուած է «Կիւլ Ճամիսի»:

Այդ պահուն մեծ քաղաքին բոլոր թաղերուն մէջ պատահած զարհուրանքը անկարելի է երեւակայել կամ նկարագրել. ամբողջ անհուն քաղաքին բնակչութիւնը ջարդուեցաւ կամ գերի դարձաւ: Ամէնէն աւելի կատաղիները ջարդի եւ թալանի գործին մէջ՝ թրքական նաւատորմին նաւազներն էին որոնք հրէական թաղէն ներս մտեր էին քաղաքին մէջ: Բարեբաղդաբար ամէնքն ալ թալանի խորհեր էին, մանաւանդ ինչ որ քաղաքին շատ մը բնակիչներուն եւ մանաւանդ շատ մը Իտալացիներու կեանքը ազատեց, քանի որ կրցան այդպէսով նաւերը մտնել:

Ի՞նչպէս նկարագրել այդ զարհուրելի սարսափը բովանդակ քաղաքին, սարսափելի զարթնումը այդ քրիստոնեայ ամբոխին որ տակաւին երէկ կ՚օրօրուէր խենդ յոյսերով, այնքան գեղեցիկ, հարուստ, վայելչագեղ եւ երբեմն ալ նշա-

նաւոր կիներու սարսափը որոնք յանկարծ դէմ դէմի կը գտնուէին այդ յարձակող խուժանին հետ, որ միայն բռնաբարելու, ջարդելու եւ գերի տանելու կը խորհէր: Ամէն մէկ թաղ, ամէն մէկ փողոց սարսափի եւ հոգեւարքի տեսարաններու թատր կը հանդիսանար: Պաշտպաններուն մէջ ա՛լ զրեթէ կռուելու կարող մարդ չէր մնացեր: Անշուշտ անձնական դիմադրութիւններ եղան քիչ շատ. նոյն իսկ ծերեր ու կիներ՝ գիտնալով այն ահռելի վիճակը որու պիտի ենթարկուէին՝ ուզեցին կեանքերնին սուղ ծախել գոնէ: Բայց քաղաքին փողոցներուն մէջ ոչ մէկ վայրկեան կազմամակերպուած կռիւ տեղի ունեցաւ:

Թուրքերը հաւանաբար աւելի մեծ դիմադրութիւն մը կը սպասէին, չէին կրնար համոզուիլ թէ այնքան երկար ատեն դիմադրող քաջերը այդ քանի մը մարդիկն էին միայն: Նոյն իսկ իրենց անձնասիրութիւնը վիրաւորուած կը զգային ատկէ: Համոզուած ըլլալով որ քաղաքին մէջ ալ ահարկու ընդդիմութիւն մը պիտի ըլլայ իրենց՝ ներս մտածնուն պէս սկսան դէմերնին ելլողը ջարդել: Դուկաս կ՚ըսէ թէ զրեթէ երկու հազար հոգի ջարդեցին այսպէս. աւելի վերջն էր որ քիչ մը աւելի ընտրութեամբ սկսան գործ տեսնել, եւ բնակչութեան ծաղիկ հատուածը գերութեան համար պահեցին: Բայց առջի բերան ջարդը սարսափելի եղաւ: Այդ անհամար զինուորները, յաղթութենէ զինովցած, երկար պաշարման եւ մանաւանդ այդ վերջին գիշերուան սարսափելի յոգնութիւններէն կատղած, նաեւ այն ծաղրերէն ու նախատական խօսքերէն զորս պաշարեալները չէին դադրած իրենց ուղղելէ ամբողջ պաշարման միջոցին՝ ա՛լ ոչ էրիկ մարդու կը խնայէին ոչ կնոջ, ոչ ծերի, ոչ տղու, ոչ ազնուական տիկնոջ, ոչ քահանայի, ոչ վանականի: Տիեզերական բնաջնջում մըն էր պարզապէս: Առտուանց կանուխ բանակին մուտքէն սկսեալ մինչեւ կէս օր տեւեց այսպէս:

Յետոյ ջարդը դադրեցաւ. շահու սէրը յաղթանակեց ամէն զգացումի: Ամէնէն գեղեցիկ աղջիկներն ու երիտասարդները, մանաւանդ ազնուական ընտանիքներուն պատկանողները խնամքով զատուեցան եւ պահուեցան իբր

տպրանք: Թուրք պատմիչ մը, Սաատէտտին կ'ըսէ. «Թուրք պատերազմիկները, Թալանի արտօնութիւն ստացած ըլլալով, ուրախ զուարթ քաղաքին մէջ խոյացան եւ հոն, անոնց ինչքերուն եւ ընտանիքներուն բռնի տիրանալով խեղճ անհաւատները ցաւերնուն լացուցին, ըստ հրամանին Թէ «Ծերերը սպաննեցէք, բայց երիտասարդները գերի վարեցէք:»

Ռիքքէրիօ կ'ըսէ Թէ՝ յաղԹականները ամէն տեղ իրարու հետ կը կռուէին ամէնէն գեղեցիկ երիտասարդները ու աղջիկները իրարու ձեռքէ խլելու համար:

Պարպարօ կը պատմէ Թէ բոլոր կրօնաւորուհիները նաւատորմին վրայ փոխադրուեցան հոն պղծուելու եւ յետոյ աճուրդով ծախուելու համար, նոյնպէս քաղաքին բոլոր աղջիկները: Մէկ քանին սակայն նախընտրեցին խեղդուիլ հորը նետուելով՝ քան Թէ Թշնամիին ձեռքը իյնալ: Նմանապէս ամուսնացած կիներ ալ անձնասպան եղան: Ամբողջ Թրքական նաւատորմը լեցուեցաւ գերիներով եւ ինչքերով: Սովորութիւն էր որ, քանի մը Թուրքեր կողոպուտի համար տուն մը մտածնուն պէս, անմիջապէս հոն իրենց դրօշը կը տնկէին եւ ուրիշ Թուրքեր այդ դրօշը տեսնելով ա'լ այդ տունէն ներս չէին մտներ, այլ ուրիշ տուն մը կը փնտռէին հոն տնկելու համար դրօշակնին: Բոլոր եկեղեցիներուն եւ բոլոր վանքերուն վրայ ալ այդ դրօշներէն տնկեցին:»

Երեւակայութեամբ դժուար է պատկերացնել այս տեսակ սպաննութեան տեսարան մը այսքան լայն միջոցի մը վրայ: Բոլոր այդ ամէն տարիքէ ու սեռէ դժբաղդները փողոցներուն մէջ տարածուած կը վազէին, կուլային, կը պոռային, կ'ոռնային, կը հալածուէին Թուրքերէն եւ կը ջանային լեռը փախչիլ կամ նաւահանգիստը ապաստանիլ: Թուրքերը զանոնք երկար չուաններով իրարու կը կապէին շարան շարան, եւ առանց զանազանութեան, քահանան ազնուական տիկնոջ քով, պատրիկը ժողովուրդի աղջկան կամ կրօնաւորուհիին քով: Փախստականներէն շատերը խեղդուեցան ջանալով լողալով հասնիլ նաւերուն, որոնք ոգի ի բռին կը պատրաստուէին մեկնելու:

Թէդալտի կը պատմէ Թէ Ռօմանիոյ եւ Տրապիզոնի վե-

նետիկեան նաւերը մինչեւ կէս օր նաւահանգիստը մնացին կարելի եղածին չափ աւելի մարդ ազատելու համար: Զորս հարիւրի մօտ մարդիկ ազատեցին որոնց մէջ Թէտալթի ինք ալ, որ պարիսպին պաշտպանութեան մասնակցած էր: Կ'ըսէ թէ Թուրքերուն մուտքը՝ դէպքը պատահելէն երկու ժամ վերջը միայն իմացած ըլլալով, հազիւ թէ ժամանակ ունեցաւ դէպի ծովեզր վազելու. հոն հագուստները հանեց նետեց եւ լողալով գնաց նաւ մը մտաւ որ զինքը ողջ առողջ Վենետիկ հասցուց՝ ուրիշ ութը Վենետիկցիներու հետ միասին:

Պարպարօ ալ իր եւ իր ընկերներուն փախուստը սապէս կը պատմէ. «Քաղաքը գրաւուած եւ ալ ո եւ է յոյս մնացած չըլլալով՝ տիար Ալօիզ Տիէտօ, նաւահանգիստին հրամատարը, անապարանքով Բերա վազեց Ճենովացիներուն Բօտէսթային, եւ խորհրդակցեցաւ անոր հետ թէ պէ՞տք էր փախուստ տալ թէ շարունակել կռիւը: Բօտէսթան պատասխանեց. «Տիար հրամատար, սպասէ մինչեւ որ պատգամաւոր ղրկեմ Սուլթանին ու հասկնանք թէ դուք Վենետիկցիներդ ու մենք Ճենովացիներս խաղաղութեա՞ն թէ պատերազմի մէջ ենք անոր հետ:» Եւ երբ այսպէս կը խորհրդակցէին, Բօտէսթան դուռները գոցել տուաւ ու մնացինք Բերայի մէջ բանտարկուած, Տիար նաւապետը, Տիար Պարթօլօ Ֆուրիան եւ ես, Նիքօլօ Պարպարօ, ցռկանաւերու բժիշկս։ Ասիկա Ճենովացիներու մէկ խաղն էր մեզ Թուրքերուն յանձնելու համար, որովհետեւ ո եւ է պատգամաւոր չի ղրկեցին անոնց:

«Մինչ այսպէս, Բերայի մէջ փակուած էինք, տեսանք որ յանկարծ մեր նաւազները առագաստները կը բանան ու թիակները կը պատրաստեն ու ճամբայ ելլելու վրայ են առանց մեզի սպասելու: Բայց երբ ասիկա տեսաւ, մեր հրամատարը այնքան խիստ խօսեցաւ Բօտէսթային որ վերջապէս թող տուաւ որ դուրս ելլենք Բերայէն: Անմիջապէս խուժեցինք մեր նաւերը ու արագօրէն թիավարեցինք դէպի Շըղթան. հոն երկու կաշմբուռն մարդիկ ցատքեցին անոր վրայ ու կացինի հարուածներով երկուքի բաժնեցին, ու

Թիերու ուժով մինչեւ Երկու Սիւները գացինք խարսխեցինք, հոն, ուր ամբողջ պաշարման տեւողութեանը Թուրք նաւատորմը խարսխած էր: Մինչեւ կէսօր հոն սպասեցինք, յուսալով որ Թերեւս մեր վաճառականներէն ալ եկող կ'ըլլար. բայց ոչ մէկը եկաւ, որովհետեւ ամէնքն ալ գերի ինկեր էին Թուրքերուն ձեռքը: Այն ատեն կէսօրին բացինք առագաստները ու ճամբայ ելանք Աստուծոյ օգնութեամբ: Մեր հետը կուգային նաեւ Ձերոլամօ Մօրլինիի նաւը որու նաւազները պաշարման ատեն սա կամ նա կերպով իննսուն եւ մէկ հատը սպաննուած ըլլալուն, հազիւ կրցաւ առագաստները բանալ, եւ ուրիշ բազմաթիւ նաւեր, եւ իրիկուան հիւսիսային զօրաւոր հովին շնորհիւ կրցանք ողջ առողջ անցնիլ նեղուցէն ու ազատիլ: Ուրիշ ճենովական նաւեր ալ, որոնցմէ մին երկու հազար չորս հարիւր Թօնօ տարողութեամբ, կրցան փախչիլ եւ ազատիլ։ Իսկ միւսները ինկան Թուրքերուն ձեռքը: Կռիւը եւ ջարդը արշալոյսէն մինչեւ իրիկուան ժամը ինը տեւեցին: Մինչեւ այդ ժամուն կոտորեցին, անկէ ետքը միայն գերի բռնելու նայեցան: Մինչեւ վաթսուն հազար հոգի բռնեցին իրենց բոլոր հարստութիւններով:»

«Խղճալի բան էր, կ'ըսէ Դուկաս, թէ ինչպէս ծովեզերքը, պարիսպին առջեւը, ծածկուած էր կիներու, կրօնաւորներու, կրօնաւորուհիներու բազմութեամբ մը, որոնք կուրծքերնին ծեծելով մեծաձայն կը պաղատէին նաւին մարդոց որ զիրենք ալ առնեն: Աւա՜ղ, կարելի չէր, Աստուած որոշեր էր որ այդ Թշուառները դառնութեան բաժակը ցմրուր ըմպեն։ Նաւերը կրցածնին առին միասին, բայց մեծ մասը ծովեզրը մնաց: Այս դժբաղդները ա՛լ ոեւէ զթութեան յոյս չունէին: Բարեբաղդաբար Թուրքերը սպաննելէ աւելի կողոպտելու կը նայէին հիմա, մանաւանդ այն տեղերը ուր ոեւէ դիմադրութեան ճիգ կամ փորձ չէր ըլլար եղաւ: Կողոպուտը մեթոտիկ կերպով մը յառաջ կը տարուէր: Մէկ քանի խումբեր՝ զանազան մասերու կամ ջոկատներու բաժնուած՝ միայն հարուստներու տուները կողոպտելու կը զբաղէին. ուրիշներ եկեղեցիները կը կողոպտէին. դեռ

ուրիշներ ալ խանութները եւ նուազ կարեւոր տուները կը թալանէին: Բոլոր այս գերագրգռուած վայրագ գունդերը ամէն ուղղութեամբ քաղաքին մէջ կը տարածուէին, կը սպաննէին ո՛վ որ կը դիմադրէր, եւ գերի կը վարէին, առանց ի՛նչ աստիճանի մարդիկ ըլլալնուն կարեւորութիւն տալու, ո՛վ որ կրնար ծեռքերնին, տէրտէր, տղայ, օրէնքի մարդիկ, եւն. եւն.:»

Կրիտոբուլոս աւելի մութ գոյներով կը նկարագրէ այս ընդվզեցուցիչ տեսարանները. «Մանկամարդ ու ազնուական բարձր ընտանիքներու պատկանող կիներ, որոնք իրենց տունէն սեմէն դուրս ոտք կոխած չունէին, հրապուրիչ, աղուոր ու փայլուն կոյսեր, որոնց վրայ մինչեւ այդ օր ո եւ է էրիկ մարդու ակնարկ կանգ առած չէր տակաւին, վայրագօրէն դուրս խլուեցան իրենց պարկեշտ բնակարաններէն, բրտօրէն անպատուուեցան, բռնաբարուեցան գռեհներու ու ճանապարհներու վրայ ամէնէն զարհուրելի կերպերով:» Ու երկարօրէն կը շարունակէ տակաւին:

Ու սկսաւ անհուն, տիեզերական թալանը Թագուհի քաղաքին։ Ակնթարթի մէջ ամբողջ քաղաքին վրայ տարածուեցաւ այս երկու հարիւր հազար թալանողներու վայրագ հրոսը: Եւ սակայն նախ կանոնաւոր զինուորները քիչ շատ կը բռնէին ինքզինքնին հոգեւարք քաղաքին յուսահատ բնակիչներուն մէկ գերագոյն դիմադրութեան վախերնուն, բայց ի՞նչպէս կարելի էր կեցնել անկանոն զինուորներու անհամար խումբերուն հեղեղը, որոնք միմիայն թալանի տենչով եւ յոյսով բանակին կը հետեւէին:

Առտուընէ, Քէրքօբօրթայէն ներս մտած առաջին յարձակողներէն մէկ քանին անմիջապէս խոյացեր էին Ս. Կոյսի համբաւաւոր մենաստանի թալանին. այս մենաստանի հմայիչ պզտիկ եկեղեցին, այսօրուան Քահրիէ ճամիսին, իր հրաշալի մօզայիքներովը, որոնք մինչեւ այսօր կեցած են եւ կ՚ապացուցանեն թէ արդարեւ ի՞նչ շքեղաշուք բան մըն էր այդ ժամանակին: Ղուկաս Աւետարանիչի վերագրուած հռչակաւոր նկարը կտոր կտոր եղաւ: Այս անողորմ քանդիչ-

ներու մէկ քանին, իրաւ է թէ քիչ թիւով, խուժեցին Բէթ-լիոնի թաղին եկեղեցիները քանդելու: Կէս օրէն վերջն էր միայն որ բոլոր դուռներէն քաղաք թափող անհամար հրոսները ճշմարիտ կազմակերպութեամբ մը թալանի գործին սկսան: Նախ՝ կանոնաւոր կերպով քաղաքին զանազան մասերը իրարու մէջ բաժնեցին, որպէս զի ապահով կերպով կարենան բոլորն ալ գերի վարել եւ բոլոր թանկագինառար-կաները ձեռք անցնել, ու տեղ մը հաւաքեցին բոլոր ժողվուած գանձերը ու անթիւ գերինը: Երկար շարքերով վայրագօրէն իրարու կապեցին, որպէս զի իւրաքանչիւրին ունեցածը յայտնի ըլլայ ծեր ու տղայ, մանկամարդ աղջիկ ու նորահաս պատանի, ինչ որ գտան: Ամէն տարիքէ, ամէն աստիճանէ վաթսուն հազարէ աւելի անձեր, ինչպէս կ'ըսեն ժամանակակից քրոնիկագիրները, այսպէս կապուեցան իրարու եւ սպասեցին բաժանումի մեծ գործին: Մէկէն միւսին ծախուելով, բոլոր այս թշուառները իրենց դժբաղդ օրերը գացին աւարտելու մահմետական աշխարհին բոլոր կողմերը, ու բոլոր ծովեզերքներուն վրայ։

Անհաւասիկ Կրիտոբուլոսի իր սովորական ուռուցիկ ոճով ըրած նկարագրութիւնը այս կողոպուտին մասին, «Անպատուեցին, քարուքանդ ըրին ու կողոպտեցին տաճարները: Ինչպէս պատմեմ այս աղէտները: Նուիրական առարկաները, արհամարհանքով գետին նետեցին, սրբապղծեցին սուրբ պատկերները եւ սուրբ անօթները: Քահանայական զարդեղէնները կը խլէին, կը վառէին, կտոր կտոր կ'ընէին, կամ փողոց կը նետէին պարզապէս: Բրտօրէն կը բանային սրբոց մասունքներու տուփերը, մէջէն մասունքները կ'առնէին ու փողոց կը նետէին։ Պատարագի սկիհներն ու ըմպանակները իրենց գինարբուքներուն կը գործածէին կամ կը կոտրտէին, կը հալեցնէին ու կը ծախէին: Քահանաներու ոսկիով, մարգարիտով ու թանկագին քարերով բանուած զգեստները է'ն շատ գին տուողին կը ծախէին կամ կրակը կը նետէին՝ ոսկին հալեցնելու համար:

«Սուրբ թէ աշխարհական գիրքերը, անհուն քանակութեամբ, մէկ մասը վառեցին, մէկ մասն ալ պատռտեցին

կամ ոտքերնուն տակ կոխկռտեցին: Մեծ մասը սակայն ծախեցին, ոչ թէ շահու համար, այլ ծիծաղելի գիներով, քանի մը փարայի փոխարէն: Սուրբերու խորանները, իրենց հիմերէն քանդելով կործանեցին: Բոլոր սուրբ թաքստոցները բռնաբարեցին, կոտրտեցին կամ լաւ մը խուզարկեցին իրենց պարունակած նուիրական գանձերը հանելու համար մէջէն:»

Այս առերեւոյթ անհուն տակնուվրայութեան մէջ, հրսկայական կողոպուտը բաժնելու գործը սակայն ամենաբծախնդիր խնամքով ու կարգապահութեամբ յառաջ կը տարուէր: Ինչպէս ըսինք, ամէն մէկ տունի վրայ պզտիկ դրօշներ տնկած էին, որոնք կը ցուցնէին թէ այդ տուներուն կամ այդ տուներու մասերուն կողոպուտը առաջին անգամ քաղաք մտնողներուն կը վերաբերէր: Այդ անհամար նշանները ամէն կողմ կը ծածանէին, կ'ըսէ Պարպարօ, եւ ամէն մէկ տան վրայ յաճախ տասը հատ կար առնուազն: Տասնադարեան քաղաքակրթութեան մը ամենասքանչելի արտադրութիւնները կորան այս աննկարագրելի քանդումին մէջ:

Տռամին սկզբնաւորութենէն իսկ, սոսկումէ օրհասական դարձած ամբոխներ եկեղեցիները ապաստանած էին, ոմանք սա տարտամ յոյսով թէ Թուրքերը պիտի յարգէին տեղւոյն սրբութիւնը, ոմանք ալ աստուածային օգնութեան մը յոյսով: Անհուն բազմութիւն մը, մոռնալով թէ Միութեան վէճերուն առթիւ ամիսներէ ի վեր ոտք չէր կոխած Այա-Սօֆիայի եկեղեցին, անոր վրայ խռնեցաւ այն հռչակաւոր մարգարէութեան ապաւինելով որ կ'ըսէր թէ «Թուրքերը քաղաք պիտի մտնէին եւ ամէնքն ալ պիտի ջարդէին մինչեւ Կոստանդիանոսի Սիւնին քով, բայց հոդ Աստուած, սուրը ձեռքին, պիտի իջնէր երկինքէն, եւ քաղաքը եւ անոր կառավարութիւնը պիտի յանձնէր իրեն ընտրած մէկ մարդուն եւ պաշտօն պիտի տար անոր Աստուծոյ ժողովուրդին վրէժը լուծելու: «Այս է պատճառը, կ'ըսէ Դուկաս, որ Թուրքերուն Պոլիս մտնելէն հազիւ ժամ մը յետոյ, յանկարծ անհուն ու խելայեղ բազմութիւն մը լեցուց Մեծ-Եկեղեցին, էրիկ մարդ, կին ու տղայ, որոնք հոն ապահով կը զգային զ'իրենք զիրենք: Թշուառները առով իրենց ջարդարարնե-

րուն գործը դիւրացնելէ ուրիշ ոչինչ ըրած էին:

Շատ մը Եէնիչէրիներ եւ ուրիշ Թուրքեր իրենք ալ կողոպուտը սկսելուն պէս խուժեր էին դէպի Այա-Սօֆիա, որոնք արդէն գիտնալով թէ հազարաւոր հարուստ եւ բըռնուելիք փախստականներ կը պարունակէր, իսկ միւսները հրապուրուած այդ շրջանին ամբողջ տիեզերքի ամէնէն հռչակաւոր այդ եկեղեցիին մէջ հաւաքուած անհուն հարստութիւններու մասին ամբողջ Արեւելքի մէջ դարերէ ի վեր տարածուած զրոյցներէն:

Երբ այս ողորմելի, եւ յուսահատօրէն լացող ու ողբացող բազմութեամբ լաւ մը լեցուն եկեղեցին, գոցեցին պրոնզէ համբաւաւոր դուռները եւ այս թշուառները, անձկութենէ հեւալով, յաղթականներու գալուստին սպասեցին, մինչդեռ հարիւրաւոր քահանաներ, իրենց տօնական զգեստները հագած, վերջին պատարագը կը մատուցանէին:

Աւա՜ղ, շատ չսպասեցին: Խումբ մը Թուրքեր, իրենց զոհերու արիւններով ծածկուած, շուտով եկան դղրդացուցին դուռները եւ բրտօրէն խորտակեցին։ Այնատեն մարդկութեան ամէնէն վայրագ տեսարաններէն մին տեղի ունեցաւ, որու վրայ երկարօրէն կը ծանրանան ժամանակակից վկաները: Զարդ չըրին, ա՛լ յագեցած էին, բայց ատոր տեղ կողոպուտի եւ վաւաշոտութեան ի՜նչ տեսարաններ: «Աստուծոյ պաղատող էրիկ մարդերու, կիներու եւ տղաքներու այս մեծ բազմութիւնը բռնուեցաւ որպէս ուռկանի մէջ, կ'ըսէ Կրիտոբուլոս. ամէնքն ալ, զարհուրած, առանց դիմադրութեան անձնատուր եղան: Անհելի բան մը եղաւ ատիկա:» Քանի մը վայրկեանի մէջ, Թուրքերը խուժեցին այդ սոսկումէ ռնացող ու զինաթափ ամբոխին վրայ: Բոլոր անոնք որ երիտասարդ, առողջ ու աղուոր էին կողոպտեցին ու կապեցին անմիջապէս: Իսկ միւսները կողոպտեցին, դուրս վռնտեցին եւ կամ սպաննեցին: Ու երկար շարքերով, ամուր մը իրարու կապած առին տարին այդ դժբաղդները: Կը կապէին որչափ որ կրնային, իրենց քօղերովը, գօտիներովը, թաշկինակներովը, քահանաներուն ուրարներովը, վրաններու չուաններով, ձիերու, էշերու կամ ուղտերու կա-

պերով: Իրարու ձեռքէ կը յափշտակէին ամէնէն աղուոր կինները, ու կը պատահէր որ կռիւի միջոցին քաշէին հանէին նաեւ անոնց հագուստները: Երկար շարքերով իրարու կապեցին զանոնք, տէրը ծառային հետ, եկեղեցւոյ ամէնէն բարձր պաշտօնեան ամէնէն համեստ արհեստաւորին հետ, ծերը նորատի աղջկան քով, վանքի մէջ ապրած միանձնուհին պատանիին քով, ու ազնուական կինը փողոցի մարդուն քով: Իրենց նոր տէրերը անճապարանօք առջեւնին կը ձգէին զիրենք, նոր ախորժակներէ վախերնուն եւ նոր կողոպուտներու վազելու տենչանքով: Գերիներու մեծ մասը, հագուստներնին վրաներնուն խլուած ըլլալնուն, բոլորովին մերկ էին: Շատերը իրենց դահիճներուն բռնութեանց արիւնալի նշանները կը կրէին վրանին: Բոլոր այս ողորմելիներուն անհուն ողբերը եւ անձկութեան աղաղակները մինչեւ երկինք կը բարձրանային: Յետոյ մինչ գազանական անճապարանքով զիրենք կարգ կարգ կը շարէին՝ նաւերը կամ գերեվաճառութեան շուկաները տանելու համար, ուր յաղթականները ծանրութիւնովնին ոսկի վճարելով իրարմէ կը խլէին զանոնք, աւերի նոր տեսարան մը սկսաւ:

Թուրք պատերազմիկները համբաւաւոր եկեղեցին թալլելու գործին սկսեր էին, Մեծ Եկեղեցիին որ դարերէ ի վեր իրարու յաջորդող սերունդներու բարեպաշտութեամբը դիզուած գանձերով կը յղփանար ու դեռ վայրկեան մը առաջ ոսկիով ու արծաթով կը փայլէր: Անլուր տեսարան մըն էր այս: Մէկ քանի վայրկեանի մէջ խորտակեցին, ջախջախեցին ու կողոպտեցին բոլոր հրաշալիքները ոսկիէ ու արծաթէ շքեղ անօթներ, զարմանալի ճոխութեամբ քահանայական զգեստներ, մասունքի տուփեր, Սուրբ Պատկերներ, ջահեր, հարիւրներով, հազարներով թերեւս, ամէնքն ալ ոսկիէ կամ արծաթէ, մարգարիտներով ու թանկագին քարերով ընդելուզուած: Յաղթականները քահանաներու զգեստները կը հագնէին ծաղրանքի համար, խաչերն ու սկիհները այպանելու համար փաթթոց անցուած խաչեր կը պտտցընէին: Մանաւանդ, այս բարեպաշտներու մէջ բարեպաշտ ժողովուրդին աչքին զարհուրելի գարշագործութիւն, այս

անգութ զինուորները, ոսկիէ ու արծաթէ ընդունարանները քաշել հանելէ յետոյ հոս ու հոն կը նետէին հազարաւոր մասունքները, անգին մասունքները, տասնադարեան բարեպաշտութեան մը ժառանգութիւնը, ամէնէն նշանաւոր մարտիրոսներու, օրթոտոքս եկեղեցիին ամէնէն փառալից ախոյեաններուն այս մարմինները: Ամենասուրբ Թանայիային ամէնէն համբաւաւոր Ս. պատկերները, այս այնքան յարգըւած, քաղաքին օգոստափառ պաշտպան այս պատկերները, որոնք հասարակաց անձկութեան ժամերուն հազարաւոր անգամներ պաշտպաններ էին զայն, հիմա կը պղծուէին, կ'աղտոտուէին ու դիակներու շեղջերուն մէջ թափառական շուներուն կը նետուէին:

Մեծաշուք կամարներուն տակ երկար տեւեց այս դըժոխային տեսարանը, անպատում հակապատկեր այս հրաշալի շէնքին ու այս զարհուրելի տեսարաններուն: Զոհերու հեծկլտանքները դահիճներու հայհոյութիւններուն խառնուած կամարները կը դղրդէին: Բոլոր ժամանակագիրները մասնաւոր ու կսկծեցուցիչ ցաւով կանգ կ'առնեն սուրբ տեղերու այս անլուր պղծութեան, սքանչելի կրօնական առարկաներու այս դիւային կործանումին վրայ:

Ռիքէրիօ կը պատմէ թէ Թուրքերը բոզեր բերին բնակեցուցին Այա-Սօֆիայի մէջ ու ձիերնին կապեցին հոն: Ամէնէն սուրբ մասունքները խոզերուն եւ շուներուն, աղտեղութիւններուն նետեցին: «Ի՜նչ դառն ցաւ, կը գոչէ իր-կարգին Ֆրանցէս, ի՜նչ դառն ցաւ տեսնել թէ ի՜նչպէս կը պղծեն հեթանոսները Իմաստութեան այս տաճարը, անոր խորաններուն վրայ կ'ուտեն ու կը խմեն, ու անոր շքեղ կամարներուն տակ, կիներուն, մանկամարդ աղջիկներուն ու պատանիներուն վրայ իրենց անարգ կիրքերը կը յագեցնեն։ Ո՞վ չպիտի արտասուէ քու վրադ, ո՜վ ամենասուրբ ու ամենայարգելի տաճար:»

Չենք կրնար բնաւ ըսել թէ ժամանակակիցները չափազանցութիւն կ'ընեն, որովհետեւ սա ճշմարիտ է որ զարհուրելի իրականութիւնը շա՜տ ետ կը ձգէ անոնց բոլոր պատմածները: Բոլոր միւս անհամար եկեղեցիներն ու մա-

տուները, բոլոր շքեղ ու ճոխ վանքերը, որոնք տասը դարերէ ի վեր Բիւզանդիոնի փառքը կը կազմէին, հարիւրներով կողոպտուեցան, բոլորովին ու ամօթալիօրէն պղծուեցան։ Բոլոր նուիրական գիրքերը, որոնց մէջ այնքան անգին ձեռագիրներ, արուեստի ու գրականութեան ճշմարիտ գանձեր կը գտնուէին, ինչպէս նաեւ հասարակաց կամ անձնական մատենադարաններու բոլոր գիրքերը, ջնջուեցան, այրուեցան, պատռուեցան, փողոց նետուեցան, ծիծաղելի գիներով ծախուեցան։ Աբրահամ հայ քահանան տասնեւհինգերորդ դարու մէջ Պոլսոյ առումին վրայ գրած իր Ողբին մէջ հետեւեալ նկարագրութիւնը կուտայ. «Հետերնին անհամար գիրքեր տարին մինչեւ Անգարա, գիրքեր որոնք բոլոր միսիսիւմաններուն զարմանք կը պատճառէին։ Քրիստոնեայ ազգերը անհուն թիւով գնեցին զանոնք, բայց մեծ մասը Թուրքերուն քովը մնաց։» Դուկաս ալ կը պատմէ թէ Բիւզանդիոնի անսահման աւարովը յեցուած Թուրք նաւերը, իրենց կողերուն մէջ անհաշուելի թիւով գիրքեր ալ կը կրէին։ «Բոլոր բեռնասայլերը հազարներով Եւրոպա ու Ասիա տարին զանոնք։ Տասը հատոր Արիստոտել, Պղատոն կամ ուրիշ աստուածաբանական եւ միւս գրութիւններուն վրայ գիրքեր մէկ դահեկանի կուտային։ Աննաւատալի ճոխութեամբ զարդարուած աւետարաններու ոսկին ու արծաթը կը խլէին ու այսպէս ծայրատուած գիրքերը կամ կը ծախէին կամ կը վառէին։ Բոլոր մանրանկարները կրակը կը նետէին կամ անոնցմով կերակուր կ'եփէին։»

Բոլոր վկայութիւններն ալ համաձայն են սա կէտին վրայ թէ Մէհմէտի խոստումին համաձայն թալանը երեք օր ու երեք գիշեր տեւեց։

Հօճա Սատտէտտին, անգամ մըն ալ ըսելէ յետոյ թէ Իսլամին զինուորները իրենց կրօնքին պատուիրանին համեմատ վարուեցան որ կ'ըսէ. «Ծերերը սպաննեցէք, իսկ երիտասարդները գերի տարէք», կը հաստատէ թէ անոնք կատարեցին այդ պատուիրանը։ Ֆրանչիսկեաններու գլխաւորը, որ պաշարման ներկայ գտնուած էր եւ որ արդէն 1453 Յուլիս 4ին Բօլոնիա հասած էր, կ'ըսէ թէ այդ թալա-

նողներուն մէջ խիստ շատ ալ հաւատուրաց քրիստոնեաներ կը գտնուէին:

Իրարու մէջ բաժնելէ առաջ կապուած գերիներուն թիւը վաթսուն հազարի հասաւ, իսկ պաշարման շրջանէն եւ գրաւումէն յետոյ սպաննուած պատերազմիկներուն թիւը հինգ հազարէ աւելի կ'ըլլայ: Այս վաթսուն հազար գերիները ծախուեցան եւ մահմէտական անհուն աշխարհին ամէն կողմերը ցրուուեցան. իսկ ընդհանուր կարծիքը այն է որ առաջին ջարդին մէջ քառասուն հազար հոգի սպաննուեցան ապահովաբար: Շատեր, որ նախապէս հասարակաց պաշտպանութեան գործին նուիրելէ նախամեծար համարեր էին իրենց տուներուն մէջ ունեցած հարստութիւննին թաղելը, տեսան այդ հարստութեանց Թուրքերուն ձեռքն իյնալը եւ իրենց ալ գերի տարուիլը:

Իտալացիներէն, Ճենովացի կամ Վենետիկցի, անոնք որ յաջողեցան քաղաքէն դուրս ելլել, աճապարանօք խուժեցին իրենց ազգերու նաւերը, գոնէ կեանքերնին փրկելու համար:

Խիստ բարեբաղդաբար Թուրք նաւաստիները ամէնքն ալ ծգեր գացեր էին իրենց նաւերուն կողոպուտին իրենք մասնակցելու համար: Այս ճշմարտապէս նախախնամական բացակայութիւնը, որ դժբաղդաբար շատ կարճ տեւեց, պատճառ եղաւ որ այս ողորմելի փախստականներէն շատեր կարենան նաւակներով կամ լողալով տակաւին նաւահանգիստը կամ Կալաթայի ծովեզրը մնացած նաւերը հասնիլ, որոնք խարիսխը վերցնելու կը պատրաստուէին արդէն: Անհուն անձկութիւնը արդէն Բերայի ճենովական պզտիկ քաղաքին մէջ ալ սկսեր էր տարածուիլ, եւ բազմաթիւ բնակիչներ՝ կնիկ, երիտասարդ, տղայ, կրօնաւոր ու կրօնաւորուհի, որոնք մեծ յոյս չունէին Սուլթանին դաշնադրութիւնները յարգելուն վրայ, կուրծքերնին ծեծելով ու ողորմելի աղաղակներ արձակելով, իրենք ալ ծովեզերք խուժեցին, եւ պաղատեցան որ զիրենք ալ միասին առնեն. ատոր փոխարէն բոլոր հետերնին բերած հարստութիւններնին կ'առաջարկէին տալ: Մայրերը իրենց զաւակները կը

լքէին, զաւակները իրենց մայրերը: Իրենց խելայեղ սարսափին մէջ, ամէնքն ալ կը ծգէին իրենց ինչքերն ու գոհարեղէնները, կամ յուսահատութենէն, ծովը կը նետէին զանոնք: Այս փախստականներէն շատեր ճամբան թալանող Թուրքերուն ձեռքն ինկան: Ինչ որ գտնէին, կը նստէին վրան նաւերը հասնելու համար, այնպէս որ շատերը խեղդուեցան, եւ խիստ շատերն ալ չի կրցան արդէն փախըստականներով բեռնաւորուած եւ Թուրք եաթաղանին սարսափին տակ մեկնելու տենդոտ պատրաստութիւններ տեսնող նաւերուն մէջ մտնել:

Դուկաս, ուրկէ կը քաղենք Կալաթայի բնակչութեան փախուստին այս ահռելի պատկերը, կ'ըսէ նաեւ թէ Սուլթանը տեսնելով իր զինուորները, որ աւելի թալանի կը զբաղէին քան թէ փախստականներուն ետեւէն վազելու, կատաղութենէն ակռաները կը կրճտէր։ Այն ատեն, Զական փաշա, որ ինչպէս կը յիշէք, ամէն գինով վերջին յարձակումը գործելու գաղափարը պաշտպանած էր եւ անկէ ի վեր Սուլթանին աչքին լոյսը եղած էր, յաղթութենէն յետոյ Կալաթա վազեց, որուն դուռները Ճենովացիները կռնակի վրայ բացեր էին իր առջեւ։ Ճամբան հանդիպելով փախըստականներու այդ ամբոխին եւ Ճենովայի հետ ապագայ կնճռոտութիւններէ վախնալով, անոնց մէջտեղ խոյացաւ եւ Սուլթանին անունով երդմնցաւ թէ ո եւ է վնաս չպիտի գայ իրենց: «Մի փախիք, պոռաց, Սուլթանին բարեկամներն էք դուք ու ձեր քաղաքը ո եւ է վնաս, ո եւ է ջարդ չպիտի կրէ, ու ժամանակին Ցոյներու հետ կնքած ձեր դաշնագրութիւնները հիմա Սուլթանը շատ աւելի լաւ պայմաններով պիտի վերանորոգէ ձեզի հետ: Թողէք փախչելու ամէն գաղափար, որպէս զի Սուլթանին զարհուրելի բարկութիւնը չի հրաւիրէք ձեր վրայ:»

Բաւական թիւով Ճենովացիներ հաւատացին այս խօսքերուն ու մնացին. բայց մեծամասնութիւնը, ով որ կրցաւ, կծիկը դրաւ, որովհետեւ բնաւ վստահութիւն չունէին Զական փաշայի խօսքերուն վրայ. եւ աղէկ ալ ըրին, որովհետեւ Թուրք ծովակալ Շամուզա, վերջապէս յաջողելով շուրջը

հաւաքել Թալանի գացած Թուրք նաւազները, իր նաւերով արդէն բացուած Շղթայէն նաւահանգիստ մտեր եւ տակաւին հոն մնացած քրիստոնեայ նաւերը ջնջելու սկսեր էր։ «Բանի մը հատը ընկղմեց եւ քանի մը հատն ալ նաւազներով միասին գերի բռնեց։ Իսկ իտալական մեծ ու փոքր նաւերը արդէն կծիկը դրած էին։ Ցեառյ, իր նաւերուն բարձունքէն, յարձակեցաւ նաւահանգիստին վրայ, նայող պարիսպին դուռներուն վրայ եւ տեսնելով որ գոց են տակաւին, իրենց հիմերէն քակեց զանոնք եւ գետինը նետեց ու այդ բացուածքէն քաղաք մտաւ, բայց իր դէմը գտաւ շատ մը Ցոյներ, որոնք դիմադրելու պատրաստ էին, որովհետեւ յաղթական Թուրք բանակը տակաւին քաղաքին այս մասը չէր հասած, այնքան հեռու էր յարձակման գլխաւոր կէտէն եւ Թուրք զինուորները այնքան զբաղած էին Թալլելու։ Հետեւաբար անմիջապէս յարձակեցաւ այդ պատերազմիկներուն վրայ ու այնպէս ջարդեց զանոնք որ դուռներուն տակ արիւնը գետի պէս կը հոսէր։ Այդ պահուն հասաւ նաեւ ցամաքային բանակն ալ։»

Հոս ձեռք կ'առնեմ նորէն Կալաթայի Ճենովացիներուն պատահած դէպքերուն պատմութեան Թելը։ Իրենց Բոտէսթան, Անժ-Ժան Զաքարիա եւ իր խորհրդականները Սուլթանին մօտ գացին եւ անոր յանձնեցին քաղաքին բանալիները։ Սուլթանը շնորհալի ընդունելութիւն ըրաւ անոնց եւ սիրալիր խօսքերով ճամբու դրաւ։ 1453 յունիս 23 Թուականով այս Բոտէսթան նամակ մը գրած է որ մինչեւ այսօր պահուած է, եւ ուր կ'ըսէ. «Կոստանդնուպոլսոյ պաշտպանութեանը ղրկեցի բոլոր Քիոսցի վարձկան զինուորները, ինչպէս նաեւ Ճենովայէն եկածները եւ նաեւ քաղաքին միջակորեար եւ աղքատ դասակարգին մեծ մասը, մինչեւ իսկ քեռորդիս Իմբէրիալիսը եւ բոլոր ծառաներս։ Որովհետեւ շարունակ կը մտածէի «Անգամ մը որ Թուրքերը Պոլիսը գրաւեն, Բերայի գործը լմնցած է ալ։» Թուրքերը մեր մարդոցմէն շատերը բռնեցին, մէկ քանին, բայց շատ ցանցառ Թիւով, յաջողեցան մեր քով ապաստանիլ, մէկ քանին ալ նաւերը փախան. բայց ասոնցմէ շատեր նաւ հասնել կարե-

նալէ առաջ պատնէշին վրայ նորէն իյնան Թուրքերուն ձեռքը, որովհետեւ նաւապետները բնականաբար անանկ փափաք մը ունէին մեկնելու որ մարդու չէին սպասեր: Գալով ինծի, աւելի լաւ կը համարէի սպաննուիլ, քան թէ թողուլ հեռանալ ինծի յանձնուած քաղաքէն: Եթէ ծգէի երթայի, գիտէի որ քար քարի վրայ չպիտի ձգէին Բերայի մէջ: Հետեւաբար մնացի գոնէ քաղաքիս կեանքը ապահովելու համար: Այդ պատճառաւ դեսպաններ ղրկեցի Սուլթանին, իմ ամենախոնարհ հնազանդութիւնս յայտնեցի եւ հարցուցի թէ ի՛նչ պայմաններով կրնար խաղաղութիւն կնքել հետս: Մինչեւ հետեւեալ օրուան, 30 մայիսին, իրիկունը ոեւէ պատասխան չտրուեցաւ այս պատգամաւորութեան, մինչդեռ նաւերը անճապարանօք կը փախչէին, հակառակ մեկնումնին մէկ երկու օր ալ յետաձգելու համար բրած պաղատանքներուս, որովհետեւ գիտէի թէ մինչեւ այդ ատեն պիտի կրնայի խաղաղութիւն կնքել անպատճառ: Բայց մտիկ չըրին բնաւ խօսքերուս, եւ կէս գիշերուան մօտ ճամբայ ելան:»

Մէհմէտ, երբ տեղեկացաւ այդ ընդհանուր փախուստին, սաստիկ բարկացաւ, եւ ձեռնովացի պատգամաւորներուն խստիւ պատասխանել տուաւ թէ միանգամ ընդ միշտ կը փափաքէր ատոնցմէ ազատիլ: Այս պատասխանէն Բոտէսթան եւ հետինները, հասկնալով թէ ո՛ր աստիճան վըտանգաւոր կացութեան մէջ կը գտնուէին, ուղղակի Սուլթանին ելան, որ ատոր վրայ նոյն օրը երկու անգամ Կալաթա եկաւ:

Այդ այցելութիւններուն մէջ Մէհմէտ մասնաւորապէս պնդեց թէ կ՚ուզէր որ քաղաքին ամրութիւնները հիմնայատակ քանդուին, որպէսզի անիկա միշտ իր տրամադրութեան տակ մնայ։ «Եւ իրաւ ամէնքն ալ աշտարակները, Սուրբ-խաչի աշտարակը: —որու կապուած էր Ղղթային մէկ ծայրը— միւս բոլոր զօրաւոր դիրքերը, ծովու կողմի բոլոր պարիսպները քանդել եւ փոսերը լեցնել տուաւ: Ասկէ զատ Թուրքերը գրաւեցին նաեւ Կալաթայի բոլոր ռմբաձիգներն ու հրացանակները եւ փախստական քաղաքացիներու վե-

քաքերող բոլոր զէնքերն ու ռազմամթերքը։Միայնխոստացաւ որ ո՛վ որ ետ դառնար, պիտի վերադարձնէր անոր ունեցածը։ Ասոր վրայ Բօռէսթան Սուլթանին կողմէ դեսպան մը ղրկեց Քիոս կայսերական նամակով մը, որով կ՚իմացնէր բոլոր հոն ապաստանած վաճառականներուն ու պուրժուաներուն թէ կրնան Կալաթա դառնալ, եւ թէ եթէ մտիկ ընեն, բոլոր ունեցածնին ետ պիտի վերադարձուի իրենց։ Արքեպիսկոպոս Լէօնար ալ կ՚ըսէ թէ Սուլթանը փախստական Ճենովացիներուն ինչքերուն մէկ ցուցակը պատրաստել տուաւ եւ երեք ամիս միջոց տուաւ անոնց ետ դառնալու համար, այդ ժամանակամիջոցէն յետոյ յարքունիս գրաւման պատիժով։ Սուլթանը իբր իր անկեղծութեանը նշան եւ որպէսզի կատարելապէս համոզէ Ճենովացիները թէ կատարեալ խաղաղութեամբ ապրիլ կ՚ուզէ անոնց հետ, նոր քաքիւթիւլասիօններ շնորհեց, որոնց շնորհիւ անոնք պիտի կրնային ապագային ալ պահել Ցոյն կայսրերու իրենց շնորհած առաւելութիւնները։ Կալաթայի բերդը եւ իրենց մասնայատուկ վարչութիւնն ալ իրենց կը թողուէր։ Իրենք պիտի ընտրէին իրենց բօռէսթան, ամբողջ օսմանեան երկրին մէջ վաճառականութիւն ընելու ազատութիւն պիտի ունենային, պիտի պահէին իրենց եկեղեցիները եւ ազատօրէն պիտի կատարէին իրենց պաշտամունքը, բացի զանգակ հնչեցնելէն որ արգիլուած էր։ Բոլոր իրենց կալուածները կը մնային իրենց։ Բօռէսթան բոլոր կարելին ըրաւ, բայց ի զուր, գնելու համար իր դժբաղդ քեռորդին Իմբէրիալիսը։ Վերջապէս իր նամակը կ՚աւարտէ ըսելով թէ Պոլսոյ առումը Սուլթանը այնքան հպարտացուցած է որ երկու տարի չանցած Հռոմը գրաւելու ալ պիտի ելլէ։

Ինչպէս ըսինք, ջարդը յաղթանակին առաջին օրուան մէջ սահմանափակուեցաւ միայն։ Առաջին օրուան կռիւէն յետոյ, կամ թերեւս հետեւեալ օրը միայն Սուլթանը իր յաղթական մուտքը կատարեց Պոլսէն ներս։ Բոլորովին երիտասարդ էր տակաւին, հազիւ քսանեւհինգ տարեկան,

խոշոր ու առատ չէկ պեխեր ունէր: Անհուն սպայակոյտը՝ ձիաւոր կը հետեւէր իրեն, բոլոր գլխաւոր վէզիրները, փաշաները ու պէյերը, ցուղշողուն հագուստներով, շողշողուն զէնքերով, ամէնէն աղուորներէն ընտրուած ու ամէնէն ճոխութեամբ զինուած եէնիչէրիներու խոշոր գունդէ մը շըրջանակուած: Փայլուն թափորը Սէն-Ռոմէնի դռնէն, այսօրուան Թօբ-գաբուն, մեկնեցաւ եւ ոտքերուն տակ անհամար դիակներ կոխկռտելով, անցաւ զարհուրելիօրէն քարուքանդ եղած քաղաքին փողոցներէն ու շիտակ Այա-Սօֆիա ուղղուեցաւ: Սուլթանը արծաթով պատած արոյրէ հսկայ դուռներուն առջեւ ձիէն վար իջաւ, ծունր դրաւ, եւ խոնարհելով Աստուծոյ առջեւ որ վերջապէս իրեն շնորհեր էր իր այնքան բաղձացած յաղթութիւնը, գետինէն կոտր մը հող առաւ ու գլխուն ցանեց: Յետոյ ոտքի ելաւ ու մտաւ շքեղաշուք տաճարէն ներս: Պատմութեան ամէնէն հանդիսաւոր վայրկեաններէն մին եղաւ ատիկա:

Մինչ այսպէս նորատի վեհապետը սպաննութեան ու կողոպուտի զարհուրելի տեսարաններով այս ատրեան պըղծուած հրաշալի տաճարին մէջէն կը յառաջանար, լռիկ այս անլուր տեսարանը աչքէ անցընելով, ու խորապէս յուզուած այսչափ օգոստափառ շքեղութենէ, նշմարեց իր պատերազմիկներէն մին որ սքանչելի գետինին մարմարէ մէկ քարը կը կոտրտէր, զայրացած հարցուց թէ ինչու այդպէս կ'ընէր: «Անհաւատներու մէկ շէնքն է աս», պատասխանեց մոլեռանդ Թուրքը, ու ես ճշմարիտ հաւատացեալ մըն եմ»: Մէհմէտ որ Այա-Սօֆիայի գեղեցկութիւնը հասկնալու չափ ու աւելի ալ խելացի էր, կատղեցաւ այս պատասխանէն, հանեց եաթաղանը ու զարկաւ իր խօսակցին, գոռալով թէ եթէ իր բանակին ձգեր էր որ ուզածին պէս թալլէ տուները եւ գերի տանի բնակիչները, փոխադարձաբար իրեն վերապահեր էր պարտեալ քաղաքին շէնքերը: Յետոյ իմամ մը կանչել տուաւ, եւ հրամայեց որ քրիստոնեայ ամբիոնը բարձրանայ ու բարձրաձայն կարդայ մահմետական հաւատքին հաւատամքը: Ու ինքը, մարմարէ խորանին վրայ ոտքի կեցած, իր առաջին աղօթքը ըրաւ, Մէքքէի ուղղութեամբ:

Այդ վայրկեանէն, մարմնացեալ Բանին Վերին Իմաստութեան նուիրեալ համբաւաւոր տաճարը, զոր փառապանծն Յուստինիանոս եւ իր Թէօտօրա կինը կանգներ էին ի փառս քրիստոնէական կրօնին, մզկիթի վերածուեցաւ:

Հեքեաթ մը կ'ըսէ թէ այն պահուն երբ Մէհմէտ յառաջ կը տանէր իր պտոյտը անհուն շէնքին մէջ, դուռ մը ելաւ դիմացը որուն վարագոյրները յանկարծ վեր առնուեցան եւ մէջէն խումբ մը քահանաներ լալով ողբալով իրեն ոտքին խափանեցան եւ խնդրեցին որ խնայէ իրենց կեանքին եւ զուր տեղը չսպաննէ զիրենք: Սուլթանը կարեկցութեամբ դիտեց զանոնք, ձեռքովը նշան ըրաւ որ ոտքի ելլեն, եւ խոստացաւ խնայել իրենց կեանքին, ու անմիջապէս մունետիկ կանչել տալով՝ ամբողջ քաղաքին մէջ դադրեցուց կոտորածը:

Ուրիշ հեքեաթ մըն ալ կ'ըսէ թէ Սուլթանը երբ կատաղի արշաւով մը քաղաքին մէջ կը յառաջանար, համբաւաւոր ծխարձակարանէն, այսօրուան Աթ-մէյտանիէն, անցած պահուն Դեղփիսի համբաւաւոր երեք օձագլխեան եռոտանիին հանդիպեցաւ, —զբօսաշրջիկները շատ լաւ կը ճանչնան ասիկա,— որ պարտեալ քաղաքին պահապանը ըլլալու համբաւը ունէր: Իր ծանր զէնքով ուժով մը զարկաւ. եւ կոտրեց անոր երեք գլուխներէն մին. այդ է պատճառը, կ'ըսեն, այդ շինուածքին մէկ գլուխը պակաս ըլլալուն:

Անմիջապէս յետոյ, մայիս 29ին, ըստ տարբեր ժամանակագիրներու, Մէհմէտ իր հանդիսաւոր մուտքը գործեց նաեւ Պլաքէրններու կայսերական պալատէն, ուր այնչափ տարիներէ ի վեր կայսրերը կը բնակէին: Իր բնակութիւնը հոն փոխադրեց: Կը պատմեն թէ երբ անոր շողշողուն, բայց հիմայ թալանողներու ձեռքով անհեթեթօրէն քարուքանդ եղած ու իր ամէն զարդերէն մերկացած սրահներէն կ'անցնէր, այս մեծ դժբաղդութենէն զգածուած, բարձրաձայն կարդաց մարդկային մեծութիւններու յեղյեղուկ բաղդին վրայ գրըւած պարսիկ համբաւաւոր բանաստեղծութիւնը. «Այսօր կայսրերու պալատներուն միակ պահապանը սարդը եղած է, եւ անոր դրան առջեն իր ոստայնը կը հիւսէ. իր թախծա-

գլին երգովը բուն Էֆրասայիպի թագաւորական պալատնե-րուն արձագանգները կը հնչեցնէ:» Բիրսի ըսելով, այսքան եղերական պահու մը Սուլթանին կարդացած այս տողերը շատ լաւ կը պատշաճին իր երիտասարդ ու տարօրինակ հոգիին:

Աշխարհի տարեգիրներուն մէջ. իբր ամէնէն ահռելինե-րէն փայլող 29 մայիսի այս սարսափելի առաւօտուն, պա-շարեալներու կողմէն, այս մեծ տրամին մէջ էն մեծ դեր ունեցողներուն միակ հոգը կեանքերնին ազատելը եղաւ: Աւա՜ղ, բոլոր այս եղերական մանրամասնութիւններէն զորս կը գուշակենք, հազիւ մէկ երկու հատը կ'աւանդեն ժամա-նակակից վկաները։

Ահաւասիկ այն մէկ քանի հազուագիւտ դէպքերը,որոնք այս սոսկալի օրերուն Պոլսոյ ամէնէն բարձրաստիճան պաշտ-պաններէն մէկ քանիին պատահեցան: Վենետիկեան գաղ-թականութեան բայլը, Ճիրօլամօ Մինօթթօ եւ իր զաւակը, իրենց հայրենակիցներէն եօթը ուրիշներու հետ գերի իյնա-լով Թուրքերուն ձեռքը, Սուլթանին հրամանով գլխատուե-ցան: Միւս կողմէ Բերայի Բօտէսթան ալ կը պատմէ թէ քաթալան ազգին հիւպատոսը, Պետրոս Ճիւլիանօ, իր զաւ-կին եւ հինգ կամ վեց հայրենակիցներու հետ նոյն ահռելի բաղդին արժանացաւ: Իզիտօռ կարտինալը, որուն անունը այնքան անգամներ յիշուեցաւ այս պատմութեան ընթաց-քին, աւելի լաւ պահուըտելու համար, ընդհանուր խառնա-կութենէն օգուտ քաղեր եւ իր կրօնական զգեստը փոխեր ու ջարդին մէջ սպաննուած մուրացկանի մը զգեստները հագնելով փախստականներու հետ միասին քաղաքէն դուրս փախեր էր. հոն շուտով բռնեցին զինքը ու իբր գերի ծա-խեցին: Բարեբաղդաբար իր ծպտումին շնորհիւ բնաւ չի ճանչցուեցաւ։ Ասոր հակառակ մեռելները խուզարկող Թուրքերը կարտինալական ծիրանի հագուստով ծածկուած մուրացկանը գտնելով, կարծեցին թէ եկեղեցւոյ իշ-խաններէն մին ձեռք անցուցած են եւ ցնծութեամբ անոր գլուխը կտրեցին, նմանապէս ծիրանի գլխարկ մը անցունե-լով գլխուն, նիզակի մը ծայրը հանած, ամբողջ քաղաքին

մէջ պտտցուցին. «Անհաւասիկ ռուս Կարտինալին գլուխը» պոռալով: Խիստ քիչ ժամանակ յետոյ, որովհետեւ իր տէրերը աննշան մարդու մը տեղը կը դնէին զինքը, Թշուառ կրօնաւորը երեք հարիւր արծաթ դահեկանի գինով կրցաւ ինքզինքը գնել ու Վենետիկի ու Բոլոնիոյ ճամբով ապաստանիլ Հռոմ Նիկողայոս Ե. պապին քով: Այս վերջինը այն ատեն է որ հրատարակեց իր նշանաւոր «Ողբ Պոլսոյ անկմանը վրայ որ կործանեցաւ Մէհմէտէն»: Մեռաւ 1463ին: Ֆրանչիսկեաններու մեծաւորը կը հաստատէ այս պատմութիւնը իր տեղեկագրին մէջ: Ան ալ Իզիտորը «Ռուսիոյ կարտինալ» անունով կը կոչէ: Քալքանդիլոս կ'ըսէ «Սարմաղներու եպիսկոպոսը Իզիտոր» Կալաթայի մէջ ծախուեցաւ Թուրքերուն կողմէ, բայց հոն կրցաւ նաւու մը վրայ փախչիլ որ զինքը Պելոպոնէս տարաւ: Յոյն հեղինակը կ'ըսէ թէ Սուլթանը զայն սպաննուած կը կարծէր վերջին ջարդին մէջ եւ թէ եթէ ողջ ըլլալը գիտնար, զայն ապահովաբար սպաննել կուտար:

Ըստ Մոնթալտոյի, Մորիս Քաթանէն մինչեւ պատերազմին վերջին վայրկեանը հերոսաբար կռուելէ ետքը՝ յաջողեցաւ ցռկանաւի մը վրայ ապաստանիլ եւ Քիոսի ճամբուն վրայ սարսափելի պատերազմէ մը վերջը հազիւ կրցաւ ազատիլ զինքը հալածող Թրքական նաւերու մեծ թիւէ մը: Քիոսցի Լէօնարն ալ գերի տարուեցաւ. բայց շուտով կըրցաւ ազատիլ:

Ֆրանչիսկեաններու մեծաւորին տեղեկագիրը ուրիշ հետաքրքրական տեղեկութիւններ ալ կուտայ: «Կ'ըսէին թէ, կը պատմէ ան, Սուլթանը քաղաքին տիրանալէ ետքը Բաբիլոնի խալիֆային, Թունուզի թագաւորին եւ Կըլնատայի թագաւորին քառասունական յոյն տղայ ղրկեց իբր նուէր: Բոլոր այն Թուրքերը որոնք առաջին անգամ քաղաք մտան, ալ ցկեանս հարստացան: Միակ յոյն տիկնոջ մը վրայ հարիւր յիսուն հազար տուքաթէն աւելի արժէքով զոհարեղէններ, արծաթ դրամ եւ թանկագին հիւսուածեղէններ գտեր են. մարդու մը վրայ ութսուն հազար տուքաթ կանխիկ դրամ: Վենետիկցիներուն մեծ մասը կործանեցաւ եւ կամ գերի տարուեցաւ:»

Փուսկալոս կ՚ըսէ թէ Կալաթա գտնուող վենետիկցիները կրցան մեծ փրկանքներով ազատիլ: Թուրք պատմիչներ կ՚ըսեն թէ Պոլսոյ էն կարեւոր վանքերու մէկուն երեք հարիւրի մօտ յոյն միաբանները՝ Թուրքերուն կատարեալ յաղթութենէն համոզուելով թէ ո՛րն է ճշմարիտ հաւատքը, ուզեցին իսլամանալ:

Ֆրանցէս աւելի դժբախտը եղաւ բոլոր անոնց մէջ որոնց դժբախտութիւնները պատմեցի: Ինքն իսկ պատմած է մեզի իր տխուր պատմութիւնը: Խեղճը գերի տարուած էր Պելոպոնէսի Սպարթա քաղաքին մէջ: Տասնըհինգ ամիսէն միայն կրցաւ ազատիլ: Իր կինն ու զաւակները նախ եւ առաջ Թուրք բարի ծերուկ ամոլի մը ձեռքը ինկած էին, բայց ետքը Սուլթանին ախոռապետին ձեռքը անցան: Այս պաշտօնեան Բիւզանդիոնի ազնուական ընտանիքներուն կիներէն մեծ թիւով գնած էր եւ ահագին հարստութիւն դիզած էր զանոնք ծախելով: Ֆրանցէսի զաւակները շատ գեղեցիկ ըլլալնուն՝ Սուլթանը ինքն իսկ գնեց սուղ գինով: Խեղճ մայրը մինակը մնաց վերջին պզտիկ աղջկան հետ: Տարի մը ետքը Ֆրանցէս յաջողեցաւ երկուքն ալ գնել: Բայց Սուլթանը այդ պզտիկ աղջկան ալ գեղեցկութեան համբաւը լսելով, զայն ալ իր հարէմը առաւ: Այն ատեն հազիւ 14 տարեկան էր եւ արդէն իսկ մեռաւ: Իսկ իր ժառանգ մանչ զաւակը՝ հազիւ 15 տարեկան հասակին մէջ, իր տիրոջը ձեռքով իսկ սպաննուեցաւ, տեղի տուած չըլլալով անոր վաւաշոտ ցանկութիւններուն:

Ապահովաբար բոլոր այս մեծ զոհերուն ամէնէն դըժբաղդը սակայն մեծ-դուքս Լուքաս Նօթարոսը եղաւ, Սուլթանին գերիներուն ամէնէն նշանաւորը, կայսրէն վերջը՝ կայսրազուն առաջին անձնաւորութիւնը, բիւզանդական ամէնէն մեծ ազնուականութեան ամենակատարեալ տիպարը: Դուկաս երկու տեսակ կը պատմէ Սուլթանին անոր հետ վարուելու կերպը: Ըստ առաջին պատմութեան՝ իր կնոջ եւ իր զաւակներուն հետ գերի բռնուելէն ետքը՝ Սուլթանը իրեն հանդէպ բարեացակամ վերաբերութիւն մը ունեցաւ. նոյն իսկ Մէհմէտ Բ. իր տխուր ճակատագրին հա-



ՊՈԼՍՈՅ ՊԱՐԻՍՊԸ ԵԷՏԻ ԳՈՒԼԷԻ ԿՈՂԷՆ

մար իր համակրութիւնը յայտնեց, զինուորներ ղրկեց զինքը պաշտպանելու համար իր տանը մէջ եւ հրամայեց որ փըն-տռուին իր աղջիկներէն անոնք որ մէջտեղ չկային: Երբ անոնք ալ գտնուեցան, Սուլթանը անոնց նուէրներ ըրաւ եւ հրամայեց որ զանոնք իրենց տունը տանին, նոյն իսկ ըսաւ Նօթարասի թէ իր նպատակն էր զինքը քաղաքին կառավա-րիչ ընել եւ Կոստանդիանոսի ատեն ունեցած դիրքը պահել: Այս առաջին պատմութիւնը Կրիտոբուլոս ալ կը հաստատէ. բայց կ'աւելցնէ թէ Սուլթանը իր նպատակը չիրագործած «նախանձու նետերը աղետալի կերպով յաղթանակեցին, որովհետեւ Թուրքերուն էն նշանաւորներէն մէկ քանին, իրենց ատելութենէն մղուած, զայն համոզեցին որ սպաննել տայ Նօթարասը, ըսելով որ խոհեմութիւն չպիտի ըլլար թո-ղուլ որ կարեւոր անձնաւորութիւններ քաղաքին ո եւ է մէկ մասին մէջ բնակէին եւ ո եւ է պաշտօն ունենային» :

Ըստ Դուկասի երկրորդ պատմութեան, Սուլթանը բըր-տօրէն Նօթարոսի երեսին տուաւ քաղաքը յանձնած չըլլա-լը, ինչ որ բոլոր այս կործանումին եւ այս ջարդին պատ-ճառ եղած էր: Նօթարաս ինքզինքը չքմեղացուց ըսելով որ ո՛չ կայսեր եւ ոչ ալ իր ձեռքն էր տարբեր կերպով շարժիլ: Ըսաւ նաեւ որ ինք եւ իր տէրը շարունակ քաջալերուած էին իրենց դիմադրութեան մէջ Սուլթանին անմիջական շըր-ջանակէն եկող նամակներով, որոնք իրենցմէ կը խնդրէին երբեք հոգ չընել, քանի որ Սուլթանը բնաւ չպիտի յաջողէր քաղաքը գրաւել։ Այս յայտարարութիւնները տասնապատ-կեցին Սուլթանին՝ իր Մեծ-Եպարքոսը եղող Խալիլ փա-շայի մասին արդէն իսկ սնուցած ատելութիւնն ու կասկած-ները: Յետոյ մեծ դուքսին հարցուց թէ իր կարծիքով Կայս-րը արդեօք ծովէն կրցա՞ծ էր փախչիլ: Նօթարոս պատաս-խանեց թէ այդ մասին բան մը չէր գիտեր եւ թէ Կայսեր քովը չէր երբ յաղթական Թուրքերը յարձակեցան անոր վրայ:

Այս երկու պատմութիւններէն որն ալ ճիշդ ըլլայ, գոնէ այս եղերական դէպքին վերջին մասին վրայ Դուկաս տար-բեր տարբեր բաներ չպատմեր: Այս տեսակցութեան յաջորդ

